ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ • 1969

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

## ՀՈԴՎԱԾՆԵՐ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

# Содержание

### Статьи








**Ս. Շ. ԶՈՒՐԱԲՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ

*Կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն խնդիրներից մեկը գյուղի և քաղաքի էական տարբերությունների վերացումն է, որը սերտորեն կապված է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև դասակարգային, սոցիալական տարբերությունների վերացման հետ։*

*Գյուղի և քաղաքի հակադրությունը ծագել է քաղաքների ու շահագործող դասակարգերի առաջացման հետևանքով և մարդկային հասարակության զարգացման ընթացքում՝ տարբեր հասարակական-տնտեսական ֆորմացիաներում ընդունել է այս կամ այն բնույթը։ «Աշխատանքի զարգացած ու ապրանքափոխանակության միջոցով իրականացվող ամեն մի բաժանման հիմքը քաղաքի և գյուղի անջատումն է իրարից։ Կարելի է ասել, որ հասարակության ամբողջ տնտեսական պատմությունն ամփոփվում է այդ հակադրության շարժման մեջ...», գրել է Մարքսը (Կապիտալ, հ. I, Հայպետհրատ, 1954, էջ 371)։ Գյուղի և քաղաքի հակադրությունը ծագել է դեռևս ստրկատիրական հասարակարգում և իր զարգացման ընթացքում բարձրագույն աստիճանի հասել կապիտալիզմի ժամանակ, երբ քաղաքը, բուրժուազիան և նրա պետությունը ոչ համարժեքային փոխանակության, գների «մկրատի», վարկի, հարկերի և այլ միջոցներով շահագործում են գյուղը՝ նրա աշխատավորությանը։ Անտագոնիստական հասարակարգերում ընդհանրապես շահագործվող գյուղը ետ է մնում տնտեսապես, կենսամակարդակով, կուլտուրայով, կենցաղով ու քաղաքականապես։ Սակայն այս բոլորը չի նշանակում, որ գյուղը կապիտալիզմի օրոք անշարժ վիճակում է, կապիտալիստական քաղաքը չի կարող իր կնիքը չդնել նաև գյուղի վրա։ Այն որոշ չափով զարգանում է, հատկապես, տեխնիկական վերազինման ուղղությամբ։ Եթե սրանից կես դար առաջ, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, կապիտալիստական գյուղատնտեսությունն իր տեխնիկա-տնտեսական մակարդակով դեռևս գտնվում էր մանուֆակտուրային ստադիայում, ապա ներկայումս զարգացած կապիտալիստական երկրների գյուղատնտեսությունը հիմնականում թևակոխել է մեքե-*

նայական արտադրության աստիճանը։ Սակայն դա ավելի է ուժեղացնում կապիտալի համակենտրոնացումը գյուղատնտեսության մեջ. մասսայաբար քայքայվում են գյուղացիական, ֆերմերական տնտեսությունները։ ԱՄՆ-ում 1939—1959 թթ. տարեկան միջին թվով «անհետանում» էին 85 հազար, իսկ հաջորդ հնգամյակում՝ մոտ 111 հազար ֆերմերական տնտեսություն։ Ներկայումս Ֆրանսիայում տարեկան, միջին հաշվով, վերացվում են ավելի քան 50 հազար գյուղացիական տնտեսություն, իսկ ԳՖՀ-ում՝ 1948—1965 թթ. քայքայվեցին 548 հազար։ Կապիտալիզմն ունակ չէ վերացնելու գյուղի և քաղաքի տարբերությունը։

Մարքսը, Էնգելսը, Լենինը ցույց են տվել, որ միայն սոցիալիստական հեղափոխության հաղթանակը կարող է վերացնել քաղաքի և գյուղի դարավոր հակադրությունը, իսկ հետո՝ դրանց միջև եղած էական տարբերությունները։ Այդ տարբերության վերացման քաղաքական հիմքը բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության դաշինքն է, որի ուսմունքի հիմքը դրել են Մարքսն ու Էնգելսը և իմպերիալիզմի ու պրոլետարական հեղափոխությունների էպոխայում այն մի նոր աստիճանի է հասցրել Վ. Ի. Լենինը։ Վլադիմիր Իլյիչը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի հարցը հեղափոխության տարբեր էտապներում բնութագրում էր տարբեր ձևով։ Եթե կապիտալիզմի պայմաններում այդ դաշինքը կրում էր քաղաքական բնույթ և ուղղված էր բուրժուա-կալվածատիրական կարգերի դեմ, ապա սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո դրանց դաշինքն ստանում է ոչ միայն պետական, այլև տնտեսական բնույթ։

ՍՄԿԿ-ն, ելնելով բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի ամրապնդման լենինյան դրույթներից, վճռական պայքար ծավալեց տրոցկիստների և աջերի դեմ, որոնք փաստորեն այդ դաշինքի խախտման գիծ էին վարում։ Տրոցկիստները, հաճախ նույնացնելով միջակ գյուղացուն կուլակի հետ, առաջարկում էին գյուղացիության շահագործման միջոցով (Ե. Պրեոբրաժենսկի) իրագործել երկրի ինդուստրացումը, իսկ աջերը՝ անտեսելով գյուղացիության շերտավորումը, կուլակային տարրերի շահագործողական դերը, փաստորեն դեմ էին գյուղացիության կոոպերացման լենինյան պլանին, ժխտում էին դասակարգային պայքարի սրումը գյուղում։ Կոմունիստական կուսակցությունը, ջախջախիչ հարված հասցնելով տրոցկիստներին ու աջերին, հետևողականորեն կիրառելով բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման լենինյան գիծը, ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում։

ՌԿ(բ)Կ VIII համագումարում ընդունված կուսակցության ծրագրում ասված է. «Նկատի ունենալով այն, որ քաղաքի և գյուղի հակադրությունը գյուղի տնտեսական և կուլտուրական հետամնացության ամենախոր հիմքերից մեկն է հանդիսանում..., ՌԿԿ-ն այս հակադրության ոչնչացման մեջ է տեսնում կոմունիստական շինարարության արմատական խնդիրներից մեկը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 154—155)։

Ռազմական կոմունիզմից նէպին անցնելը նպատակ ուներ բանվոր դասակարգի և գյուղացիության ռազմա-քաղաքական դաշինքից անցնել տնտեսական դաշինքի, պարենմասնատրումից՝ պարենհարկին և առևտրի ծավալման միջոցով նյութապես շահագրգռել գյուղացիությանը՝ զարգացնելու իրենց տնտեսությունը։ Վ. Ի. Լենինի ստրատեգիական պլանն էր— նէպի միջոցով ապահովել սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում, նէպական Ռուսաստանը



վերածել սոցիալիստական Ռուսաստանի։ Երկրի ինդուստրացմամբ, գյուղացիական տնտեսությունների կոոպերացմամբ, էկոնոմիկայի բազմակացութաձևության, շահագործողական դասակարգերի լիկվիդացմամբ վերացավ գյուղի և քաղաքի դարավոր հակադրությունը, արմատապես փոխվեց նրանց հարաբերությունը։

Վ. Ի. Լենինն ասում էր. «Այն հասարակությունը, որի մեջ մնացել է բանվորի և գյուղացու դասակարգային տարբերությունը, ո՛չ կոմունիստական, ո՛չ էլ սոցիալիստական հասարակություն է» (Երկեր, հ. 29, էջ 486)։ Մեր որոշ գիտնականներ ճիշտ չգնահատելով Լենինի այս միտքը, անտեսում են այն բանը, որ Վլադիմիր Իլյիչն այստեղ նկատի ունի ո՛չ թե առհասարակ բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերությունների, այլ բանվոր դասակարգի և մենատնտես գյուղացիության միջև դասակարգային տարբերությունների վերացումը՝ վերջինիս կոոպերացմամբ։ Սովետական ականավոր տնտեսագետ Յա. Ա. Կրոնրոդը գրում է. «Սոցիալիզմը մի հասարակարգ է, որում վերացված են դասակարգերը, դա հասարակություն է առանց դասակարգերի։ Այդպիսին է մարքսիզմի հիմնադիրների կատեգորիկ դրույթը» (Проблемы политической экономии социализма, 1961 г., стр. 12)։ Նա նշում է, որ «սոցիալիզմը դասակարգերի ոչնչացում է» և «կոմունիզմը դասակարգերի ոչնչացում է» Լենինի ֆորմուլների միջև, ըստ էության, տարբերություն չկա, քանի որ նա նկատի ունի կոմունիզմը որպես հասարական-տնտեսական ֆորմացիա՝ իր երկու ֆազերով։ Սակայն այդ երկու ֆորմուլների տարբերության իմաստն այն է, որ «սոցիալիզմը դասակարգերի ոչնչացում է» ֆորմուլան նշանակում է, մի կողմից՝ շահագործողական դասակարգերի, մյուս կողմից՝ բանվորների և մենատնտես գյուղացիների միջև դասակարգային տարբերության վերացում՝ վերջինների կոոպերացման շնորհիվ։ Մինչդեռ «կոմունիզմը դասակարգերի ոչնչացում է» ֆորմուլան նկատի ունի բանվոր դասակարգի և արդեն կոլտնտեսային գյուղացիության միջև դասակարգային տարբերության վերացումը՝ դրա երկրորդ էտապը սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում։

Կոլտնտեսային գյուղացիության առաջացումը նշանավորում է բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերության վերացման վճռական էտապը։ Մեծ նախաձեռնություն իր հայտնի աշխատությունում Վ. Ի. Լենինը տվել է դասակարգերի դասական բնորոշումը. «Դասակարգեր կոչվում են մարդկանց մեծ խմբերը, որոնք տարբերվում են հասարակական արտադրության պատմականորեն որոշ սիստեմում իրենց գրաված տեղով, արտադրության միջոցների նկատմամբ իրենց ունեցած (մեծ մասամբ օրենքներով ամրապնդված և ձևակերպված) վերաբերմունքով, աշխատանքի հասարակական կազմակերպման մեջ իրենց ունեցած դերով և, հետևաբար, հասարակական հարստության այն բաժնի ստացման եղանակներով ու չափերով, որ իրենց տրամադրության տակ ունեն» (Երկեր, հ. 29, էջ 515)։ Այս տեսակետից մոտենալով բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության տարբերության հարցին, պետք է ասել, որ թեպետ այդ երկու դասակարգերն իրենց հիմքում ունեն միասնական սոցիալիստական արտադրաեղանակը, սակայն դրանցից ամեն մեկը արտադրության և բաշխման պրոցեսն անմիջականորեն իրագործում է սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի պայմաններում՝ բանվոր դասակարգը պետական, համաժողովրդական սեփականության, իսկ կոլտնտեսային գյուղացիությունը՝ կոոպերատիվ-կոլտնտեսային

հանրային սեփականության պայմաններում։ Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության ընդհանրությունն է գլխավորը և վճռականը, այլ ոչ թե դրանց միջև եղած տարբերությունը։ Ընդ որում, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման, գյուղի և քաղաքի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքների տարբերության վերացման համընթաց մեծանում են բանվորների և գյուղացիների միջև ընդհանուր գծերը, իսկ տարբերությունները՝ նվազում. կոմունիզմին անցնելու ընթացքում այդ տարբերությունները կանհետանան։

Բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերության տնտեսական հիմքը սոցիալիստական սեփականության երկու ձևերի գոյությունն է։ Ժողովրդական տնտեսության պետական և կոոպերատիվ սեկտորները կազմում են միասնական սոցիալիստական արտադրաեղանակ։ Սակայն այդ շրջանակներում էական տարբերություններ կան պետական և կոլտնտեսային ենթաարտադրաեղանակների միջև։ Դրանց վրա են հենված բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերությունները։ Հետևաբար, կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության մերձեցման, հետագայում նաև պետական, համաժողովրդական սեփականության հետ, միաձուլման պրոցեսը միաժամանակ նշանավորում է բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերությունների վերացում։ «Կոմունիզմի ժամանակ, ասված է կուսակցության ծրագրում, դասակարգեր չեն լինի, կանհետանան քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները. արտադրողական ուժերի զարգացման մակարդակով և աշխատանքի բնույթով, արտադրական հարաբերությունների ձևերով, կենցաղային պայմաններով, բնակչության բարեկեցության աստիճանով գյուղը կհասնի քաղաքի մակարդակին» (ՍՄԿԿ ծրագիրը, 1961 թ., էջ 75)։ Ջնջված սոցիալիզմի հաղթանակով մեր երկրում վերացվեց քաղաքի և գյուղի հակադրությունը, և սովետական իշխանության տարիներին գյուղը հսկայական առաջադիմություն ունեցավ, բայց այն տնտեսապես, տեխնիկապես, բնակչության կենսամակարդակով, կուլտուրայով, կենցաղով դեռ զգալիորեն ետ է մնում քաղաքից։ Ներկայումս, ՍՍՀՄ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում, աստիճանաբար համահարթվում են գյուղի և քաղաքի միջև եղած տարբերությունները։

Համառոտակի քննենք այդ պրոցեսի հիմնական կողմերը։

Կոլտնտեսային սեփականությունն աստիճանաբար մոտենում է պետական համաժողովրդական սեփականությանը, բարձրացնում դրա հանրայնացման աստիճանը, աճում և որակապես փոփոխվում են անբաժանելի ֆոնդերը, որոնք կոլտնտեսային արտադրանքի ավելացման և ապրանքայնության մեծացմանը համընթաց ավելի ու ավելի են համահասարակական բնույթ ստանում. դրանք ծառայում են ո՛չ միայն կոլտնտեսության, այլև ամբողջ հասարակության շահերին։ 1960 թ. ՍՍՀՄ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը (հիմնական և շրջանառու միջոցներում) կազմում էին 27,6, իսկ 1967-ին՝ 48,8 մլրդ ռուբլի կամ աճել են 76,7 տոկոսով։ Եթե 1960 թ., միջին թվով, մեկ կոլտնտեսությանն ընկնում էր 705, ապա 1967-ին՝ 1349 հազար ռուբլի անբաժանելի ֆոնդեր (СССР в цифрах в 1967 г. стр. 91—92), կամ աճել էր ավելի քան 91 տոկոսով։ Դրա հետ միասին մեծանում են գյուղատնտեսական ձեռնարկությունների՝ կոլտնտեսությունների և սովխոզների միջին չափերը, մեկ տնտեսությանն ընկնող աշխատողների թիվը, ցանքատա-



րածությունները, անասունների գլխաքանակը, գյուղատնտեսական տեխնիկան, արտադրանքի ծավալը։

Կոլտնտեսային հանրային տնտեսության զարգացմամբ կոլտնտեսականների տնամերձ տնտեսությունները կկորցնեն իրենց տնտեսական նշանակությունը և կվերացվեն (կոլտնտեսականների ցանկությամբ). դրանով մի կարևոր քայլ կարվի կոլտնտեսային ու համաժողովրդական սեփականության մերձեցման և միաձուլման գործում։ Միջկոլտնտեսային սեփականության
զարգացումը հանրայնացման ավելի բարձր աստիճան է, քան կոլտնտեսային
սեփականությունը։ Այն, որոշ իմաստով, միջանկյալ դիրք է գրավում պետա-
կան և կոլտնտեսային սեփականության միջև և իր հանրայնացման մակար-
դակով ավելի է մոտենում պետական, համաժողովրդական սեփականությա-
նը։ Կոլտնտեսությունների մի մասի բազայի վրա սովխոզների ստեղծումը
բարձրացնում է այդ կոլտնտեսությունների հանրայնացման աստիճանը և
դրանք վերածում պետական, համաժողովրդական սեփականության, իսկ այն-
տեղ աշխատող կոլտնտեսականներին՝ պետական ձեռնարկությունում աշխա-
տող բանվորների և ծառայողների։

Կոլտնտեսականների աշխատանքի դիմաց ամենամսյա ավանսավորու-
մը, վարձատրման երաշխավորված նվազագույնը, դրամական վարձատրու-
թյան անցնելը, պարգևատրումը և այլն, բաշխման այնպիսի եղանակներ են,
որոնք ավելի ու ավելի են մերձեցնում կոլտնտեսային սեփականությունը պե-
տական սեփականությանը։

Մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը դարձել է խոշոր,
հիմնականում մեքենայացված։ 1967 թ. վերջին ՍՍՀՄ գյուղատնտեսությու-
նում կար 3330 հազար տրակտոր (15 ձիաուժանոցի վերածած), 545 հազար
հացահատիկահավաք կոմբայն, 1050 հազար բեռնատար ավտոմեքենա։ Իսկ
1919 թ. Վ. Ի. Լենինը երազում էր 100 հազար տրակտորի մասին, դա համա-
րում էր ֆանտազիա։ Ներկայումս մեր երկրի գյուղատնտեսությունն ունի մոտ
3,5 միլիոն տրակտոր։

Սակայն գյուղն իր տեխնիկայով, արտադրապրոցեսների մեքենայացման
աստիճանով, աշխատանքի արտադրողականության մակարդակով և արտա-
դրանքի աճի տեմպերով դեռևս ետ է մնում քաղաքից։

Այժմ մեր գյուղատնտեսության հիմնական և առավել ծանր ու աշխատա-
տար արտադրապրոցեսները մեքենայացված են. վարը, հացահատիկային
կուլտուրաների, շաքարի ճակնդեղի, բամբակի ցանքը մեքենայացված են 100,
հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը՝ 99 տոկոսով (1966 թ.)։
Բամբակի հավաքը մեքենայացված էր միայն 29 տոկոսով, կարտոֆիլինը՝ 58,
իսկ խոտհունձը՝ 81 տոկոսով։ Այդ տեսակետից առավել անբարենպաստ է
դրությունը անասնապահական ֆերմաներում. 1966 թ. կովերի կիթը (կոլ-
տնտեսություններում և սովխոզներում) մեքենայացված էր միայն 31, ջրի
մատակարարումը՝ 60—75, ոչխարների խուզը՝ 87 տոկոսով։ Հատկապես
ցածր էր մեքենայացման աստիճանը բանջարաբուծության, այգեգործության
բնագավառներում, մասնավորապես Հայկական ՍՍՀ-ում։

Գյուղատնտեսությունն ավելի զարգացնելու համար անհրաժեշտ է մեքենայացնել ձեռքով (գործիքով) կատարվող աշխատանքները, իրագործել դրանց կոմպլեքսային մեքենայացումը, որոշ դեպքերում նաև ավտոմատացումը, բարձրացնել գյուղատնտեսական տեխնիկայի մակարդակը, այն հար-

մարեցնել երկրի տարբեր զոնաների պայմաններին, գյուղատնտեսական արտադրապրոցեսներում ավելի լայնորեն օգտագործել էլեկտրաէներգիան։

ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թ. հոկտեմբերյան պլենումում Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ ընդգծվեց գյուղատնտեսական տեխնիկայի կատարելագործման կարևորությունը, հատկապես, տրակտորների հզորությունների մեծացման նշանակությունը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե 75 ձիաուժանոց տրակտորի հզորությունը հասցվի 150-ի, ապա երկրի համապատասխան գոտիներում տրակտորների ընդհանուր թիվը կարելի է կրճատել մոտ մեկ երրորդով, տնտեսել մոտ 2,5 մլն տոննա մետաղ, 400 մլն ռուբլով պակասեցնել տեխնիկայի ձեռքբերման կապիտալ ներդրումները և 40 տոկոսով՝ մեխանիզատորական կադրերի նկատմամբ եղած պահանջը։ Ներկայումս նախապատրաստական աշխատանքներ են տարվում ավելի հզոր տրակտորների (Խարկովի գործարանը՝ 150 ձիաուժանոց, իսկ Լենինգրադի Կիրովի անվան գործարանը՝ «Կ—700» անիվավոր հզոր տրակտորի) արտադրության համար։ Կատարելագործվում են նաև կոմբայնները։ Փորձարկվում են «Нева», «Колос», «Сибиряк» նոր տեսակի կոմբայնները և այլն։

Սովետական իշխանության տարիներին հսկայական չափով աճել են գյուղատնտեսության էներգետիկ կարողությունները։ Եթե 1913 թ. ցարական Ռուսաստանի գյուղատնտեսության էներգետիկ կարողությունները միայն 23,9 միլիոն ձիաուժ էին, ապա 1966-ին, ՍՍՀՄ-ում՝ 250,1 մլն էր։ Մեխանիկական շարժիչները, համապատասխանաբար՝ 0,2 և 246,5 մլն ձիաուժ։ Ավելի հատկանշական են 100 հեկտար ցանքատարածություններին ընկնող մեխանիկական շարժիչները. դրանք 1913—1917 թթ. միայն 0,2 ձիաուժ էին, իսկ 1966-ին՝ 106 ձիաուժ, կամ աճել է 530 անգամ։ 1966 թ. երկրի կոլտնտեսությունների 97 և սովխոզների 99 տոկոսն արդեն էլեկտրիֆիկացված էին (Страна Советов за 50 лет. 1967, стр. 152—154)։ Այսպիսով, ՍՍՀՄ գյուղատնտեսության տեխնիկական և էներգետիկ բազան սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվել է և այդ ասպարեզում ևս մեծ չափով փոքրացել է գյուղի ու քաղաքի տեխնիկական մակարդակների տարբերությունը։ Սակայն, գյուղատնտեսության տեխնիկական մակարդակի ետ մնալը վերացնելու և մեքենաների ժամանակակից սիստեմները կիրառելու համար դեռևս մեծ անելիքներ ունեն արդյունաբերության աշխատողները։

Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի զարգացումն ու ամրապնդումը գյուղատնտեսական արտադրանքի աճի տեմպերն արագացնելու հիմքն են։ ՍՄԿԿ XXIII համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. (մարտյան) և 1968 թ. (հոկտեմբերյան) պլենումները գյուղատնտեսության ինտենսիվացման, դրանում կապիտալ ներդրումների ծավալի մեծացման կոնկրետ ուղիներ նշեցին։ 1965—1967 թթ. պետությունն արտադրական շինարարության և տեխնիկայի ձեռքբերման նպատակով, նախորդ եռամյակի համեմատությամբ, գյուղատնտեսության մեջ ներդրեց 5 մլրդ ռուբլով ավելի գումար։ Միաժամանակ լայն աշխատանքներ ծավալվեցին հողերի ոռոգման և պարարտացման, գյուղատնտեսության վնասատուների դեմ պայքարի ուղղությամբ։ Գյուղատնտեսության վերելքի համար առանձնակի նշանակություն ունեցան նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքի ավելի հետևողական կիրառումը, արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքների գների կարգավորումը, գյուղատնտեսական մի շարք արտադրանքների մթերման գների բարձրացումը, մթերման կայուն պլանների և արտապլանային արտա-



դրանքի վաճառքի դիմաց խրախուսման գների սահմանումը, որը կպահպանվի առաջիկա հնգամյակում և մի շարք այլ միջոցառումներ։ Դրանք հնարավորություն կընձեռեն կոլտնտեսություններում և սովխոզներում կիրառելու լրական տնտհաշվարկ, տնտեսությունները դարձնելու եկամտաբեր, ամրապնդելու նրանց ֆինանսա-տնտեսական վիճակը։

Կուսակցության և կառավարության այս միջոցառումների շնորհիվ
1965—1967 թթ. գյուղատնտեսական համախառն արտադրանքը տարեկան,
միջին հաշվով, կազմեց 75 մլրդ ռուբլի—15 տոկոսով ավելի նախորդ եռամյա-
կի արտադրանքից։ Նույն ժամանակամիջոցում բնակչության մեկ շնչին ընկ-
նող գյուղատնտեսական արտադրանքն ավելացավ 11 տոկոսով։ Իսկ 1968 թ.
գյուղատնտեսության համախառն արտադրանքը հասավ 81 մլրդ ռուբլու։ Հե-
տևաբար, գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը մո-
տենում են արդյունաբերության աճի տեմպերին։ Պետք է նկատի ունենալ, որ
գյուղատնտեսության աճի տեմպերը կարող են ո՛չ միայն հասնել, այլև անց-
նել արդյունաբերությունից։ Մարքսը դեռ իր ժամանակ նշել է, որ զարգաց-
ման որոշ աստիճանում «հողագործության արտադրողականությունը կմեծա-
նա հարաբերականորեն ավելի արագ, քան արդյունաբերության արտադրո-
ղականությունը (К. Маркс, Теории прибавочной стоимости, , ч. II,
1957, стр. 103—104)։ Սոցիալիստական գյուղատնտեսության զարգաց-
ման վերջին տարիների արդյունքներն ու աճի բարձր տեմպերը ցույց տվին,
որ այն կարող է հասնել և նույնիսկ գերազանցել արդյունաբերության աճի
տեմպերին, որպես քաղաքի ու գյուղի, արդյունաբերության և գյուղատնտե-
սության միջև եղած տարբերության վերացման կարևոր կողմ։

Գյուղը քաղաքից ետ է մնում նաև բնակչության կենսամակարդակով։
Ցարիզմի պայմաններում, գյուղի և քաղաքի բնակչության կենսամակարդակ-
ների տարբերությունը շատ մեծ էր։ 1913 թ. գյուղացիների միջին կենսամա-
կարդակը մոտ 3 անգամ ցածր էր արդյունաբերական բանվորներից (Н. С.
Лагутин. Проблемы сближения уровня жизни рабочих и колхозни-
ков, 1965, стр. 131)։ Սովետական իշխանության տարիներին այդ տար-
բերությունը մեծ չափով նվազել է։ Այսպես, 1967 թ., 1913 թ. համեմատու-
թյամբ, բանվորների ռեալ եկամուտներն աճել են 6,9, գյուղացիներինը՝ 9,4
անգամ (СССР в цифрах в 1967 г., стр. 131), այսինքն՝ ավելի մեծ չա-
փերով։ ՍՄԿԿ XXIII համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զար-
գացման 1966—1970 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվներում նախատեսված
է՝ հնգամյակի ընթացքում բանվորների և ծառայողների աշխատավարձի
բարձրացում, միջին հաշվով, առնվազն 20, իսկ կոլտնտեսականների հան-
րային տնտեսությունից ստացվող դրամական և բնամթերային եկամուտները,
միջին հաշվով 35—40 տոկոսով, այսինքն՝ մոտ 2 անգամ ավելի, քան բան-
վորների և ծառայողների աշխատավարձի աճը։ Ընթացիկ հնգամյակի անցած
երեք տարում կոլտնտեսականների հանրային տնտեսությունից ստացված
եկամուտներն աճեցին 30 տոկոսով։ Դա հիմք է տալիս ասելու, որ ընթացիկ
հնգամյակում կոլտնտեսականների եկամուտները կաճեն ավելի քան 35—40
տոկոսով։

Գյուղի և քաղաքի բնակչության կենսամակարդակների տարբերության վերացման կարևոր ցուցանիշն է նաև բնակչության մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության ծավալը։ Եթե 1940 թ. ՍՍՀՄ գյուղական բնակչության մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառությունը, քաղաքային բնակչության

մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության նկատմամբ միայն 19 տոկոս էր, ապա 1963 թ. այն կազմեց մոտ 35 տոկոս: Գյուղական և քաղաքային բնակչության կենսամակարդակների տարբերության փոքրացման գործում կարևոր նշանակություն ունեցավ նաև կոլտնտեսականների կենսաթոշակների սահմանումը: Սպառման հասարակական ֆոնդերի սիստեմատիկ աճը, իր հերթին, աջակցում է քաղաքի և գյուղի բնակչության կենսամակարդակների համահարթմանը, քանի որ այդ ֆոնդերի մեծ մասը բնակչությունն սպառում է կոլեկտիվ և ըստ պահանջմունքի (կրթություն, առողջություն և այլն):

Սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում մեծագույն այլ նվաճումների հետ միասին իրագործեց նաև կուլտուրական հեղափոխությունը: Քաղաքում և գյուղում, առաջին հերթին, վերացվեց անգրագիտությունը: Եթե 1897 թ. ցարական Ռուսաստանի 9—42 տարիք ունեցող քաղաքային և գյուղական երկսեռ բնակչության միայն 28,4 տոկոսն էր գրագետ, ապա 1959-ին՝ ՍՍՀՄ-ում գրագիտության տոկոսը կազմեց 98,7, այդ թվում՝ գյուղական բնակչությանը, համապատասխանաբար՝ 23,8 և 98,2 տոկոս: Եթե 1939 թ. ՍՍՀՄ բնակչության 1000 բանվորներից 82-ը միայն ունեին բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն, ապա 1967-ին՝ 500-ը, իսկ կոլտնտեսականներինը, համապատասխանաբար՝ 18 և 330 հոգի, այսինքն՝ բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող կոլտնտեսականների թիվը նշված ժամանակամիջոցում աճել է 18,3, իսկ բանվորներինը՝ 6 անգամ: Եթե ցարիզմի պայմաններում գյուղատնտեսության մասնագետները բացառիկ երևույթ էին, ապա այժմ սոցիալիստական գյուղում աշխատում են բազմաթիվ մասնագետներ, մեխանիզատորներ, կուլտուրայի, առողջապահության աշխատողներ: 1966 թ. տվյալներով, ՍՍՀՄ կոլտնտեսություններում և սովխոզներում ու պետական այլ գյուղատնտեսական ձեռնարկություններում աշխատում էին 557 հազար մասնագետ, որոնցից բարձրագույն կրթությամբ՝ 143 հազար և միջնակարգ մասնագիտական կրթությամբ՝ 414 հազար հոգի (Страна Советов за 50 лет, стр. 232):

Եթե ցարական Ռուսաստանում կուլտուրայի օջախները, մանավանդ գյուղական վայրերում, հազվագյուտ էին, ապա սովետական իշխանության տարիներին արմատական հեղաշրջում կատարվեց նաև այդ ասպարեզում: 1914 թ. ցարական Ռուսաստանի գյուղական վայրերում կային 11 հազար մասսայական գրադարան, մոտ 9 մլն գրքային ֆոնդով, իսկ 1967 թ. ՍՍՀՄ-ում՝ 86 հազար, 506 մլն գրքային ֆոնդով: Ակումբային հիմնարկությունների թիվը գյուղական վայրերում 1914 թ. կազմում էր մոտ 100, իսկ 1967-ին՝ 112 հազար, կինոսարքավորումները 1914 թ. մոտ 100 էր, իսկ 1966-ին այն հասավ 127,1 հազարի (նույն տեղը, էջ 286—288): Ներկայումս գիրքը, թերթը, ամսագիրը, կինոն, թատրոնը և այլն դարձել են գյուղական կենցաղի անբաժանելի մասը: Հայտնի է, որ քաղաքի և գյուղի տարբերությունների վերացման գործում կարևոր դեր է կատարում տրանսպորտի և կապի զարգացումը: Այժմ մեր հանրապետության բազմաթիվ շրջանային կենտրոններ օդային գծով կապված են Երևանի հետ: Ավտոբուսներ են գործում ո՛չ միայն Երևանի և շրջկենտրոնների միջև, այլև շրջկենտրոնների և գյուղերի միջև: Բազմաթիվ գյուղեր ունեն իրենց հեռախոսային կոմուտատորները մի քանի տասնյակ համարներով:

Սովետական իշխանության տարիներին հիմնովին փոխվել է մեր գյուղի դեմքը: Հին, պրիմիտիվ, նահապետական տները հիմնականում փոխարինվել են ժամանակակից, բարեկարգ տներով. էլեկտրիֆիկացվել է գյուղը: Ռադիոընդունիչը, հեռուստացույցը, նորաձև կահույքը սովորական են դարձել: 1918—1967 թթ. ՍՍՀՄ կոլտնտեսությունները, կոլտնտեսականները, սովխոզների բանվորներն ու գյուղական ինտելիգենցիան կառուցել են 695,2 մլն քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 1921—1966 թթ.՝ 122,6 հազար: Հսկայական չափերի է հասել գյուղական շինարարությունը: Նախօրոք կազմված նախագծերի հիման վրա այն ակտուալ և ժամանակակից հարց է դարձել: Պատահական չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1968 թ. հոկտեմբերին «Գյուղում շինարարությունը կարգավորելու մասին» հատուկ որոշում ընդունեցին:

Գյուղի և քաղաքի էական տարբերությունների վերացման գործում կարևոր նշանակություն ունի գյուղական բնակավայրերի, բնակարանային շինարարության, կոմունալ կենցաղային պայմանների բարելավման հարցը: Ներկայումս, ինչպես ողջ ՍՍՀՄ-ում, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ում, մանր, ցրված, զարգացման հեռանկար չունեցող բնակավայրերն աստիճանաբար վերացվում են և միացվում զարգացման հեռանկարներ ունեցող բնակավայրերի հետ, որոնք իրենց կոմունալ-կենցաղային հարմարություններով կփոխարինեն քաղաքատիպ ավաններին: Գյուղական և քաղաքային բնակավայրերի մերձեցումը տեղի կունենա ո՛չ թե խոշոր քաղաքների «կործանմամբ», ինչպես դա փորձում էր Վ. Ի. Լենինին վերագրել անգլիական հայտնի գրող-ֆանտաստիկ Ուելսը, այլ գյուղական բնակավայրերը քաղաքատիպի վերածելու և խոշոր քաղաքների բարեկարգման ու կանաչապատման միջոցով:

Այս կապակցությամբ պետք է նշել, նաև հարցի մյուս կողմը: Դա գյուղական բնակելի տների տիպի հարցն է: Սրանից մի քանի տարի առաջ «Սովետական Հայաստան» թերթի էջերում բանավեճ բացվեց այն մասին, թե ինչպիսին պետք է լինեն բնակելի տները գյուղական վայրերում: Այստեղ դրսևորվեցին հակադիր տեսակետներ. ա) կառուցել անհատական (մեկ ընտանիքի համար) բնակարաններ, բ) մի խումբ ընտանիքների համար գյուղական պայմաններին հարմարեցված բազմահարկ (2—4) բնակելի տներ: Այդ բանավեճում մենք պաշտպանեցինք երկրորդ տեսակետը: Հետագայում փաստերը ցույց տվեցին, որ գյուղական բնակավայրերում մի խումբ ընտանիքների համար մի քանի հարկանի շենքերի կառուցման գաղափարն ավելի է տարածվում կյանքում (տե՛ս «Правда», 6 июня и 3 октября, 1968 г.):

* * *

Այսպիսով, ՍՄԿԿ և սովետական կառավարությունը, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները հսկայական աշխատանք են տարել գյուղի և քաղաքի տարբերության վերացման գործում՝ որպես կոմունիզմի կառուցման կարևորագույն պայմաններից մեկը:

Վ. Ի. Լենինը զարգացնելով Մարքսի և Էնգելսի ուսմունքը՝ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին, ցույց տվեց, որ այն սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում նոր բնույթ է ստանում, որի զարգացումն ու ամրապնդումը հանգեցնում է դասակարգային, սոցիալական տարբերությունների վերացմանը, մարդկանց կոմունիստական հասարակության աշխատողների փոխակերպմանը: Իհարկե, կոմունիզմի ժամանակ

գյուղատնտեսությունն ու արդյունաբերությունը կմնան որպես ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղեր։

Գյուղի և քաղաքի, բանվորների և գյուղացիների տարբերությունների վերացումը բարդ և երկարատև պրոցես է։ Այն հսկայական նյութական միջոցներ և աշխատանքային ջանքեր է պահանջում։ Ընդ որում, գյուղի և քաղաքի էական տարբերությունների վերացումն ավելի շատ ժամանակ կպահանջի, քան բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերությունների վերացումը։ Որոշ գիտնականներ դրանք անհիմն նույնացնում են (տե՛ս А. Н. Красин. О преодолении существенных различий между городом и деревней, между физическим и умственным трудом, 1960, стр. 30):

Կուսակցության ծրագրում ևս այդ հարցի լուծումը կապվում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հետ, երբ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը կապահովի նյութական ու կուլտուրական բարիքների առատություն, «Սովետական հասարակությունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքի բաշխման սկզբունքի իրականացմանը. տեղի կունենա աստիճանական անցում դեպի մեկ միասնական համաժողովրդական սեփականություն» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 487)։

Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հաղթահարելով ներքին և արտաքին դժվարությունները, հաջողությամբ կոմունիզմ է կառուցում մեր երկրում, իրագործում Լենինի պատգամները՝ բանվորների և գյուղացիների դաշինքի ամրապնդման միջոցով նրանց միջև դասակարգային, ինչպես և գյուղի և քաղաքի էական տարբերությունների վերացման պատմական խնդիրների լուծումը։



**Ե. Թ. ԱՍԾԱՏՐՅԱՆ**

Հայկական ՍՍՀ ժողովրդական
վերահսկողության կոմիտեի նախագահ

# ԳՈՐԾՆԱԿԱՆ ԵՎ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1968 թվականի դեկտեմբերի 19-ին հաստատեցին ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության մարմինների կանոնադրությունը։

Կանոնադրության հաստատումը կուսակցության և կառավարության կողմից ժողովրդական վերահսկողության մարմինների նկատմամբ ցուցաբերվող մեծ ուշադրության նոր վկայությունն է։ Կուսակցությունն ու կառավարությունը այդ մարմինների մեջ տեսնում են հասարակական մեծ ուժ, նրանց դիտում որպես իրենց ակտիվ օգնականների՝ կոմունիստական շինարարության պլանների հաջող կենսագործման համար մղվող պայքարում։

Կանոնադրության մեջ սահմանված են ժողովրդական վերահսկողության մարմինների տեղը սովետական պետական սիստեմում, նրանց խնդիրները, պարտականությունները և իրավունքները, գործելու ձևերն ու մեթոդները։ Այն հասարակական-քաղաքական կարևոր նշանակություն ունեցող մի փաստաթուղթ է, որում հետագա զարգացում են ստացել ժամանակակից պայմաններում կիրառվող վերահսկողության լենինյան սկզբունքները։ Կանոնադրությամբ ժողովրդական վերահսկողության մարմինների առջև դրվում են նոր, մեծ խնդիրներ, ընդարձակվում նրանց իրավունքները, ավելանում՝ պարտականությունները։

Ժողովրդական վերահսկողության հիմնական սկզբունքներից մեկը նրա մասսայականությունն է։ Վ. Ի. Լենինն իր ժամանակին ընդգծել է, որ սոցիալիստական վերահսկողությունը պետք է կրի համաժողովրդական բնույթ։ Ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության մեջ զուգակցվում են պետական վերահսկողությունն ու աշխատավորների հասարակական վերահսկողությունը։

Գործելով կուսակցության ղեկավարությամբ, ժողովրդական վերահսկողության մարմինները հանդիսանում են նաև մասսաների քաղաքական դաստիարակության դպրոց։ Իրենց ամբողջ գործունեությամբ ժողովրդական վե-

րահսկողության մարմինները կոչված են սովետական մարդկանց ներարկելու երկրի տիրոջ զգացումը՝ ամբողջ հասարակության գործի համար, յուրաքանչյուրի պատասխանատվության զգացումը բարձրացնելու համար։ Վերահսկողության մարմինների գործունեության կարևորագույն սկզբունքն է՝ ժամանակին մարդկանց նախազգուշացնել աշխատանքում հնարավոր սխալներից և վրիպումներից զերծ մնալու։

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցական կազմակերպություններին կոչ է արել ուղղություն տալ ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեությանը, ամեն կերպ աջակցել նրանց աշխատանքին։ Այդ ոգով 1968 թ. հուլիսին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը որոշում ընդունեց «Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինների նկատմամբ կուսակցական ղեկավարությունն ուժեղացնելու միջոցառումների մասին»։ ՀԿԿ քաղաքային և շրջանային կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները խոշոր գործ կատարեցին Կենտկոմի որոշման կենսագործման համար, աշխատավորների և կուսակցական կազմակերպությունների ժողովներում քննության դրին ժողովրդական վերահսկողության կոմիտեների, խմբերի և պոստերի հաշվետվությունները, կոնկրետ միջոցառումներ իրագործեցին այն կազմակերպչորեն ամրապնդելու համար։ Նշված ժողովներին ներկա էին 190 հազար աշխատավոր, որոնցից 13 հազարը մասնակցեցին մտքերի փոխանակությանը։

Կուսակցության շատ քաղկոմներ և շրջկոմներ, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմներ իրենց պլենումներում և սեսիաներում պարբերաբար քննարկում են ժողովրդական վերահսկողության մարմինների նկատմամբ ղեկավարումն ուժեղացնելու հետ կապված հարցերը, նրանց ցույց են տալիս համակողմանի օգնություն։

Ժողովրդական վերահսկողության կոմիտեները, խմբերը և պոստերը կազմում են ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության մարմինների մի միասնական սիստեմ, որի հիմքը, ինչպես նշվում է կանոնադրության մեջ, վերահսկողության խմբերն ու պոստերն են։ Նրանցում ընտրվում են առաջավոր, առավել ակտիվ և հեղինակավոր բանվորներ, կոլտնտեսականներ, մասնագետներ, ծառայողներ, ուսանողներ, թոշակառուներ և տնային տնտեսուհիներ, ինչպես կոմունիստներ, այնպես էլ անկուսակցականներ, սովետական հասարակության սոցիալական բոլոր խավերի ներկայացուցիչներ։

Կանոնադրությունը բարձր պահանջներ է ներկայացնում ժողովրդական վերահսկչին։ Նա պետք է մշտական հոգատարություն ցուցաբերի ժողովրդական բարիքը պահպանելու և ավելացնելու համար, ցույց տա աշխատասիրության և կարգապահության անձնական օրինակ, լինի պահանջկոտ իր նկատմամբ, սկզբունքային և անհաշտ, երբ հարցը վերաբերում է պետական և հասարակական շահերի պաշտպանությանը։

Ներկայումս մեր հանրապետության ժողովրդական վերահսկողության խմբերում և պոստերում ընդգրկված են մոտ 67 հազար վերահսկիչներ, որոնց մեծագույն մասը մարմնավորում է սովետական քաղաքացու բարոյական հատկություններ. նրանք ամեն օր հայրենասիրական մեծ գործեր են կատարում ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկություններում, զորամասերում։

Պետք է ասել, որ երբեմն ժողովրդական վերահսկչի համար հեշտ չէ պայքարել չարիքի դեմ, մերկացնել պետական կարգապահությունը խախ-



տողներին, բյուրոկրատներին, նրանց, ովքեր վատնում ու հափշտակում են սոցիալիստական սեփականությունը։ Հայտնի են ժողովրդական վերահսկիչներին հետապնդելու, նրանց հետ դատաստան տեսնելու շատ փաստեր։ Դրա համար կանոնադրության մեջ ասված է, թե ժողովրդական վերահսկիչներին հետապնդելու, հասարակական գործունեության համար նրանց հետ դատաստան տեսնելու, քննադատությունը ճնշելու ամեն տեսակ փորձեր վճռականորեն պետք է կասեցվեն, իսկ այդ բանում հանցավոր անձինք ենթարկվեն խիստ պատասխանատվության, ընդհուպ մինչև պաշտոններից հանելը և դատի տալը։

Իհարկե, ժողովրդական վերահսկողության խմբերի և պոստերի վրա դրված պարտականությունների հաջող կատարումը ամենից առաջ կախված է նրանց ակտիվությունից, աշխատանքում ցուցաբերած նախաձեռնությունից և բացահայտված թերությունները վերացնելու հաստատակամությունից։ Սակայն, պետք է խոստովանել, որ դեռևս ժողովրդական վերահսկողության ոչ բոլոր խմբերում և պոստերում է, որ վերահսկիչը լավ գիտե իր տեղը և կոնկրետ խնդիրը։ Դա վերաբերում է հատկապես առևտրի, կենցաղ-սպասարկման, բնակարանային շինարարության և տնտեսության մի քանի այլ ճյուղերի ձեռնարկությունների ժողովրդական վերահսկողության խմբերին։

Կատարելով առևտրի, հասարակական սննդի և բնակչության կենցաղային սպասարկման հետագա բարելավման վերաբերյալ կուսակցության և կառավարության դիրեկտիվները, հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները սիստեմատիկաբար ստուգում են սպասարկման ոլորտի ձեռնարկությունների գործունեությունը։ 1968 թվականին մասսայական ստուգման ենթարկվեցին առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և մարդատար տրանսպորտի օբյեկտները։ Մշակված են և կենսագործվում են միջոցառումներ դրանց գործունեությունը բարելավելու համար, մասնավորապես սպասարկման կուլտուրայի բարձրացման, ժողովրդական սպառման ապրանքների ասորտիմենտի ավելացման, հասարակական սննդի ցանցում կերակրատեսակների ու դրանց որակի բարձրացման ուղղությամբ և այլն։

Ժողովրդական վերահսկողության մարմինները, կուսակցական և սովետական կազմակերպությունների ու համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների հետ միասին, էլ ավելի հաստատակամորեն պետք է վերացնեն բնակչության սպասարկման գործում դեռևս գոյություն ունեցող թերություններն ու խախտումները։

Ինչպես նշված է կանոնադրությունում, ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության մեջ գլխավորն այն է, որ օգնություն ցույց տրվի կուսակցական և պետական մարմիններին՝ սիստեմատիկաբար ստուգելու կուսակցության և կառավարության դիրեկտիվների փաստացի կատարումը, կատարելագործելու կոմունիստական շինարարության ղեկավարումը, պայքարելու էկոնոմիկայի համակողմանի վերելքի, պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության ամրապնդման համար։

Լայն է և բազմազան այն հարցերի շրջանակը, որոնցով հարկ է լինում զբաղվել ժողովրդական վերահսկողության մարմիններին։ Կանոնադրության համաձայն ժողովրդական վերահսկողության մարմինները՝

— իրականացնում են սիստեմատիկ վերահսկողություն պետական պլանների և առաջադրանքների կատարման ընթացքի նկատմամբ.

— ակտիվ պայքարում են՝ բացահայտելու և օգտագործելու ժողովրդական տնտեսության ռեզերվները, բարձրացնելու հանրային արտադրության արդյունավետությունը, խնայողաբար ծախսելու աշխատանքային, նյութական ռեսուրսներն ու դրամական միջոցները, արտադրության մեջ ներդնելու ամեն նորն ու առաջավորը.

— վճռականորեն հանդես են գալիս պետական կարգապահության խախտումների, տեղայնության դրսևորումների, գործի հանդեպ գերատեսչական մոտեցման, անտնտեսվարության ու շռայլումների, պետությանը խաբելու, սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգություններ կատարելու ամեն տեսակ փորձերի դեմ.

— խստիվ կանխում են բյուրոկրատիզմի ու քաշքշուկի ամեն տեսակ երևույթները, հասնում պետական ապարատի կատարելագործմանը և նրա էժանացմանը, աշխատանքի ու կառավարման գիտական կազմակերպման արմատավորմանը։

Ստուգման բացակայությունը ծնում է անպատասխանատվություն, պետական կարգապահության խախտումներ։ Օրինակ, 1968 թվականին ժողովրդական վերահսկողության կոմիտեն ստուգեց արդյունաբերական շինարարության մինիստրության № 15 տրեստի նախկին տնաշինարարական կոմբինատի գործերի վիճակը։ Պարզվեց, որ տրեստում թույլ են տրվել պետական և ֆինանսական կարգապահության կոպիտ խախտումներ, աշխատավարձի ֆոնդի գերածախս, հավելագրումներ՝ պլանների կատարողականի մեջ և պետական միջոցների շռայլումներ։ Տրեստի դրամարկղում հայտնաբերվել են խոշոր գումարներ, որոնք ստացվել էին ապօրինի կերպով և ծախսվել զանազան կարիքների համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, ստուգման նյութերի հիման վրա մեղավոր անձանց ազատեց զբաղեցրած պաշտոններից, կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց և վարչական մարմիններին հանձնարարեց քննություն կատարել՝ պետական միջոցներն անմիջական շռայլողներին քրեական պատասխանատվության ենթարկելու համար։ Մինչդեռ, եթե տրեստի ժողովրդական վերահսկողության խումբը և հասարակական մյուս կազմակերպությունները ժամանակին ձեռք առնեին նախազգուշական միջոցներ, կարելի էր ժամանակին կանխել պետությանը հասցրած վնասը։

Սոցիալիստական պետության մեջ ժողովրդական տնտեսության պլանների կատարումն անխախտ օրենք է, որի համար եռանդուն պետք է գործեն ժողովրդական վերահսկողության մարմինները։ Նրանք կոչված են խիստ վերահսկելու արտադրանքի որակի բարձրացմանը, նրա ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ կուսակցության և կառավարության ցուցումների կատարմանը։

Չի կարելի անտեսել, որ հանրապետությունում (ամբողջությամբ առած) պլանների հաջող կատարմամբ հանդերձ, շատ ձեռնարկություններ թերակատարում են սահմանված առաջադրանքները։ Անշուշտ, լինում են օբյեկտիվ պատճառներ, որոնք այս կամ այն չափով արգելակում են պլանների կատարումը։ Սակայն, ինչպես ցույց են տալիս ստուգումները, պլաններ չկատարելը հաճախ սուբյեկտիվ պատճառների, աշխատանքի վատ կազմակերպման հետևանք է։

Մենք հատուկ ուշադրություն պետք է դարձնենք կապիտալ շինարարու-



թյան և հիմնական ֆոնդերը գործողության մեջ դնելու պլանների կատարման վրա։ Վերջին տարիներին կապիտալ շինարարության մեջ կան մեծ խափանումներ, թերակատարվում են պետական պլանները։ 1968 թվականին հանրապետության կապիտալ ներդրումների ընդհանուր պլանը կատարված է ընդամենը 91,7 տոկոսով, շինարարական-մոնտաժային աշխատանքներինը՝ 89.3 տոկոսով։ Առանձնապես բարվոք չէ բնակելի տարածությունների շահագործման հանձնումը, որտեղ պլանները կատարվել են 64,6 տոկոսով, իսկ հիմնական արտադրաֆոնդերը գործադրության մեջ դնելու պլանը՝ 60,8 տոկոսով։ Ըստ որում առանձին կարևորագույն օբյեկտների շահագործման հանձնումը անթույլատրելիորեն ձգձգվում է։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը կուսակցական և սովետական մարմիններից պահանջում են կտրուկ միջոցառումների դիմել երկաթուղում բեռնման ու բեռնաթափման ժամանակ շարժակազմի պարապուրդները կրճատելու համար։ Այդ դիրեկտիվի կենսագործումն անմիջական կապ ունի ժողովրդական վերահսկողության կոմիտեների, խմբերի և պոստերի աշխատանքի հետ։ Պետք է ոտքի հանել բոլոր տնտեսական աշխատողներին, ձեռնարկությունների ու կառույցների ժողովրդական վերահսկիչներին՝ պայքարելու հանրապետության երկաթուղային կայարաններում, արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների մերձատար ուղիներում վագոնների պարապուրդները կրճատելու համար, որոնց թիվը Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքում մեծ չափերի է հասնում։



Արտադրության ռեզերվների հայտնաբերման և օգտագործման համար մղվող պայքարում կուսակցությանն ու կառավարությանը օգնություն ցույց տալը պետք է դիտել որպես ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության գլխավոր ուղղություններից մեկը։ Կոմիտեն միջոցառումներ է մշակել տեղական հումքային ռեսուրսներն առավել չափով օգտագործելու և հեռավոր շրջաններից մի շարք նյութերի ներմուծումը կրճատելու նպատակով։

Մեծ արդյունքի կարելի է հասնել, եթե հաջողվի արագացնել նախագծային կարողությունների յուրացումը, գործածության մեջ դնել չտեղակայված սարքավորումը, կրճատել նյութերի գերնորմատիվային մնացորդները, բարելավել արդյունաբերական և քաղաքացիական շինարարության նախագծման գործը, կատարելագործել ստանդարտները, նորմատիվները, վճռականորեն պակասեցնել կորուստներն արտադրության մեջ։

Հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեն ստուգեց բանվորական ժամանակի օգտագործման և աշխատանքային կարգապահության վիճակը հանրապետության ձեռնարկություններում և հիմնարկություններում։ Պարզված է, որ աշխատանքի ու արտադրության անբավարար կազմակերպման հետևանքով դեռևս զգալի են պարապուրդները և աշխատանքից բացակայելու դեպքերը շինանյութերի արտադրության, սննդի և թեթև արդյունաբերության, մսի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններում։ Շատ են ժամանակի կորուստները նույնիսկ այնպիսի ճյուղերի ձեռնարկություններում, ինչպիսիք են մեքենաշինությունը և սարքաշինությունը։ Բանվորական ժամանակի մեծ կորուստներ կան նաև շինարարական և մոնտաժային կազմակերպություններում, տրանսպորտում և կապի ձեռնարկություններում։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը, Հայաստանի արհմիությունների խորհուրդը որոշում են ընդունել «Բանվորական ժամանակի օգտագործման և





աշխատանքային կարգապահության բարելավման մասին»։ Մենք պարտավոր ենք խստորեն վերահսկել, որպեսզի մինիստրությունները, գերատեսչությունները, ձեռնարկություններն ու կազմակերպություններն ամեն ինչ անեն նշված միջոցառումների իրագործման, աշխատանքի արտադրողականության աճի այդ զգալի ռեզերվի օգտագործման նպատակով։

Չի կարելի հաշտվել նաև այն բանի հետ, որ ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումներն արմատավորելու պլանները շատ ձեռնարկություններ տարիներ շարունակ չեն կատարում։ Ժողովրդական վերահսկիչների պարտքն է՝ վճռականորեն հանդես գալ նորի արմատավորման նկատմամբ ձևական-բյուրոկրատական վերաբերմունքի դեմ, ձգտել այն բոլոր խոչընդոտների վերացմանը, որոնք ծագում են առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի, արտադրական լավագույն փորձի յուրացման ճանապարհին։

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները սիստեմատիկաբար ստուգում և վերահսկում են ժողովրդական բարիքի հափըշտակության, անտնտեսվարության և շռայլության դեմ պայքարի ուժեղացման մասին կուսակցության և կառավարության ցուցումների կատարմանը։ Պետք է մատնանշել, որ մեր ժողովրդական տնտեսության մեջ դեռևս տեղ են գըտնում վատնումներ ու հափշտակումներ, առանձնապես գյուղատնտեսության, առևտրի, արդյունաբերական շինարարության, սննդարդյունաբերության, մսեղենի ու կաթնեղենի և թեթև արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկություններում։ Անտնտեսվարության, մեծ կորուստների և հափշտակումների հետևանքով շատ շինարարական կազմակերպություններ, արդյունաբերական ձեռնարկություններ և սովխոզներ չեն կատարում շահույթների պլանը, որով մեծ վնաս են հասցնում պետությանը։ Ժողովրդական վերահսկողության մարմինները պետք է ավելի ևս ուժեղացնեն պայքարը սոցիալիստական սեփականության պաշտպանության համար։

Կանոնադրությանը համապատասխան, ժողովրդական վերահսկողության մարմինները օգնություն պետք է ցույց տան կուսակցական և սովետական կազմակերպություններին՝ կառավարման ապարատի աշխատանքի հետագա կատարելագործման, նրա բոլոր օղակների աշխատանքի բարելավման գործում։

Ժողովրդական վերահսկողության շրջանային և քաղաքային կոմիտեներն իրենց ուշադրությունը պետք է կենտրոնացնեն հիմնարկությունների և կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների ժողովրդական վերահսկողության խմբերի ու պոստերի աշխատանքի վրա, ապահովեն նրանց դերի բարձրացումը կառավարչական ապարատի աշխատանքի կատարելագործման, պետական կարգապահության ամրապնդման, կատարման ստուգման բարելավման ասպարեզում։

ՍՍՀՄ Գերագույն սովետը ժողովրդական վերահսկողության մարմիններին հանձնարարեց վերահսկողություն իրագործել քաղաքացիների առաջարկությունները, դիմումները և գանգատները քննարկելիս պաշտոնատար անձանց կողմից սովետական օրենքները պահպանելու նկատմամբ։ Այդ հարցն իր արտացոլումն է գտել կանոնադրության մեջ, որի կենսագործման համար մենք շատ աշխատանք պիտի կատարենք։

Կանոնադրության մեջ նշվում է, որ ժողովրդական վերահսկողության



մարմինները գործնական հարցերը լուծում են համապատասխան կուսակցական, տնտեսական, սովետական, կոոպերատիվ, արհմիութենական, կոմերիտական և այլ կազմակերպությունների հետ սերտորեն գործակցելով։

Ժողովրդական վերահսկողության մարմինները աշխատավորների դեպուտատների սովետների մշտական հանձնաժողովների, արհմիությունների հասարակական վերահսկողության հանձնաժողովների, «Կոմերիտական լուսարձակ»-ի և այլ կազմակերպությունների հետ համատեղ աշխատանքի մեծ փորձ ունեն։ Դատարանի, դատախազության, ներքին գործերի մինիստրության հետ ամենասերտ փոխադդեցությամբ նրանք պայքար են մղում ամեն տեսակ չարաշահումների դեմ, սոցիալիստական օրինականության ամրապնդման, սոցիալիստական սեփականության պահպանության ուժեղացման համար։ Անհրաժեշտ է այսուհետև ևս զարգացնել և կատարելագործել այդ փորձը։

Արդյունավետ վերահսկողության և իրենց առջև կանգնած խնդիրները հաջող կատարելու համար ժողովրդական վերահսկողության մարմիններն օժտված են կանոնադրական իրավունքներով։ Նրանք իրենց կատարած ստուգումների արդյունքների առթիվ ընդունում են համապատասխան որոշումներ և կանոնադրությամբ իրենց վերապահված իրավունքների սահմաններում նշում են հայտնաբերված թերությունները վերացնելու միջոցառումներ։ Ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, կազմակերպությունների, մինիստրությունների, գերատեսչությունների ղեկավարները պարտավոր են անհապաղ վերացնել հայտնաբերված թերություններն ու խախտումները և արդյունքների մասին հաղորդել ժողովրդական վերահսկողության կոմիտեներին։

Կանոնադրությամբ նախատեսվում է նաև հանցավորների նկատմամբ հասարակական ներգործության բազմազան միջոցների կիրառում։ Իսկ երբ հասարակական ներգործության միջոցները չեն բավարարում, ժողովրդական վերահսկողության կոմիտեները պաշտոնատար անձանց կարող են խիստ պատասխանատվության ենթարկել, ընդհուպ մինչև գրավոր պաշտոններից հեռացնելը և նրանց վերաբերյալ նյութերը դատախազության մարմիններին հանձնելը։

Ժողովրդական վերահսկողության մարմինները լիովին իրավասու են թերություններ և խախտումներ թույլ տված բոլոր աշխատողների գործերը հանձնելու համապատասխան կուսակցական մարմինների քննարկմանը։ Նրանք պետք է բարձր պահանջկոտություն ցուցաբերեն պետական կարգապահությունը խախտողների, բոլոր նրանց նկատմամբ, ովքեր ոտնահարում են սովետական օրենքները, թույլ են տալիս անտնտեսվարություն, բյուրոկրատիզմ և այլ զանցանքներ ու չարաշահումներ։

Իրավ, ժողովրդական վերահսկողության կոմիտեները պարտավոր են հմտորեն օգտագործել այդ իրավունքները, ապահովել ստուգումների ճշգրտությունը և դրանց օբյեկտիվությունը։

Վերահսկողության գործունեության կարևորագույն պայմաններից մեկն էլ նրա հրապարակայնությունն է։ Վ. Ի. Լենինը քանիցս մատնանշել է, որ պրոլետարական հեղափոխության հաղթանակից հետո վերահսկողությունը պետք է իրագործել ոչ միայն ժողովրդական լայն մասսաների մասնակցությամբ, այլև հրապարակայնորեն, բոլորի աչքի առաջ։ Աշխատավորները, որ-

պես երկրի իսկական տերեր, պետք է ժամանակին իրազեկ լինեն գործերի վիճակին, ծրագրված պլաններին, նրանց կատարման արդյունքներին։

Վերահսկողության հրապարակայնությունն ապահովելու գործում կարևորագույն դեր են խաղում այնպիսի հզոր միջոցներ, ինչպիսիք են՝ մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը։ Խնդիրն այն է, որպեսզի մամուլի էջերում, ռադիոյով և հեռուստատեսությամբ հրապարակվող նյութերում շարադրվեն նաև այն միջոցառումները, որոնք ստուգումների ընթացքում իրագործվում են հայտնաբերված թերություններն ու խախտումները վերացնելու համար։

Ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքը, ինչպես հայտնի է, գնահատվում է նրանով, թե ինչպես են վերացվում ստուգումներով հայտնաբերվող թերությունները, այսինքն՝ վերահսկողության ներգործությամբ։ Ուստի, նրանք պետք է սահմանեն իրենց որոշումների ու հանձնարարականների կատարման ստուգման կուռ սիստեմ. գործը վարեն այնպես, որ նրանց բոլոր միջամտություններն ավարտվեն հայտնաբերված թերությունների վերացմամբ։ Իսկ դրա համար վերահսկողությունը, ստուգումները պետք է լինեն սիստեմատիկ, գործնական և անաչառ։

ՀԿԿ Կենտկոմը վերջերս, ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության մարմինների կանոնադրության հաստատման կապակցությամբ, անդրադարձավ հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքին։ Կենտկոմը քաղաքական-կազմակերպական միջոցառումներ նշեց՝ ուղղված կանոնադրության մասսայականացմանը և դրա հիման վրա ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության հետագա բարելավմանը։ Խնդիրն այն է, որպեսզի ժողովրդական վերահսկողության կոմիտեների յուրաքանչյուր աշխատող, ժողովրդական վերահսկողության խմբերի և պոստերի յուրաքանչյուր անդամ, բոլոր ակտիվիստները ուսումնասիրեն կանոնադրությունը և գործեն նրա մեջ շարադրված պահանջներին համապատասխան։

Կանոնադրության ուսումնասիրության կապակցությամբ տարվող աշխատանքը պետք է կազմակերպել ժողովրդական վերահսկողության կոմիտեների, խմբերի և պոստերի հետագա ամրապնդման, կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման ստուգման գծով նրանց գործունեության ուժեղացման նշանաբանով։



**Մ. Ն. ԵԳԱՆՅԱՆ**

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ ՇՈՒՐՋ*)

Կոմունիստական հասարակության կառուցումը և երկրում կենսագործվող տնտեսական ռեֆորմը սոցիալիզմի քաղաքատնտեսության հանգուցային հարցերի տեսական մշակումը դարձրել են սովետական տնտեսագետների անհետաձգելի խնդիրը։ Այդ հարցերն արդեն լայնորեն քննարկվում են մեր մամուլում։ Մեր նպատակն է այս հոդվածում քննարկել սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության բնույթը և դրա կապը տնտեսական մյուս օրենքների ու կատեգորիաների հետ։

* * *

Հիմնական տնտեսական օրենքը, ինչպես նշել է Կ. Մարքսը, արտահայտում է տվյալ հասարակության բնապատմական զարգացման պրոցեսը, նրա շարժման մոտիվն ու նպատակը։ Օրենքի գործողության բնույթը պայմանավորված է արտադրության օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների՝ արտադրամիջոցների և աշխատուժի միացման ձևով կամ հասարակական արտադրաեղանակով։ Օրենքի էությունն անփոփոխ է մնում հասարակության զարգացման բոլոր ստադիաներում, չնայած որ արտադրաուժերի զարգացման և հին կացութաձևերի վերացման ու վերափոխման շնորհիվ նրա գործողության հրապարակը մշտապես ընդլայնվում է, իսկ մեխանիզմները՝ կատարելագործվում, փոփոխվում են։ Հիմնական տնտեսական օրենքի էքստենսիվ ընդլայնումը և ինտենսիվ դրսևորումը ապացուցված են ինչպես կապիտալիզմի զարգացման պատմությամբ, այնպես և սոցիալիստական շինարարության ընթացքով։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում նոր հասարակարգի տեխնիկատնտեսական հիմքերը գտնվում էին իրենց ձևավորման ու հասունացման պրոցեսում։ Այդ էր պատճառը, որ մինչև սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում սոցիալիստական արտադրաեղանակի տիրապետումը, սոցիա-

*) Տպագրվում է քննարկման կարգով։ Խմբ.։

լիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողությունը սահմանափակ էր։ Սոցիալիզմի հաղթանակից հետո հնարավոր դարձավ պլանաչափ զարգացնել ամբողջ ժողովրդական տնտեսությունը, հաստատուն դարձնել կուտակման աղբյուրները, առավել ակտիվորեն դրսևորել մասսաների ստեղծագործական եռանդը, ծավալել սոցմրցումը, բարձրացնել հասարակական աշխատանքի արտադրողականությունը։ Այդ ամենը, նորագույն տեխնիկայի բազայի վրա, հնարավորություններ ստեղծեց ապահովելու հասարակական արտադրության արագ զարգացումը և բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարումը։

Սեփականության սոցիալիստական ձևը, արտադրության օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների միասնությունը բնորոշում են արտադրության զարգացման ուղղությունները, տենդենցը։ Առանց դրա անհնար է հասկանալ հիմնական տնտեսական օրենքի էությունը, դրա ներգործությունը տնտեսական մյուս օրենքների ու կատեգորիաների վրա։ Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը սոցիալիստական արտադրության զարգացման ուղենիշն է, նպատակային արտահայտությունը։ Արտադրության, բաշխման և փոխանակության ոլորտներում գործող մյուս տնտեսական օրենքներն ու կատեգորիաները հիմնական օրենքի դրսևորման առանձին կողմերն են։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողությունը միասնական պրոցես է, որտեղ հասարակական արտադրության զարգացումն ու կատարելագործումը պայմանավորում են բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարումը։ Սակայն դա չի նշանակում, որ իրականում հիմնական տնտեսական օրենքի այդ երկու կողմերը համաչափ են իրացվում։ Նախ՝ ոչ ամեն տեսակ արտադրության զարգացումն է, որ ապահովում է բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարումը և, երկրորդ, ոչ բոլոր դեպքերում է, որ արտադրության աճն ու բնակչության սպառողական պահանջմունքների բավարարումը կարող են ընթանալ հավասարաչափ։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքն իր երկու կողմերով, ըստ էության, գործողության մեջ մտավ սոցիալիստական շինարարությանը զուգընթաց, հատկապես ինդուստրացման շրջանում և համապարփակ բնույթ ընդունեց գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումից հետո, երբ սոցիալիստական արտադրաեղանակը հաղթանակեց ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Սակայն այդ ողջ ժամանակաշրջանը (ինդուստրացման և կոլեկտիվացման պրոցեսը) բնորոշ է նրանով, որ արդյունաբերության բնագավառում հասարակական արտադրությունը զարգանում էր գերազանցապես արտադրամիջոցների արտադրության գծով, իսկ կազմավորվող ու ձևավորվող կոլեկտիվ տնտեսությունները չունեին բարձր արտադրողականություն։ Բացի այդ, երկրում արտադրվող սպառման առարկաների մի մասն արտահանվում էր և փոխանակվում արտադրամիջոցների հետ։ Այստեղից պարզ է դառնում, թե ինչու այդ շրջանում հիմնական տնտեսական օրենքի գործողությունը դրսևորվում էր գերազանցապես երկրի արտադրաուժերի զարգացման ու բազմացման, սոցիալիզմի տնտեսական հիմքերի կառուցման ոլորտում։ Հասկանալի է, որ այդ ժամանակ բնակչության կենսամակարդակը հարաբերականորեն ետ էր մնում արտադրության ընդհանուր զարգացումից։ 1928 թ. արդյունաբերության բնագավառում արտադրամիջոցների արտադրության աճը, 1919 թ. համեմատ, հասավ 150, իսկ 1940 թ.՝ 1340 տոկոսի։ Սպառման առարկաների արտադրությունը համապատասխա-



նաբար՝ 120 և 460 տոկոսի։ Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, ապա
դրա համախառն արտադրանքը 1913 թ. կազմում էր 28,1 միլիարդ ռուբլի,
1924—1928 թթ. (միջին տարեկանը)՝ 27,4, իսկ 1936—1940 թթ.՝ (միջին տա-
րեկանը)՝ 29,8 միլիարդ ռուբլի։
Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում արդյունաբերության
համախառն արտադրանքն զգալի չափով կրճատվեց, խիստ նվազեց բնակ-
չության կենսամակարդակը։ Երկրի արտադրաուժերի տեղաբաշխման մեջ
կատարվեց էական փոփոխություն։ Պատերազմի առաջին շրջանում երկրի
արևմտյան մարզերից արևելյան մարզերը փոխադրվեցին բազմաթիվ գոր-
ծարաններ, գլխավորապես ծանր արդյունաբերության ձեռնարկություններ։
Պատերազմը երկրին ու ժողովրդին անասելի վնասներ պատճառեց։ Թուլաց-
րեց արտադրաուժերի զարգացումը։ Օրհասական այդ օրերին, սակայն, լայն
թափով զարգացան արտադրության միջոցների արտադրության նոր ճյուղեր,
որոնք լուրջ դեր խաղացին մեր հաղթանակի ապահովման գործում։
Հայրենական պատերազմից հետո փոխվեցին հասարակական արտադրու-
թյան երկու ստորաբաժանումների զարգացման տեմպերը։ Եթե 1945 թ. մա-
կարդակը «Ա» և «Բ» խմբերի համար ընդունենք 100 տոկոս, ապա 1950 թ.
«Ա» խմբի արտադրանքը բարձրացավ 183, իսկ «Բ» խմբինը՝ 207 տոկոսով։
Այդ նույն ժամանակաշրջանում գյուղատնտեսության արտադրանքը բարձ-
րացավ 163 տոկոսով։ Ժողովրդական տնտեսության նման զարգացումը չէր
նշանակում, որ արմատական բեկում էր մտցվել արտադրության ստորաբա-
ժանումների բնագավառում, փոխվել էին դրանց համամասնությունները։
Կարևորն այն է, որ 1945—1950 թթ. երկու ստորաբաժանումների զարգաց-
ման տեմպերի փոփոխությունն ազդեց դրանց համամասնությունների փոխ-
հարաբերակցության վրա։ Արտադրամիջոցների արտադրության տեմպերը
1950-ական թթ. երկրորդ կեսից նորից սկսեցին գերազանցել սպառման
առարկաների արտադրության զարգացման տեմպերը։ Այսպես. եթե 1945 թ.
«Ա» և «Բ» խմբերի համար այն ընդունենք 100 տոկոս, կտեսնենք, որ 1966 թ.
«Ա» խմբի արտադրանքն աճել է 1028, իսկ «Բ» խմբինը՝ 800 տոկոսով։
Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը
խնդիր են դրել սոցիալիզմի զարգացման ներկա փուլում այնպես փոխել ար-
տադրամիջոցների և սպառման առարկաների արտադրության զարգացման
տեմպերը, որ, առանց խախտելու դրանց փոխադարձ պայմանավորվածու-
թյունը, սպառման առարկաների արտադրության տեմպերը գերազանցեն
արտադրամիջոցների աճի տեմպերը։ Այդ է վկայում ժողովրդական տնտեսու-
թյան 1968 թ. պլանը, ըստ որի սահմանված էր արտադրամիջոցների արտա-
դրության աճ (1968 թ. համար) 7,9 տոկոսով, իսկ սպառման միջոցների՝ 8,6
համամասնությամբ։ Այդ հնարավոր դարձավ այն բանի շնորհիվ, որ արտա-
դրամիջոցների արտադրությունը նախորդ տարիների ընթացքում զարգացել է
ավելի արագ տեմպերով։ Կասկածից վեր է, որ դրա միջոցով ավելի կբարձրա-
նա բնակչության կենսամակարդակը։
Գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական պայմաններում հիմնական
տնտեսական օրենքի գործողության ինտենսիվությունը ամբողջապես կախ-
ված է ինչպես ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման
կարողությունից, այնպես և աշխատավոր մասսաների ստեղծագործական
եռանդի մոբիլիզացումից և ռացիոնալ օգտագործումից։ Որքան պլանավորող
օրգանները խոր ուսումնասիրեն գործող տնտեսական օրենքների պահանջ-

ներն ու եղած արտադրական հնարավորությունները և ճիշտ հարաբերակցություններ սահմանեն տարբեր բնագավառների ու ճյուղերի միջև, այնքան հասարակական արտադրության զարգացումը կընթանա առանց լուրջ արգելքների և անհամամասնությունների։ Բայց սխալ կլինի կարծել, թե տվյալ սոցիալիստական երկրի տնտեսական զարգացման հաջողությունները պայմանավորված են միայն ճիշտ պլանավորմամբ։ Ամենալավ ու հաշվենկատ պլանավորման դեպքում էլ հասարակական արտադրությունը նվազ տեմպերով կզարգանա, եթե չկատարելագործվի դրա կառավարման սիստեմը, պատշաճ չգործեն արտադրության բաշխման ու փոխանակման մեխանիզմները և վոլյունտարիստական մոտեցում ցուցաբերվի տնտեսության զարգացման գործում։

Պլանները կատարում են կենդանի մարդիկ, գործադրելով իրենց անհատական և կոլեկտիվ ջանքերը։ Սոցիալիստական արտադրության զարգացման ինտենսիվությունը մեծ չափով կախված է այն բանից, թե գիտականորեն ինչպես կկազմակերպվի աշխատանքի պրոցեսը և ինչպիսի շահագրգռվածություն կցուցաբերեն աշխատողներն այդ պրոցեսում։ Աշխատանքի պրոցեսի ճիշտ կազմակերպումը, նյութական շահագրգռվածության հիման վրա անհատի, կոլեկտիվի ու հասարակության շահերի խելացի զուգակցումը մարդկանց ստեղծագործական եռանդի մոբիլիզացման ու դրսևորման գլխավոր գործոններն են։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում մեծ ուշադրություն է նվիրվել հասարակական արտադրության զարգացման և արդյունավետության բարձրացման այդ գործոններին։

* * *

Այժմ քննարկենք այն հարցը, թե հիմնական տնտեսական օրենքի գործողությունն ինչպես է արտահայտվում բնակչության բարեկեցության բարձրացման ոլորտում։

Ինչպես ասվեց, արտադրության զարգացումը սոցիալիզմի օրոք ինքնանպատակ չէ, այն միջոց է՝ բավարարելու բնակչության հարաճուն պահանջմունքները։ «Պրոլետարական հեղափոխությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— կատարվում է հանուն ժողովրդի կենսական շահերի, հանուն աշխատավորների բարեկեցության ու երջանկության, նրանց ազատության ու սոցիալական արդարության։ Ահա թե ինչու սովետական մարդկանց կյանքի բարելավման հոգսը մշտապես եղել ու մնում է կուսակցության և սովետական պետության ուշադրության կենտրոնում»։ Սոցիալիստական հասարակարգում արտադրամիջոցները հանրային սեփականություն են, և արտադրությունը կենսագործվում է կոլեկտիվ, անմիջական հասարակական բնույթ ունեցող աշխատանքով։ Այստեղ մարդկանց պահանջմունքները չեն բավարարվում ո՛չ սպառման առարկաների հավասար բաշխման սկզբունքով, ո՛չ ըստ նրանց պահանջմունքների։ Դա բացատրվում է թե՛ հասարակական արտադրության անբավարար զարգացմամբ և թե մարդկանց միջև գոյություն ունեցող սոցիալական ու պրոֆեսիոնալ տարբերություններով։ Այդ պատճառով սոցիալիզմի ժամանակ սպառման առարկաները հիմնականում բաշխվում են ըստ աշխատանքի քանակի ու որակի։ «Բայց ինչ վերաբերում է վերջիններիս (սպառման առար-



կաներին— Մ. Ե.) բաշխմանը,— գրում է Մարքսը,— ապա այստեղ իշխում է նույն սկզբունքը, ինչ գոյություն ունի ապրանքների համարժեքային փոխանակության ժամանակ՝ մի ձևի աշխատանքի որոշակի քանակ փոխանակվում է մի ուրիշ ձևի աշխատանքի հավասար քանակի հետ» (К. Маркс. Критика Готской программы, 1932, стр. 26)։

Այստեղից հետևում է, որ սոցիալիստական արտադրության նպատակը, այսինքն՝ սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքն իր բուն էությամբ իրագործվում է, ամենից առաջ՝ ըստ աշխատանքի բաշխման կոնկրետ օրենքի գործողության։ Հիմնական տնտեսական օրենքի գործողությունն ապահովում է արտադրության զարգացման հասարակական էությունը և դրա իրականացումը հանուն հասարակության ու նրա անդամների պահանջմունքների բավարարման։ Բայց նա չի պատասխանում այն հարցին, թե ինչպիսի սկզբունքներով ու ձևերով պետք է ապահովվի այդ պահանջմունքների բավարարումը։ Ճիշտ այնպես, ինչպես հիմնական տնտեսական օրենքը, արտահայտելով հասարակական արտադրության զարգացման շարժառիթը, արտադրության գործոնների ներդաշնակ միացման ձևից բխող գլխավոր արտադրահարաբերությունը, ցույց չի տալիս, թե այդ հարաբերությունն իրականում ինչ ձևեր է ընդունում և ինչ կոնկրետ օրենքների ու կատեգորիաների գործողությամբ է ապահովվում դրա շարժումը։

Այսպիսով, նյութական բարիքների արտադրության և հասարակական օգտավետ աշխատանքի բնագավառներում աշխատողներն ազգային եկամտից բաժին են ստանում ըստ իրենց կատարած աշխատանքի քանակի ու որակի։ Եթե վերցնենք բանվոր-ծառայողների միջին աշխատավարձն ու դրան ավելացնենք ամեն տեսակ արտոնություններն ու լրացուցիչ վճարումները, կտեսնենք, որ վերջին 27 տարում այն 40,6 ռ. բարձրացվել է 140,2 ռ.։ Արդյունաբերության և շինարարության բնագավառի բանվորների եկամուտը, 1913 թ. համեմատ, 1966 թ. աճել է 5,1 անգամ։

Աշխատավորների բարեկեցության մակարդակը որոշող մյուս կարևոր հանգամանքը հասարակության աշխատունակ անդամների զբաղվածության աստիճանի բարձրացումն է։ 1928 թ. մեր երկրում կար 1.576 հազար գործազուրկ, իսկ 30-ական թթ. այն լիովին վերացավ։ «Կյանքի լավացման ամենակարևոր հանգամանքը ես համարում եմ այն,— ասել է Մ. Ի. Կալինինը,— որ այսօր բանվորի գլխավերև կախված չէ հավիտենական դամոկլյան սուրը— բանվորը չի վախենում, որ վաղը գործազուրկ կմնա» (М. Калинин. Рабочий класс прежде и теперь, «Правда», 9 октября, 1937 г.)։

Աշխատավորների բարեկեցության համար կարևոր նշանակություն ունի աշխատաժամանակի կրճատումը։ ՍՍՀՄ-ում, 1913 թ. համեմատությամբ, բանվորների ու ծառայողների շաբաթվա աշխատանքի տևողությունը կրճատվել է 18 ժամով։ Այն 58,5 ժամից իջել է 40,6 ժամի։

Հաշվի առնելով այս ամենը (աշխատավարձի բարձրացումը, գործազրկության վերացումը, աշխատօրերի կրճատումը, լրացուցիչ վճարումները), մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտն արդյունաբերության մեջ, 1913 թ. համեմատ, աճել է 6 անգամ։ Նույնը պետք է ասել գյուղի բնակչության մասին։ Նախահեղափոխական գյուղը խարխափում էր մթության, խավարի մեջ։ Սակավահողությունը և հողազրկությունը, հարկերի ու պարհակների ծանրությունը, վաշխառուական ու առևտրական կեղեքումը գյուղացուն ստիպում

ջին օրական աշխատել 11—16 ժամ։ Իսկ այսօր գյուղը անճանաչելի է. գյուղատնտեսական աշխատանքը հետզհետե դառնում է ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը. կոլտնտեսականը միջին հաշվով աշխատում է 8 ժամ, իսկ նրա ռեալ եկամուտները տարեցտարի աճում են։ 1913 թ. համեմատությամբ, աշխատավոր գյուղացու ռեալ եկամուտը 1966 թ. աճել է 8,5 անգամ. հասակն առած կոլտնտեսականը թոշակավորվում է, աստիճանաբար վերանում է գյուղի և քաղաքի էական տարբերությունը։

ՍՍՀՄ բնակչության կենսամակարդակի բարձրացման լավագույն վկայությունը սպառման առարկաների արտադրության ընդլայնումն է, որը, 1966 թ., 1913 թ. համեմատ, աճել է 21,8 անգամ։ Այսօր մեկ շնչի համար 15 անգամ ավելի շատ լայն սպառման առարկաներ են արտադրվում, քան ցարիզմի օրոք։

Հաճախ արտահայտվում է այն թյուր կարծիքը, թե մեր երկրում արտադրվող սպառման առարկաների զգալի մասն արտասահման է արտահանվում։ Մինչդեռ, նման ենթադրություններն անհիմն են։ Արտահանվող ողջ ապրանքների շարքում ժողովրդական սպառման առարկաները 1950 թ. կազմել են 25,5 տոկոս, իսկ 1964 թ.՝ ընդամենը 10,1 տոկոս։ Այդ նույն ժամանակաշրջանում ընդհանուր ներմուծվող առարկաների շարքում սպառման առարկաների ներմուծումը 24,9 տոկոսից հասել է 35,5 տոկոսի։

Ըստ նոր հնգամյա պլանի (1966—1970), մեկ շնչի հաշվով, աշխատավորների ռեալ եկամուտները կաճեն 1,3 անգամ։ Նախատեսվում է մսի և մսամթերքների գծով մեկ շնչի սպառումը բարձրացնել 20—25 տոկոսով, կաթինն ու կաթնամթերքինը՝ 15—18, շաքարինը՝ 25, ձկնեղենինը՝ 40, գործվածքեղենինը, զգեստինն ու տրիկոտաժեղենինը՝ 40 տոկոսով։

Սոցիալիստական հասարակության բնակչության բարեկեցության բարձրացումը չի կարելի չափել միայն աշխատավորների աշխատանքի դիմաց ստացվող անհատական եկամուտներով։ Ճիշտ է, սոցիալիզմի զարգացման ներկա փուլում անհատի ընդհանուր բարեկեցության բարձրացման հիմնական աղբյուրն աշխատավարձն է, բայց սոցիալիզմի զարգացման պատմությունը վկայում է, որ սպառման ընդհանուր ֆոնդի մեջ մեծանում է սպառման հասարակական ֆոնդի տեսակարար կշիռը. այսինքն՝ հետզհետե աճում են սոցիալական ապահովագրման, նպաստների, կենսաթոշակների ու թոշակների, անվճար ուսուցման, բուժսպասարկման և այլ ասպարեզներում կատարվող ծախսումները։ 1940 թ. սոցիալ-կուլտուրական բնագավառներում ծախսվել է 4,6, իսկ 1967 թ.՝ 49,4 մլրդ ռուբլի։

Ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման վկայությունն են բնակարանային ֆոնդերի աճը, ժողովրդական կրթության, առողջապահության վիճակի, կուլտուրական սպասարկման բարելավումը, կյանքի միջին տևողության երկարացումը և այլն։ Այդ բոլորով ՍՍՀՄ վաղուց անցել է ամենազարգացած կապիտալիստական երկրներից։ Հասարակության ընդհանուր բարեկեցության բարձրացմանը զուգընթաց, մի կողմից՝ աստիճանաբար վերանում է ծանր, հյուծիչ աշխատանքը, մյուս կողմից՝ լայն հնարավորություն է ստեղծվում անհատի բազմակողմանի զարգացման համար։

* * *

Հասարակական գիտությունների զարգացման վերաբերյալ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1967 թ.



օգոստոսի որոշումը տնտեսագետներից պահանջում է բացահայտել ո՛չ միայն սոցիալիզմի տնտեսական օրենքների ու կատեգորիաների էությունը, այլև դրանց գործողության մեխանիզմը։

Ինչպես նշեցինք, սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը համընդհանուր բնույթ ունի։ Այն արտահայտում է հասարակական արտադրության բուն էությունը, արտադրության սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների միացման ձևից բխող գլխավոր արտադրահարաբերությունը։ Ինչպես մեքենայական արտադրության մեջ բանվորական բազմապիսի մեխանիզմների ճյուղավորումները շարժման ուժ են ստանում մեքենաշարժիչներից և դրա օրգաններն են, կոնկրետ տնտեսական օրենքներն ու կատեգորիաներն իրենց գործողության ուժն ստանում են հիմնական տնտեսական օրենքից և դրա համար դրանց գործողության մեխանիզմները գլխավոր մեխանիզմի մասնաճյուղերն են։

Սոցիալիստական հասարակության շարժիչ ուժն ու նպատակը պայմանավորված է արտադրամիջոցների հանրային սեփականության բնույթը բնորոշող արտադրահարաբերությամբ, որի աբստրակտ արտահայտությունը հիմնական տնտեսական օրենքն է։ Վերջինիս գործողության մեխանիզմը այդ գլխավոր հարաբերության վերարտադրման ու շարժման մեխանիզմն է. և, քանի որ արտադրաուժերի զարգացման և տնտեսական վերափոխումների հիման վրա մշտապես կատարելագործվում է գլխավոր հարաբերությունը, բնական է, որ դրա հիման վրա պետք է փոփոխվի նաև նրա գործողության մեխանիզմը։ Հասարակական արտադրության զարգացմանը զուգընթաց կատարելագործվում ու փոփոխվում են նաև մյուս տնտեսական օրենքների ու կատեգորիաների գործողության մեխանիզմները։

Արժեքի, արտադրության պլանաչափ զարգացման, վերարտադրության, սոցիալիստական կուտակման և այլ տնտեսական օրենքների գործողության մեխանիզմները, ինչպես և սոցիալիստական ձեռնարկության (որպես արտադրական միավորի), տնտհաշվարկի, վարկային սիստեմի, ապրանքաշրջանառության, ինքնարժեքի, գնագոյացման, աշխատանքի կոոպերացման սիստեմի և այլ տնտեսական կատեգորիաների գործողության մեխանիզմները պետք է անհրաժեշտաբար կատարելագործվեն և կերպարանափոխվեն, երբ փոփոխվում են դրանց հիմք հանդիսացող ու սնուցող որոշակի հարաբերությունները։

Սակայն ինչպե՞ս է տեղի ունենում այդ պրոցեսը։ Անկազմակերպ հասարակարգում տնտեսական օրենքները գործում են տարերայնորեն, հակադրությունների ու բախումների պայմաններում։ Կազմակերպված հասարակությունում նրանց գործողությունները նպատակասլաց են։ Հետևապես նրանց մեխանիզմները չեն կարող առաջանալ ինքնաբերաբար, կատարելագործվել ու փոփոխվել տարերայնորեն։ Այդ կատարվում է ժողովրդական տնտեսության կառավարող օրգանների կողմից։

Սոցիալիզմի տնտեսական օրենքների խորապես ուսումնասիրման ու տնտեսական պրակտիկայի ընդհանրացման հիման վրա,— ասում է ՍՍՀՄ պետպլանի նախագահ Ն. Կ. Բայբակովը,— տնտեսական գիտությունն իր ջանքերը պետք է կենտրոնացնի ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման թեորիայի հետագա մշակման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ուղիների ու մեթոդների, տնտե-

սական ռեֆորմի մեխանիզմների կատարելագործման վրա (տե՛ս «Экономическая газета», № 21, 1968, стр. 9):

Ներկայումս երկրում կիրառվող տնտեսական ռեֆորմը հասարակական արտադրության զարգացման պահանջների արդյունք է: Գոյություն ունեցող տնտեսական հարաբերությունները— անհատի և կոլեկտիվի, կոլեկտիվի և ձեռնարկության, ձեռնարկության և պետության, ձեռնարկության ու վարկային սիստեմի ոլորտներում, անհրաժեշտ չափով չէին նպաստում ստեղծված հնարավորությունների ռացիոնալ օգտագործմանը և արտադրության արդյունավետության բարձրացմանը: Ուստի, պետք էր կատարելագործել ու փոխել ինչպես նշված հարաբերությունները, այնպես և դրանք արտահայտող օրենքների ու կատեգորիաների գործողության մեխանիզմները: Որքան խորապես ուսումնասիրվեն ու ճիշտ ըմբռնվեն հասարակական արտադրության զարգացման պրոցեսում առաջացող նոր երևույթները, դրանց ձևավորումն ու զարգացումն արգելակող պատճառները, այնքան հեշտ կլինի փոխել հնացած հարաբերությունները. ավելի ճիշտ ընթացք կտրվի տնտեսական օրենքների ու կատեգորիաների գործողությանը, համապատասխանաբար կկատարելագործվեն, անհրաժեշտության դեպքում կփոփոխվեն դրանց մեխանիզմները:

Կազմակերպված հասարակարգում հիմնական տնտեսական օրենքի նպատակային գործողությունն ապահովող մեխանիզմը՝ ժողովրդական տնտեսության պլանավորումն է: Այն ո՛չ միայն արտացոլում է ժողովրդական տնտեսության պլանաչափ, համամասնական զարգացումը, այլև նպատակալաց է դարձնում մյուս բոլոր տնտեսական օրենքների ու կատեգորիաների գործողությունը: Եվ երբ Վ. Ի. Լենինը նշում էր, որ ամբողջ պետական տնտեսական մեխանիզմը փոխարկել միասնական խոշոր մեքենայի տնտեսական օրգանիզմի, որը կաշխատի այնպես, որ հարյուր միլիոնավոր մարդիկ ղեկավարվեն միասնական պլանով, նկատի ուներ պլանավորման հենց այդ նշանակությունը:

Որոշ տնտեսագետներ, մոռանալով սոցիալիստական միասնական արտադրության զարգացման պահանջից բխող կենտրոնացած պլանավորման սկզբունքը, առաջարկում են ձեռնարկությունների արտադրական գործունեությունը համարեցնել շուկայի պահանջներին, պլանը փոխարինել ոչ պարտավորեցնող կոնտրոլ թվերով: Տուրք տալով ռևիզիոնիզմին, նրանք խնդիր են դնում վերացնել պետության դերը էկոնոմիկայում, արտադրությունն ամբողջապես հարմարեցնել ներքին և արտաքին շուկաների պահանջարկին: Այդ նշանակում է՝ ժողովրդական տնտեսության նպատակային զարգացումը փոխարինել արտադրության անարխիայով, մի բան, որը հակասում է արտադրության սոցիալիստական բնույթին:

Սոցիալիզմը պլանային կենտրոնացված տնտեսությամբ կազմակերպված հասարակարգ է, որի էությունը դրսևորվում է գործող տնտեսական օրենքներում ու կատեգորիաներում: Դրանք զարգանում ու կատարելագործվում են կյանքի փոփոխմանը զուգընթաց:



Ն. Վ. ԳԱԼՅԱՆ

# ԱՖՐԻԿՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

Սոցիալիստական հեղափոխությունը,— գրել է Լենինը,— չի լինելու միայն և գլխավորապես յուրաքանչյուր երկրում իր բուրժուազիայի դեմ հեղափոխական պրոլետարների պայքար, ո՛չ, այն լինելու է իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների ու երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարն ընդդեմ միջազգային իմպերիալիզմի (ПСС, т. 39, стр. 327):

Մեր դարաշրջանի առանձնահատկությունն այն է, որ միջազգային պրոլետարիատն աշխարհի մի մասում ունի իր պետական կազմակերպությունը՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմը: Դա վճռապես նպաստել է ազգային-ազատագրական հեղափոխությունների ծավալմանը: Ազգային-ազատագրական պայքարը դարձել է իմպերիալիզմի խորտակման վճռական գործոնը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասը: Ազգային-ազատագրական շարժման ճնշման տակ վերջնականապես փլուզվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը, որն իր պատմական նշանակությամբ սոցիալիզմի համագործակցության գոյացումից հետո, երկրորդն է:

Ազգային-ազատագրական շարժման ակտիվ շրջաններից է աֆրիկյան մայր ցամաքը: Աֆրիկան գաղութատիրության կարևոր միջնաբերդ էր: Իմպերիալիստական տերությունները անցյալ դարի 80-ական թթ. այն հիմնովին բաժանեցին: Այդ բաժանումը տեղի ունեցավ Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Պորտուգալիայի, Բելգիայի, Իսպանիայի և Իտալիայի միջև մղված կատաղի կռվի պայմաններում: Այդ ժամանակ ԱՄՆ-ը ամրացավ Լիբերիայում: Աֆրիկյան ժողովուրդները բավականաչափ զորեղ դիմադրություն էին ցույց տալիս զավթիչներին: Սակայն ուժերը խիստ անհավասար էին: Իմպերիալիստներն այդ մայր ցամաքը ձևվում ու վերաձևում էին, առանց հաշվի առնելու Աֆրիկայի ժողովուրդների էթնիկական ու ցեղային շահերը:

Իմպերիալիստական տերությունները հումքի ռեսուրսների, վաճառահանման շուկաների և կապիտալի ներդրման ոլորտների համար մղվող պայքարում բզկտում էին Աֆրիկան: Նրանք այնտեղ իրենց տիրույթների սահմանները որոշում էին միայն իրենց շահերից ելնելով, բնավ նկատի չունենալով ժողովուրդների շահերը: Վերջիններս երբեք չեն հաշտվել իրենց գաղութային վիճակի հետ: Նրանք միշտ ձգտել են ազատության: Նրանց ազատագրման համար բարենպաստ պայմաններ ստեղծվեցին միայն երկրորդ համաշխարհային պատերազմից հետո: Աֆրիկյան ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման վերելքն սկսվեց 50-ական թթ., կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ փուլում: 1957—1961 թթ. անկախություն ստացան երեսունութ աֆրիկյան երկիր (մինչդեռ պատերազմից առաջ Աֆրիկայում համեմատական անկախություն ունեին միայն երեք երկիր՝ Եգիպտոսը, Եթովպիան և Լիբերիան): Ներկայումս Աֆրիկայում արդեն կա 42 անկախ պետություն:

Որո՞նք են ազգային-ազատագրական պայքարի առանձնահատկություններն Աֆրիկայում: Նախ՝ միջազգային ասպարեզում քաղաքական ուժերի դասավորության մեջ փոփոխություն է կատարվել հօգուտ սոցիալիզմի: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումը, նրա

տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորության աճը ուժեղացրին սոցիալիստական լագերի ազդեցությունն ամբողջ աշխարհում։ Այդ պատճառով իմպերիալիզմը ողջ ուշադրությունը սևեռեց սոցիալիզմի դեմ մղվող պայքարին։ Երկրորդ՝ իմպերիալիստները չկարողացան պայքարել և՛ սոցիալիզմի, և՛ ազգային-ազատագրական շարժման դեմ։ Նրանք ստիպված էին խաղաղությամբ քաղաքական անկախություն տալ աֆրիկյան երկրներին։ Դրա շնորհիվ Աֆրիկայում, բացի Քենիայից և Ալժիրից, հակաիմպերիալիստական հեղափոխությունները խաղաղ ընթացք ունեցան։ Երրորդ՝ հանձինս սոցիալիստական երկրների, ազգային-ազատագրական շարժումն ունի հավատարիմ և հուսալի դաշնակից, և իմպերիալիստները չկարողացան զինված պայքար սկսել աֆրիկյան այն ժողովուրդների դեմ, որոնք մաքառում էին իրենց անկախության համար։

Ազգային-ազատագրական շարժման առաջին փուլում, երբ պայքարն ուղղված էր քաղաքական անկախության նվաճմանը, Աֆրիկայի շատ երկրներում չկային բուրժուազիայի ու պրոլետարիատի կազմավորված դասակարգեր։ Այդ ժամանակ սակավաթիվ և բաժան-բաժան բանվոր դասակարգը չկարողացավ դառնալ հակաիմպերիալիստական հեղափոխության հեգեմոնը։

Սահարայից դեպի հարավ գտնվող աֆրիկյան երկրների մեծ մասում բուրժուազիան տակավին նոր էր սկսել ձևավորվել կամ այն առհասարակ չկար։ Այդ պատճառով ազգային-ազատագրական շարժման մեջ չէր ծառանում բուրժուազիայի հեգեմոնիայի հարցը։ Աֆրիկայի այն երկրներում, որտեղ այս կամ այն չափով բուրժուազիան ձևավորվել էր, այնուամենայնիվ, ցույց տվեց, որ ինքն անզոր է և շահագրգռված չէ հետևողականորեն պայքարելու ժողովրդի շահերի համար։ Աֆրիկյան երկրների մեծ մասը, քաղաքական անկախություն ստանալով, թևակոխեց ազգային-ազատագրական շարժման երկրորդ փուլը, երբ, երկրի քաղաքական անկախության ամրապնդման խնդրի հետ միասին, առաջին պլան էին մղվում սոցիալ-տնտեսական պրոբլեմները։ Գլխավորն այդ փուլում տնտեսական անկախության համար մղվող պայքարն էր, ուստի, այդ երկրների առջև ծառացավ հետագա զարգացման ուղիների ընտրության հարցը։ Աֆրիկյան երկրների մեծ մասը ձգտում է օգտագործել թե՛ կապիտալիստական և թե սոցիալիստական պետությունների մեթոդները։ Այդ հողի վրա այստեղ սոցիալ-տնտեսական զարգացման ուղղությունների ընտրության համար քաղաքական սուր պայքար է մղվում։

Աֆրիկյան զարգացող երկրների մեջ կա երիտասարդ պետությունների խումբ, որը գերադասում է ընթանալ սոցիալիզմի ուղիով։ Արաբական Միացյալ Հանրապետությունը, Ալժիրը, Գվինեան, Բրազավիլի Կոնգոն, Տանզանիան, Մալին ընտրել են զարգացման ոչ-կապիտալիստական ուղին։

Աֆրիկյան երկրները գաղութատիրության երկարատև տիրապետության հետևանքով տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զարգացմամբ մոտ 80—100 տարով ետ են մնացել առաջավոր կապիտալիստական երկրներից։ Բնակչության մեկ շնչի հաշվով աֆրիկյան երկրներում արտադրանքի թողարկումը 12 անգամ պակաս է, քան զարգացած կապիտալիստական երկրներում։ Այնտեղ բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան եկամուտը 13—14 անգամ պակաս է, քան կապիտալիստական երկրներում։ Այդ պատճառով աֆրիկյան շատ երկրներ զարգացման ոչ-կապիտալիստական ուղին հակադրում են կապիտալիստականին, որովհետև միայն այդ դեպքում նրանք կկարողանան իրենց երկրները դուրս բերել դարավոր հետամնացությունից։ Կահիրեում լույս տեսնող «Ալ-Ահրամ» թերթը գրել է. «Սոցիալիզմն արաբների համար դարձել է պատմական անհրաժեշտություն, որովհետև ապացուցված է, որ տնտեսական ու քաղաքական զարգացումը, ֆեոդալիզմի և իմպերիալիզմի երկարատև տիրապետության հետևանքով մեզ պարտադրված հսկայական հետամնացության հաղթահարումն անկարելի են ավանդական կապիտալիստական սիստեմի ուղիով»։

Համաշխարհային ասպարեզում սոցիալիստական երկրների երևան գալն այդ երկրների համար բաց արեց սոցիալիզմի ճանապարհը։ Այժմ նրանք, շրջանցելով կապիտալիզմի զարգացման ստադիան, ընթանում են այդ ուղիով։ Ոչ-կապիտալիստական զարգացման ուղին թևակոխած աֆրիկյան երկրներում իշխանության գլուխ են կանգնած հեղափոխական մտավորականության և մանր բուրժուազիայի միջավայրից սերած հեղափոխական դեմոկրատ գործիչները, որոնք չեն ընկրկում տեղական բուրժուազիայի առջև, այլ, ընդհակառակը, խզում են կապերը նրանից։

Արաբական Միացյալ Հանրապետության, Ալժիրի, Գվինեայի, Բրազավիլի Կոնգոյի և մյուս երկրների հեղափոխական զարգացումը վկայում է, որ հնարավոր է դեպի սոցիալիզմ ընթանալ, երբ չկա պրոլետարական անմիջական ղեկավարություն, երբ այդ շարժումը ղեկավարում են հեղափոխական դեմոկրատ գործիչները, որոնք հենվում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման աջակցության վրա։ Այդ երկրների կառավարություններն արդեն իրագործում են մի շարք



տնտեսական, կազմակերպական և կուլտուր-լուսավորական ֆունկցիաներ։ Դրա նպատակը, արտադրամիջոցների հանրայնացման բազայի վրա, սոցիալիստական արտադրաեղանակի հիմքեր ստեղծելն է։

Պետք է նշել նաև, որ երիտասարդ աֆրիկյան պետությունների ոչ-կապիտալիստական զարգացումն առավել հակասական է և կապված է մեծ դժվարությունների հետ։ Այդ երկրներում դասակարգային սուր պայքար է մղվում։ Այնտեղ տակավին լուծված չէ «ով-ումի» հարցը. գլխավորն այն է, որ ստեղծվեն կուսակցություններ, որոնք ընդունակ լինեն գլխավորելու աշխատավոր զանգվածներին ու նրանց առաջնորդեն տնտեսական ու սոցիալ-քաղաքական խոր վերափոխումների ուղիով։ Գիտական սոցիալիզմի տեսությամբ առաջնորդվող այդպիսի ավանգարդը կարող է կազմակերպել ու մոբիլիզացնել մասսաներին նոր կյանքի կառուցման համար։

Գաղափարապես կոփված ավանգարդի բացակայությունը, հեղափոխական տեսության նկատմամբ եղած արհամարհական վերաբերմունքը, օբյեկտիվ և սուբյեկտիվ դժվարություններն ու սխալները, որ թույլ տվեցին Գանայի ղեկավարները, ինչպես հայտնի է, թանկ նստեցին այդ երկրի ժողովրդի վրա։ Իմպերիալիստներին հաջողվեց այնտեղ հաստատել ռեակցիոն վարչակարգ, Գանային շեղել զարգացման ոչ-կապիտալիստական ուղուց։ Իմպերիալիստներն ամեն ինչ անում են, որպեսզի տապալեն Աֆրիկայի առաջադիմական վարչակարգերը, ճնշեն այդ ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։ Պետք է նշել, որ ազգային-ազատագրական շարժման բուռն զարգացումն ընդգրկել է նախ և առաջ Աֆրիկայի հյուսիսը, որտեղ հիմնականում արաբներ են բնակվում, և կենտրոնական շրջաններն ու մասամբ արևադարձային Աֆրիկան։ Ինչ վերաբերում է հարավին, ապա այնտեղ ազգային-ազատագրական շարժումը բախվեց իմպերիալիզմի կատաղի դիմադրությանը։ Այդ պատճառով հարավի երկրների ժողովուրդների մեծ մասն առայժմ քաղաքական անկախության չի հասել։ Այստեղ Անգոլայի, Մոզամբիկի, Ռոդեզիայի, Հարավ-Արևմտյան Աֆրիկայի, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության ժողովուրդները պարտիզանական զինված պայքար են մղում պորտուգալական գաղութարարների և ռասիստական վարչակարգերի դեմ, որոնց հովանավորում են Արևմուտքի իմպերիալիստները։

Աֆրիկայի զարգացող երկրներին իմպերիալիստական տերությունները խիստ ճնշում են։ Գաղութային տիրապետությունը պահպանելու համար մղվող պայքարում պարտություն կրելով Աֆրիկայի մայր ցամաքի մեծ մասում, իմպերիալիստները բռնեցին նեոգաղութատիրական եղանակներով Աֆրիկա ներթափանցելու ուղին։ Աֆրիկայի ժողովուրդների համար նեոգաղութատիրությունն այսօր առավել վտանգավոր է։ Նեոգաղութարարները ձգտում են պահպանել աֆրիկյան երկրների անկախության արտաքին տեսքը, միաժամանակ տնտեսության բնագավառում ապահովել իմպերիալիզմի իսկական տիրապետությունը։ Իրենց գերիշխանությունը պահպանելու համար նրանք դիմում են զանազան մեթոդների։ Նեոգաղութատիրությունը փորձում է նախ՝ ֆինանսապես ու տնտեսապես իրեն ենթարկել աֆրիկյան երկրներին։ ԱՄՆ-ի, ԳՖՀ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և կապիտալիստական այլ երկրների մոնոպոլիաները Աֆրիկայի տնտեսության մեջ ներդրել են ավելի քան քսան միլիարդ դոլար, որից երկու միլիարդը ներդրել են ԱՄՆ-ը։ Իմպերիալիստներն իրենց կապիտալ ներդրումները հիմնականում կատարում են Հարավային Աֆրիկայում՝ Ռոդեզիայում և Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում։ Անգլիայի կապիտալ ներդրումներն այստեղ անցնում են երեք միլիարդ դոլարից, ԱՄՆ-ինը՝ ավելի քան մեկ միլիարդ է։

Աֆրիկան իր տնտեսական հնարավորություններով հարուստ աշխարհամաս է։ Այնտեղ կենտրոնացված են ոսկու, նավթի, բոքսիտների, պղնձի, կոբալտի, ուրանի և այլ մետաղների մեծ պաշարներ։ Մինչ բնակչությունը շատ աղքատ է։ Այդ աղքատության գլխավոր պատճառը անցյալում գաղութատիրությունն էր, իսկ այժմ՝ նեոգաղութատիրությունը։ Բավական է ասել, որ ողջ Աֆրիկայի արդյունաբերական արտադրանքը հավասար է Իտալիայի, իսկ կրկնակի չափով պակաս է Անգլիայի արդյունաբերական արտադրանքից։ Գաղութարարները շահագրգռված չեն եղել Աֆրիկայի ինդուստրացմամբ։ Նրանք խրախուսել են գյուղատնտեսության միակուլտուրային զարգացումը։

Այժմ Աֆրիկայի ազատագրված երկրների մեծամասնությունը տնտեսական կախման մեջ է մետրոպոլիաներից։ Այդ երկրների 82 տոկոսը առևտուր է անում կապիտալիստական երկրների հետ։ Ներքին չափազանց նեղ շուկաների պատճառով նրանք առանց արտաքին շուկաների չեն կարող գոյություն ունենալ։ Այդպիսով, կամա թե ակամա, տնտեսական ու ֆինանսական կախման մեջ են կապիտալիստական երկրներից։ Նեոգաղութատերերը աֆրիկյան երկրների քաղաքական անկախությունը ճանաչել են միայն այն պայմանով, որ այնտեղ տնտեսական զարգացումը սահմանափակված լինի նեղ շրջանակներում և գտնվի նեոգաղութատիրության վերահսկողության ներքո։ Իմպերիալիստներն այդ երկրներից պահանջում են, որ նրանց տնտեսական զարգացումը չնա-

խատեսի երկրի ինդուստրացում, չստեղծվի ծանր արդյունաբերություն։

Ի տարբերություն «դասական» գաղութատիրության, նեոգաղութատիրությունը թշնամական հարաբերությունների մեջ չէ աֆրիկյան բուրժուազիայի հետ։ Նեոգաղութարարները պատրաստ են ո՛չ միայն համագործակցել աֆրիկյան բուրժուազիայի հետ, այլև, որպես հեղափոխության թշնամական ուժ, աշխատում են ամրապնդել նրան։

Իմպերիալիստները հակահարձակման համար օգտագործում են նաև աֆրիկյան երկրների պահպանողական զինվորական շրջանները, նրանց զենք դարձնում ռեակցիայի ձեռքին։ Շատ սպաներ ռազմական պատրաստություն են անցել Արևմտյան երկրների զինվորական ուսումնական հաստատություններում։ Աֆրիկյան սպայակույտի վերնախավը կապված է Արևմուտքի հետ, կաշառված նրանից և անտարբեր է ժողովրդական զանգվածների շահերի նկատմամբ։ Փաստերը վկայում են, որ ազգային-ազատագրական շարժման առաջին փուլում, երբ քաղաքական անկախություն նվաճելու համար պայքար էր մղվում Աֆրիկայի շատ երկրներում, բանակը առաջադիմական դեր էր խաղում. իսկ այժմ այն մի քանի երկրներում հանդես է գալիս որպես առաջադիմական զարգացումն արագացնող ուժ։ Մինչդեռ, ազգային-ազատագրական շարժման երկրորդ փուլում, երբ լուծվում են գլխավորապես սոցիալ-տնտեսական կարգի պրոբլեմներ, մի շարք երկրներում բանակները համակվեցին պահպանողական հայացքներով։ Այդտեղ ստեղծվեց ռազմա-բյուրոկրատական բուրժուազիայի մի պորտաբույծ խավ, որը զենք է դառնում ռեակցիայի ձեռքին։ Ռեակցիոն տրամադրություններ ունեցող այդ սպաների օգնությամբ նեոգաղութարարներին հաջողվեց ռազմա-բռնատիրական վարչակարգեր հաստատել Աֆրիկայի մի շարք երկրներում։

Ներկայումս զինվորական վարչակարգեր կան Աֆրիկայի 11 պետություններում։ Այդ երկրներում բնակվում է 100 միլիոն մարդ, այսինքն՝ բնակչության մեկ երրորդը։ Նրանց տերիտորիան ավելի քան յոթ միլիոն քառակուսի մետր է, որը հավասար է Աֆրիկայի աշխարհամասի տերիտորիայի մեկ քառորդին։ Ժամանակակից Աֆրիկան բաժանված է մեծ թվով անկախ պետությունների միջև։ Այդտեղ տակավին պահպանվում են բազմաթիվ գաղութներ ու պրոտեկտորատներ։ Աֆրիկյան մայր ցամաքի քաղաքական քարտեզի բնորոշ գծերից մեկը քաղաքական մասնատվածությունն է, փոքր տարածություն և հատկապես քիչ բնակչություն ունեցող երկրների առատությունը։ Այնտեղ 25 երկրներից յուրաքանչյուրի բնակչությունը հինգ միլիոնից պակաս է, իսկ 13 երկրում՝ նույնիսկ մեկ միլիոնից է պակաս։ Հեռանալով Աֆրիկայից, գաղութարարներն ամեն ինչ արին, որպեսզի հավերժացնեն անկենսունակ և միմյանց հետ մրցակցող տերիտորիալ մանր կազմավորումների գոյությունը։ Անկախ Աֆրիկայի քարտեզի վրա դրանց երևան գալը իմպերիալիզմի կանխամտածված ու չարամիտ քաղաքականության արգասիքն է։

Աֆրիկայի բաժանումը, որ կատարվեց քաղաքական անկախություն տրամադրելու նախօրեին, վաղօրոք կշռադատված քայլ էր և նպատակ ուներ թուլացնել ազատագրվող երկրների տնտեսական ու քաղաքական ուժերը։ Մասնատման հետևանքներից մեկը եղավ ցեղերին պետական սահմաններով բաժանելը։ Ութ միլիոնանոց ֆուլբե ժողովուրդը սփռված է աֆրիկյան տասը երկրներում։ Մանդինգո ժողովուրդը, որ նույնպես մի քանի միլիոն է, բնակվում է յոթ երկրներում, հաուսա ժողովուրդը՝ ութ, մոսի ցեղը՝ չորս և այլն։ Այս ամենը հաստատում է, որ աֆրիկյան պետությունների քաղաքական և էթնիկական սահմանները բնավ չեն համընկնում։ Ազգային-ազատագրական պայքարից ծնունդ առավ տեղային և տերիտորիալ նացիոնալիզմը։ Տեղային նացիոնալիզմը սաստկացավ հատկապես անկախ պետությունների առաջացումից հետո։ Աֆրիկյան երկրների միջև ծագող տերիտորիալ և սահմանային կոնֆլիկտների պատճառներից մեկը տրայբալիզմն է՝ ցեղային մեկուսացման ձգտումը և նեղ, ռեգիոնալ շահերի պաշտպանությունը՝ ի վնաս ազգային միասնության։

Այս պատճառով տրայբալիզմը ավելի ու ավելի մեծ վտանգ է ներկայացնում աֆրիկյան միջպետական հարաբերությունների զարգացման ու ամրապնդման համար։ Դա Աֆրիկայի առաջադիմական ուժերին խանգարում է միասնության համար մղվող պայքարում և նպաստավոր հող է ստեղծում, որ իմպերիալիստական ուժերը միջամտեն տերիտորիալ կոնֆլիկտներին։ Նիգերիայում (Աֆրիկայի ամենախիտ բնակեցված երկրում) տեղի ունեցող պատերազմական գործողությունները դրա փայլուն օրինակն են։ Այդտեղ իմպերիալիզմի մեքենայությունների հետևանքով քաղաքացիական կռիվներ սկսվեցին Նիգերիայի արևելյան նահանգի անջատականների և մնացած մասի միջև։ Ինչպես հայտնի է, անջատականները ինքնակոչ կերպով իրենց հայտարարեցին ինքնուրույն պետություն, այն անվանելով Բիաֆրա։ Ընդդեմ Նիգերիայի օրինական կառավարության, իմպերիալիստներն այդտեղ պաշտպանում են անջատականներին։ Այդ է պատճառը, որ տրայբալիզմը գործիք է դառնում Աֆրիկայի մայր ցամաքի քաղաքական մասնատվածությունը շարունակելու համար։



Կուսակցության XXIII համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ նշված է, որ ամենուրեք, որտեղ հնարավոր է, իմպերիալիստները փորձում են չարաշահել ազատագրված երկրների ներքին հակասությունները։ Նրանք ընդհարումներ են հրահրում հասարակական, ազգային և ցեղային առանձին խմբերի միջև, ձգտում են միմյանց հակադրել տարբեր քաղաքական գործիչների, իշխանության գլուխ կանգնեցնել առավել ռեակցիոն և ծախու շրջանների ներկայացուցիչներին, որոնց բարեկեցությունը խարսխվում է օտարերկրյա կապիտալի հետ ունեցած կապերի ու համագործակցության վրա։

Ներկայումս անկախություն նվաճած աֆրիկյան բոլոր երկրները մեծ դժվարությունների են հանդիպել։

Հասարակական հարաբերությունների ծայրահեղ հետամնացությունը, սոցիալական շերտավորման թուլությունը, ազատագրական շարժման հիմնական ուժի՝ գյուղացիության, քաղաքական հետամնացությունը, քաղաքական մի շարք կուսակցությունների ու գործիչների անբավարար կազմակերպվածությունն ու գաղափարապես հասունացած չլինելը, ցեղային անջատվածությունը և միջցեղային պայքարի առկայությունը, ինչպես նաև միջաֆրիկյան տնտեսական կապերի թույլ զարգացումը, անկախ երկրներում գոյություն ունեցող քաղաքական անկայունությունը՝ այս ամենը դժվարացնում է աֆրիկյան մայր ցամաքի ժողովուրդների հակաիմպերիալիստական, հակագաղութային և հականեոգաղութային համատեղ պայքարը։ Այս դժվարություններից և ներքին թուլություններից օգտվում են իմպերիալիստները։ Նրանք ուզում են Աֆրիկան պահել բաժանված ու մասնատված վիճակում, փորձում «սպիտակամորթ» արաբական Աֆրիկան հակադրել սևամորթ արևադարձային Աֆրիկային, բախումներ առաջ բերել աֆրիկյան պետությունների միջև, խանգարել անկախ պետությունների տնտեսական ու քաղաքական զարգացմանը։

Այս պայմաններում հիմնական համաաֆրիկյան պրոբլեմը դարձավ Աֆրիկայի միասնության պրոբլեմ։ Պակաս կարևոր համաաֆրիկյան պրոբլեմ չէ այն տերիտորիաների ու ժողովուրդների ազատագրումը, որոնք տակավին գտնվում են գաղութային ու ռասիստական վարչակարգերի իշխանության ներքո։

Այս պրոբլեմի լուծման համար տակավին 1963 թ. մայիսի 25-ին ստեղծվեց Աֆրիկյան միասնության կազմակերպություն։ Անկախ պետությունների ու կառավարությունների ղեկավարները, Ադիս-Աբեբայում հավաքվելով Աֆրիկայի տանը, որոշեցին իրենց բոլոր ջանքերն ուղղել միասնության, ազատության և առաջադիմության պայքարին։ Նրանք, ելնելով գաղութատիրության և իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի շահերից, հաշվի չառնելով աֆրիկյան երկրներում գոյություն ունեցող սոցիալական ու քաղաքական տարբեր վարչակարգերը, որոշեցին համատեղ մշակել և կենսագործել քաղաքական ու տնտեսական համաձայնեցված միջոցառումները։

Աֆրիկյան միասնության կազմակերպությունը շատ բան է արել աֆրիկյան երկրների համախմբման և միասնության գործում։ Ահա թե ինչու իմպերիալիստները, ինչպես կրակից, վախենում են այդ կազմակերպության գործունեությունից և վերջերս, դաշինքի մեջ մտնելով աֆրիկյան շատ երկրներում գլուխ բարձրացրած ներքին ռեակցիայի հետ, փորձում են խարխլել աֆրիկյան ժողովուրդների միասնությունը։

Բայց Աֆրիկան պայքարում, համախմբում է իր ուժերը։ 1969 թ. հունվարի 18—20-ը Սուդանի մայրաքաղաք Խարթումում տեղի ունեցավ գաղութատիրության և ռասիզմի դեմ պայքարող Հարավային Աֆրիկայի և պորտուգալական գաղութների ժողովուրդների միջազգային կոնֆերանս։

Կոնֆերանսն արտահայտվեց Աֆրիկայի բոլոր առաջադիմական և դեմոկրատական ուժերի միասնության օգտին։ Այնտեղ գաղութարարների դեմ զայրալից ճառով հանդես եկավ Աֆրիկայի ազգային-ազատագրական շարժման ականավոր ղեկավար, Մոզամբիկի ազատագրության ճակատի նախագահ դոկտոր Էդուարդ Մոնդլանեն, որն օրերս սպանվեց Պորտուգալիայի Պիդել գաղտնի ոստիկանության գործակալների կողմից։

Խարթումի կոնֆերանսը գաղութատիրության դեմ ուղղված մի մահավճիռ էր, այն միահամուռ կերպով արտահայտվեց իր ազգային անկախության համար պայքարող Հարավային Աֆրիկայի ժողովուրդներին գործնական աջակցություն ցույց տալու օգտին։

Աֆրիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը զարգանում է անհամաչափ, հաղթահարելով մեծ դժվարություններ։ Սակայն աֆրիկյան ժողովուրդներն իրենց արդար պայքարի ընթացքում ինչպիսի ժամանակավոր դժվարություններ, անհաջողություններ էլ ունենան, միևնույն է, իմպերիալիզմից, գաղութատիրությունից ու նեոգաղութատիրությունից մայր ցամաքի լիակատար ազատագրումն անդառնալի պրոցես է և նրանց պայքարին իրենց համերաշխությունն են արտահայտում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, բանվորական ու կոմունիստական կուսակցությունները, աշխարհի բոլոր առաջադեմ մարդիկ։




# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՈՃԸ

Խ. Հ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

*Մեր լայնածավալ երկիրը, սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը խոր ակնածանքով նախապատրաստվում են նշելու պրոլետարիատի մեծ առաջնորդ, սովետական բազմազգ պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։ Որքան մոտենում է այդ նվիրական տարելիցը, այնքան ավելի մեծ թափ է ընդունում աշխատավորության մեջ ծավալված սոցիալիստական մրցությունը։*

*Առաջնորդի հարյուրամյակը սովորական հոբելյան չէ։ Այն քաղաքական ու տնտեսական նշանակություն ունեցող երևույթ է, բացառիկ իրադարձություն գաղափարական կյանքում։ Լենինյան ժառանգության կենսագործումը մեր սրբազան պարտքն է, պայքարի ու գործունեության բովանդակությունը։*

* * *

*Աշխատանքի լենինյան ոճը, պետության կառավարման սկզբունքներն առաջնորդի պրակտիկ գործունեության մարմնացումն են, գործի ու խոսքի միասնությունը։ Նոր կյանքի կառուցումը դժվար և աննախադեպ գործ էր, որի կենսագործումը պահանջեց հսկայական եռանդ, ստեղծագործական խիզախումներ։ Լենինը քաջ գիտակցում էր, որ ամենօրյա քրտնաջան աշխատանքը, մասսայական փորձի հաշվառումն ու կիրառումը, կառավարման գիտական կազմակերպումն անհրաժեշտ գործոններ են սոցիալիստական հասարակարգի կերտման համար։ Սոցիալիստական պրակտիկայի ոլորտներից է սովետական ապարատը, որի կանոնավոր ու հստակ գործունեության լավագույն պայմանը Լենինը համարում էր աշխատանքի ճիշտ բաժանումը, կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը, դիմազրկության վերացումը։ Հիմնարկությունը մեծ է, թե փոքր, պաշտոնավարը՝ շարքային, թե ղեկավար, պետք է իմանա իր պարտականությունները, անելիքները։ Առանց այդ տարրական պահանջի ճշգրիտ կիրառման՝ հնարավոր չէ տվյալ հիմնարկությունում ստեղծել կարգ ու կանոն։ Ղեկավարման նախադրյալներից են՝ կառավարելու հմտությունը, կուլտուրան։*

«Կառավարական բոլոր հարցերի կոլեգիալ քննությանն ու վճռմանը սովետական հիմնարկություններում,— *գրել է Լենինը*,— պետք է հարակցի սովետական ամեն մի պաշտոնի մեջ գտնվող անձերից ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ամենաճշգրիտ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ սահմանումը, պատասխանատվություն պարզ ու աներկմտելի գծված ՈՐՈՇ առաջադրությունների և ՊՐԱԿՏԻԿ աշխատանքների ԿԱՏԱՐՄԱՆ համար» *(Երկեր, հ. 28, էջ 448)։*

*Տարիներ են անցել։ Բանվորների, գյուղացիների շարքերում աճել են երկրի հասարակական ու տնտեսական կյանքի տարբեր բնագավառները կառավարելու ունակ կադրեր։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության անդուլ ջանքերի շնորհիվ ստեղծված է իսկական ժողովրդական ինտելիգենցիա։ Կուսակցությունը և կառավարությունը հետևողականորեն պարզեցնում ու կատարելագործում են պետական ապարատը, ղեկավար աշխատողներին դաստիարակում ժողովրդի հանդեպ մեծագույն պատասխանատվության ոգով։*

*Հիմնարկության, ձեռնարկության հստակ աշխատանքի համար հսկայական նշանակություն ունի ղեկավարի անձնական օրինակը։ Բոլոր տեսակի ճառերն անօգուտ են, եթե դրանք չեն զուգակցվում ղեկավար աշխատողի պրակտիկ գործունեությամբ։ Այժմ ավելի քան սուր են հնչում լենինյան այս խոսքերը։*

«Որպեսզի կառավարես, անհրաժեշտ է լինել ձեռնհաս, հարկավոր է լրիվ ճշգրտությամբ իմանալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է իմանալ այդ արտադրության տեխնիկան նրա ժամանակակից բարձրունքի վրա, հարկավոր է ունենալ որոշակի գիտական կրթություն»։

*Կարգապահության, ղեկավարման բարձր կուլտուրայի մարմնացում էր Իլյիչը։ Նա խստապահանջ էր, առաջին հերթին, իր և ապա մյուսների նկատմամբ։ Սահմանված ոչ մի կարգ նա չէր խախտում, նրա անզուգական կերպարը բնորոշող բազմաթիվ փաստեր կան։ Մի անգամ Իլյիչը մոռանում է վերցնել մի փաստաթուղթ, մինչև վերադառնում է, պահակն արդեն փոխված է լինում. նա չճանաչելով Լենինին, թույլ չի տալիս ներս մտնել։ Իլյիչն առանց խոսքի իջնում է պարետատուն, անցաթուղթ վերցնում և մտնում իր աշխատասենյակը։ Երբ այդ մասին իմանում է Կրեմլի պահակապետը, բարկանում է հերթապահ կարմիրբանակայինի վրա. վերջինս գալիս է Լենինից ներողություն խնդրելու։ Ներողություն խնդրելու հարկ չկա,— ասում է Լենինը,— ինքս եմ մեղավոր անցաթուղթ չունենալու համար։*

*Լենինը թանկ էր գնահատում ո՛չ միայն իր, այլև ուրիշների ժամանակը։ Երբ պայմանավորվում էր ընդունել մեկին, անպայման ընդունում էր ճիշտ ժամին, իսկ եթե այս կամ այն պատճառով հնարավոր չէր լինում, անձամբ զանգահարում էր, զգուշացնում, որ ընդունել չի կարող և նշանակում էր նոր ժամ։ Նա տանել չէր կարողանում, երբ մարդիկ ժողովրդական կոմիսարների խորհրդում երկար սպասում էին իրենց հարցերը լուծելու համար։ 1921 թ. հոկտեմբերի 13-ին Ժողկոմսովետի և ԱՊԽ-ի գործերի կառավարչին Լենինը գրում էր, որ «զեկուցողները հրավեր են ստանում ընդհանրապես նիստի համար և ժամերով սպասում են»։*

*Դա անկուլտուրականություն է։ Նա պահանջում էր սահմանել այնպիսի կարգ, որ «զեկուցողները կանչվեն որոշակի ժամի» և* «15 րոպեից ավելի չըսպասեն»:

*Մի այլ առիթով, 1919 թ. Վ. Ի. Լենինը արդարադատության ժողկոմ ընկ. Դ. Կուրսկուն գրում է՝*

«Ժամանակն է հաստատել ժողկոմխորհրդի նիստերի բնդհանուր ռեգլամենտ».

1) Զեկուցողներին 10 րոպե.
2) Ելույթ ունեցողներին առաջին անգամ 5, երկրորդ անգամ 3 րոպե.
3) Խոսել 2 անգամից ոչ ավելի.

4) Ըստ կարգի. կողմ՝ 1 մարդ, դեմ՝ 1 մարդ, մեկական ռուպե» (Ленинский сборник, т. XXIV, стр. 301)։

*Բյուրոկրատիզմը, քաշքշուկը, գործի նկատմամբ անպատասխանատվությունն ու անտարբերությունը մեր առաջընթացի խոչընդոտներն են։ Այդ չարիքների դեմ մեր կուսակցությունը տարել ու տանում է հետևողական պայքար։ Թերևս ոչ-ոք այնքան խիստ ու անողոք չի եղել բյուրոկրատիզմի նկատմամբ, ինչպես Լենինը։ Նա պահանջում էր, որ քաշքշուկի դեմ տարվող պայքարը լինի հետևողական, անզիջում, նպատակասլաց։ Լենինը ոչ-ոքի չէր խնայում, երբ հարցը վերաբերում էր քաշքշուկին, բյուրոկրատիզմին, անկարգապահությանը, առհասարակ անօրինականությանը։ Շատ ուսանելի է հետևյալ փաստը։*

*Վոլխովի հիդրոէլեկտրակայանի շինարարության գլխավոր ինժեներ, պրոֆեսոր Գ. Օ. Գրաֆտիոն գրավոր դիմել էր արդարադատության ժողկոմատին, որ մի շարք հիմնարկություններ բյուրոկրատական վերաբերմունք ունեն Վոլխովստրոյի նկատմամբ։ Արդարադատության ժողկոմատը լրջորեն չէր վերաբերվել դիմումին։ Լենինը, իմանալով այդ գրեց.*

«Իմ տպավորությունն այն է, որ արդժողկոմատը այդ հարցին վերաբերվում է զուտ ձևականորեն, այսինքն՝ արմատապես սխալ:

Հարկավոր է՝

1) այդ գործը մտցնել դատարան.

2) շշպռել մեղավորներին և՛ մամուլում, և՛ խիստ պատժով.

3) դատավորներին ձգել Կենտկոմի միջոցով, որպեսզի քաշքշուկի համար պատժեն ավելի խիստ.

4) կազմակերպել Մոսկվայի ժողովրդական դատավորների, տրիբունալների անդամների և այլն խորհրդակցություն՝ քաշքշուկի դեմ պայքարելու ՀԱՋՈՂ միջոցառումներ մշակելու համար» (*Երկեր, հ. 35, էջ 561*)։

*Մի ուրիշ անգամ, երբ Վ. Ի. Լենինն իմացավ, որ պահեստներում տարիներ շարունակ ընկած են և չեն օգտագործվում արտասահմանից բերված մեքենաները, զայրացավ ու կարգադրեց գտնել մեղավորներին ու դատի տալ։*

*Վ. Ի. Լենինը խստապահանջության հետ միասին, վերին աստիճանի հոգատար էր աշխատակիցների նկատմամբ։ Նա չէր սպասում, որ կարիք ունեցող ընկերները դիմեն իրեն, խնդրեն։ Իսկ երբ մեկը օգնության կարիք ուներ, նա օգնում էր այնպես, որ հաճախ չէին իմանում, թե օգնողը Լենինն է կամ ամեն ինչ արվել է նրա նախաձեռնությամբ։ Բնորոշ օրինակ է հետևյալ փաստը։*

*Նրան հայտնի էր, որ իր տեղակալ Ցյուրուպայի ընտանիքը կարիքի մեջ է։ Եվ ահա նա երկտող է գրում ԿԳԿ անդամներին։*

«Ցյուրուպան ստանում է 2000 ռուբլի, ընտանիքը 7 անձ է, ճաշն արժե 12 ռ. ( և ընթրիքը) օրական 84 · 39 = 2520 ռուբ.:

Չեն կշտանում: 4 ճաշ են վերցնում, դա քիչ է: Երեխաները պատանիներ են, նրանց ավելի է հարկավոր, քան մեծին:

Խնդրում եմ նրա ռոճիկն ավելացնել մինչև 4000 ռուբ. և բացի այդ, տալ 5000 ռուբ. միանվագ նպաստ նրա ընտանիքին, որն Ուֆայից եկել է առանց հագուստի»:

*Նորաստեղծ պետության մեծ հոգսերը չէին խանգարում, որ նա հետաքրքրվեր, իմանար ապարատի աշխատողների առողջության մասին։ Ահա լենինյան հոգատարությունը բնորոշող մի այլ փաստաթուղթ։*

«Ընկեր Ցյուրուպա.—

Դուք հիվանդի տեսք ունեք: Անհապաղ 2 ամսով գնացեք բուժման: Եթե չեք խոստանում այդ անել, կբողոքեմ Կենտկոմ:

Լենին, 1918, հուլիս»:

*Վ. Ի. Լենինի գրագրություններում պահպանվել է ևս մի փաստաթուղթ, որը դարձյալ վկայում է մեծ առաջնորդի հոգատարության ու մարդասիրության մասին։*



«Հեռագիր Ա. Դ. Ցյուրուպային

Բեռլին, շտապ, Ցյուրուպային

19 նոյեմբերի 1921 թ.

Պարտադիր, ճշգրիտ կատարեցեք պրոֆեսոր Կրաուսի կարգադրությունը: Լիովին ավարտեք բուժումը և բերեք ինձ այդ պրոֆեսորից գրավոր եզրակացություն և պատվեր առողջացողին:

ԺԿԽ-ի նախ. ԼԵՆԻՆ»:

*Այսպիսի հոգատարությամբ նա հետաքրքրվել է բոլորի հարցով։*

*Ահա մեկ ուրիշ փաստաթուղթ.*

«22 4. 1922

Ավանեսովին

«Իրո՞ք դուք գնում եք բուժման:

Ե՞րբ: Թե՞ նորից սարքած պետք է անեք: Չե՞ք ուզում բուժվել:

ԼԵՆԻՆ»:

*Սովետական պետության ստեղծումից հետո, առաջին տարիների փորձից ելնելով, Վ. Ի. Լենինը մշակեց պետական կառավարման սկզբունքները, նշեց պետական ապարատի զարգացման ու կատարելագործման ուղիները։*

*Վերջին ժամանակաշրջանում և հատկապես ՍՄԿԿ XX համագումարից հետո կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում պետական ապարատի աշխատանքի բարելավմանը։ Վերանայվեցին գերատեսչական-բյուրոկրատական բազմաթիվ հնացած ձևեր, կուսակցությունը վերականգնեց ու զարգացրեց պետական կառավարման լենինյան սկզբունքները։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարի բանաձևում ասված է. «Համագումարն ընդգծում է, որ կոմունիստական շինարարության խնդիրների հարաճուն մասշտաբներն ու բարդությունն ավելի բարձր պահանջներ են ներկայացնում կադրերի ընտրության, առաջքաշման ու դաստիարակման նկատմամբ։ Ղեկավար պոստերում պետք է առաջ քաշվեն այն աշխատողները, որոնք նվիրված են կոմունիզմի գաղափարներին, լավ գիտեն իրենց գործը, մշտապես կապված են մասսաների հետ, կարողանում են նրանց կազմակերպել առաջադրված խնդիրները լուծելու համար։ Հարկավոր է ավելի համարձակորեն առաջ քաշել երիտասարդ, եռանդուն աշխատողներին, նրանց եռանդը ճիշտ զուգորդել հին կադրերի փորձի հետ։ Սոցիալիստական տնտեսավարության նոր սիստեմին անցնելը ղեկավար կադրերին պարտավորեցնում է տիրապետել տնտեսական ղեկավարման մեթոդներին»* (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, *Երևան, 1967 թ., էջ 311*)։

*Լենինը բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ գործարար պայքարի միջոցներից էր համարում որոշումների կատարման ստուգումը։ Երբ ընդունվում է որոշում, այն պետք է անպայման կենսագործվի։ Դա ունի ո՛չ միայն տնտեսական, քաղաքական, այլև դաստիարակչական նշանակություն։ Եվ իսկապես, ի՞նչ կարող են սովորել երիտասարդ բանվորը, կոլտնտեսականը, մասնագետը, երբ մասնակցում են այն ժողովին, որի որոշումը չի իրականացվում։ Դա վնասում է կադրերի, հատկապես երիտասարդության դաստիարակությանը։ Տարվա սկզբին, որպես կանոն, գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում մեծ խանդավառությամբ պարտավորություններ են ընդունում։ Սակայն երբ ստուգվում են դրանց կատարման արդյունքները, հաճախ պարզվում է, որ մի մասը չի կատարվել։ Այն մարմինները, որոնք կոչված են սիստեմատիկաբար ստուգելու պարտավորությունների կատարման ընթացքը, անթերի չեն կատարում իրենց գործը։*

մասին հրապարակավ խոսելու առիթ է լինում, նրանք իրենց զայրույթն ու վրդովմունքն են հայտնում։ Չարիքի դեմ անհրաժեշտ է համաժողովրդական պայքար մղել։ Ոչ ոք իրավունք չունի անտարբեր մնալու, երբ խախտվում է սահմանված կարգը, ոտնահարվում են օրենքներն ու սոցիալիստական համակեցության կանոնները։

Մենք պետք է Լենինից սովորենք մարդկանց հետ աշխատելու հմտություն, հասարակական երևույթները զգաստ վերլուծելու, ճիշտ եզրակացություններ անելու հմտություն։ Դեռևս կան ձեռնարկությունների առանձին հրամանատարներ, որոնք միակողմանի են հասկանում միանձնյա ղեկավարության լենինյան սկզբունքը, այն դիտում են որպես վարչարարություն, հրամանների արձակում, արտադրությունը կառավարում՝ առանց բանվորների, մասնագետների, ծառայողների ակտիվ մասնակցության։

Վ. Ի. Լենինը չէր մեկուսանում աշխատակիցներից։ Ընկերների ու զինակիցների հիշողություններում շատ սրտառուչ տողեր կան նրա կարգասիրության մասին։ Մոսկվայի քաղաքային սովետի նիստերի ընդմիջումներին դեպուտատներից յուրաքանչյուրին տալիս էին մեկ բաժակ եռացրած ջուր և 100 գրամ սև հաց։ Դեպուտատները հերթում տեսնում են Լենինին։ Նրանցից մեկը մոտենում է և ասում՝ Վլադիմիր Իլյիչ, ինչո՞ւ եք հերթ կանգնել, ձեզ համար կբերեն։ Բայց նա պատասխանում է՝ ես էլ ձեզ նման դեպուտատ եմ, ոչ ավելի։

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից Լենինն անողոք պայքար մղեց կաշառակերության, պետական ունեցվածքը հափշտակողների և այլ չարիքների դեմ։ Նա հանրային բարիքը գողողներին համարում էր հեղափոխության թշնամիներ և պահանջում պատժել ոչ միայն կաշառակերներին, այլև այն դատավորներին, որոնք մեղմ որոշումներ էին ընդունում կաշառակերների նկատմամբ։

Պետական ապարատը ճկունացնելու, էժանացնելու և բարելավելու նպատակով անհրաժեշտ է մեր բոլոր քաղաքացիներին ակտիվ մասնակից դարձնել պետության կառավարմանը, զարգացնել հասարակական հիմունքներն աշխատանքում, միլիոնավոր նոր մարդիկ ներգրավել պետության կառավարման դպրոցը։ Բյուրոկրատիզմի, քաշքշուկի, չարաշահումների դեմ համաժողովրդական պայքար կազմակերպելու համար կարևոր նշանակություն ունեն ժողովրդական վերահսկողության լենինյան սկզբունքի կիրառումն ու զարգացումը։ Միայն վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ դրվածքը կօգնի պետական ղեկավարության կատարելագործմանը, կամրապնդի կուսակցության կապերը աշխատավորների հետ, նրանց լայնորեն կներգրավի հասարակության գործերի կառավարման ոլորտները։

Այսպիսով, Լենինի պետական գործունեության ոճը բնորոշվում է առավելագույն գործնականությամբ, հարցերի քննարկման ու լուծման կոնկրետությամբ, կարգադրությունների ու որոշումների կիրառման սիստեմատիկ ստուգմամբ, աշխատանքի հստակ բաժանմամբ և յուրաքանչյուր գործչի պատասխանատվության ու իրավասությունների սահմանմամբ և վերջապես՝ պետական օրգանների գործունեությանը միլիոնավոր աշխատավորների ներգրավմամբ և նրանց՝ կառավարման արվեստի ուսուցումով։

Այսպիսին էր աշխարհում առաջին սոցիալիստական պետության անմահ հիմնադրի՝ Վ. Ի. Լենինի պետական առօրյա գործունեության ոճը։

—•—

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ ՀԻՄՆԱԴԻՐ

**Հ. Խ. ԴԱՐԲԻՆՅԱՆ**

Պատմական գիտությունների թեկնածու

Հիսուն տարի է անցել այն պահից, երբ Վ. Ի. Լենինի, բոլշևիկների կուսակցության հսկայական ջանքերի գնով ծնունդ առավ III ինտերնացիոնալը, Մարքսի և Էնգելսի հեղափոխական ավանդների օրինական ժառանգորդը։ «Կապիտալը,— նշել է Վ. Ի. Լենինը,— միջազգային ուժ է։ Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն» (Երկեր, հ. 30, էջ 367)։

Նոր պայմաններում Լենինն առաջինը բարձրացրեց միջազգային օպորտունիզմի դեմ անհաշտ պայքարի դրոշը, մշակեց ու իրականացրեց նոր տիպի, պրոլետարական, կոմունիստական ինտերնացիոնալ ստեղծելու գաղափարը։

Հայտնի է, որ Էնգելսի մահից հետո II ինտերնացիոնալի օպորտունիստ լիդերները հեռացան հեղափոխական մարքսիզմի գլխավոր խնդրից՝ պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարից։ Նրանք առաջ էին քաշում ռեֆորմների միջոցով կապիտալիստական հասարակարգի «աստիճանական բարելավման» լոզունգը, ժխտում դասակարգային պայքարի, պրոլետարական հեղափոխության անհրաժեշտությունը։ Առաջին համաշխարհային պատերազմն արագացրեց II ինտերնացիոնալի պարտությունը։ Իր մի շարք հոդվածներում և առանձնապես Երկրորդ ինտերնացիոնալի կրախը հոդվածում Լենինը բացահայտեց դրա անկման պատճառները։ Նա ցույց տվեց օպորտունիզմի և իմպերիալիզմի կապը, նշեց, որ հեղափոխական մարքսիստական ուժերի համախմբման համար սոցիալ-շովինիզմի գաղափարական ջախջախումն անհրաժեշտ պայման է։ Այդ խնդիրն ուներ միջազգային նշանակություն, և դա լուծել կարող էին միայն բոլշևիկները։

Վ. Ի. Լենինը պատերազմի հենց առաջին օրերից սոցիալ-շովինիզմի և ցենտրիզմի գաղափարական ջախջախման հետ զուգընթաց, ձեռնամուխ եղավ ի մի բերելու ինտերնացիոնալիստական խմբերը։ Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար հարկավոր էր մշակել բոլշևիկների տակտիկական գիծը։ Պատերազմը և ռուսական սոցիալ-դեմոկրատիան ՌՍԴԲԿ ԿԿ-ի մանիֆեստում, որ գրել էր Վ. Ի. Լենինը, առաջ քաշվեց իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու, պատերազմում «սեփական» կառավարության պարտության, կապերը II ինտերնացիոնալից խզելու և նոր, III ինտերնացիոնալ ստեղծելու լոզունգները։ Կտրականապես մերժելով III ինտերնացիոնալ կազմակերպելու մտահղացումը, Վ. Ի. Լենինի հակառակորդները

հայտարարում էին, թե նա ջլատում է բանվոր դասակարգի ուժերը։ Այդ առթիվ Կրուպսկայան գրում էր. «Չի կարելի գործը ներկայացնել այնպես, թե Լենինը մտածում էր միայն այն մասին, թե ինչպես պառակտվել, ընդհակառակը... նա ավելի շատ մտածում էր ուժերի համախմբման մասին» (Исторический архив, № 2, 1960, стр. 173)։

Լենինյան այս լոզունգները լայն ընդունելություն գտան գերմանական (Սպարտակ), բուլղարական (տեսնյակներ), հոլանդական, անգլիական, իտալական, ամերիկյան, դանիական, շվեդական, շվեյցարական և այլ երկրների ձախ ինտերնացիոնալիստական խմբերի կողմից, որոնք սկզբնական շրջանում անհետևողական էին և նրանց վրա ակնհայտ էր ցենտրիզմի ազդեցությունը։ Դրանով են բացատրվում 1915 թ. տեղի ունեցած կանանց ու երիտասարդական կոնֆերանսներում դեռևս տիրապետող ցենտրիստական գաղափարները։

Կոնֆերանսները «...սահմանափակվեցին հին բանաձևերի կրկնությամբ, ցույց չտալով բանվորներին, որ սոցիալիզմի գործն անհուսալի է առանց սոցիալ-շովինիստների դեմ ուղղված պայքարի։ Դրանք լավագույն դեպքում եղել են տեղում արված քայլ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 413)։

Զարգացող իրադարձություններն անխուսափելի դարձրին միջազգային սոցիալիստական կոնֆերանսի հրավիրումը։ Այն գումարվեց շվեյցարական Ցիմմերվալդ գյուղում։ Կոնֆերանս հրավիրելու պաշտոնական առաջարկ արեց իտալական կուսակցությունը և նախաձեռնողի դերն ինքն ստանձնեց։ Կոնֆերանսի բացումից առաջ տեղի ունեցավ նախնական խորհրդակցություն։ Միաժամանակ, Վ. Ի. Լենինի խորհրդով, բոլշևիկ պատվիրակներն սկսեցին բանակցություններ վարել տարբեր երկրներից Ցիմմերվալդ ժամանած ձախերի հետ։

Լենինը կոնֆերանսի համար ձախերի ընդհանուր դեկլարացիայի նախագիծ էր մշակել։ Նա իր համախոհներից պահանջում էր հականախագծեր կազմել կամ ներկայացված նախագծում ուղղումներ մտցնել։ Դեկլարացիայի մշակման հետ մեկտեղ, Լենինն աշխատում էր, որ ձախերը կոնֆերանսում շատ ներկայացուցիչներ ունենան։

Այդպես էլ եղավ։ Ցիմմերվալդի առաջին և երկրորդ (Կինտալի) կոնֆերանսներում բոլշևիկների ձեռք բերած ամենամեծ նվաճումը «ձախ» խմբի ստեղծումն էր, որի մեջ մտան բանվոր դասակարգին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարիմ մնացած հեղափոխական մարքսիստները։ Խմբի ղեկավարը Վ. Ի. Լենինն էր։ Բոլշևիկները կոնֆերանսներն օգտագործեցին ոչ միայն նրա համար, որպեսզի բացահայտեն II ինտերնացիոնալի վարքագիծը, այլև կազմակերպեն ու միավորեն բոլոր ձախ տարրերին՝ իմպերիալիզմի և նրա կառավարությունների դեմ պայքարելու համար։ Միայն դրանով կարելի է բացատրել բոլշևիկների ակտիվ մասնակցությունը թե՛ կոնֆերանսներին, թե՛ դրանց նախապատրաստմանն ու բանաձևերի մշակմանը, ուր բոլշևիկներին հաջողվեց արձանագրել մարքսիստական մի շարք դրույթներ։

Մեծ չափերի հասավ դժգոհությունը շարունակվող պատերազմից. հեղափոխական հզոր շարժումներից վախեցած իմպերիալիստական պետությունների կառավարությունները հաշտություն կնքելու ուղիներ էին որոնում։

Քաղաքականության մեջ բուրժուազիայի կատարած շրջադարձի հետ միասին, ցիմմերվալդյան կոնֆերանսի մասնակիցների մեծամասնությունը (Ռ. Գրիմմ, Ա. Մերհեյմ, Ա. Բուրդերոն, Ֆ. Տուրատի և ուրիշներ) նույնպես պաշտպանեց իմպերիալիստների՝ հաշտություն կնքելու ցանկությունը, մոռանալով կոնֆերանսի որոշումները։ Սակայն ցիմմերվալդյան բլոկի կրախը բնավ սոցիալիստական շարժման կրախ չէր։ Ընդհակառակը, ինտերնացիոնալիստական շարժումը, Լենինի գլխավորությամբ, նոր կողմնակիցներ էր ձեռք բերում։ Այն նոր թափ ստացավ, որին մեծապես նպաստեց Ռուսաստանում տեղի ունեցած փետրվարյան հեղափոխությունը։ Բոլոր երկրներում ծավալվեցին հեղափոխական շարժումներ։ Իրականանում էր Լենինի և բոլշևիկների այն պնդումը, որ իմպերիալիստական պատերազմը կվերածվի քաղաքացիականի։

Ելնելով այն հանգամանքից, որ ցիմմերվալդյան մեծամասնությունը



գլորվել էր դեպի սոցիալ-պացիֆիզմը, անտեսում էր ընդունված որոշումները, որ հեղափոխական մարքսիստները բավական ուժեղացել էին, ի վիճակի էին ղեկավարել մասսաներին, Վ. Ի. Լենինը 1916 թ. վերջին, ապա փետրվարյան հեղափոխությունից հետո, ավելի վճռապես հարց դրեց դուրս գալ ցիմմերվալդյան բլոկից և անհապաղ ստեղծել նոր ինտերնացիոնալ, նշելով, որ այն փաստորեն արդեն գոյություն ունի, հանձին ցիմմերվալդյան «ձախի» (տե՛ս (ЦПАИМЛ при ЦК КПСС, ф. 17, оп. 14, д. 20624)։

Ցիմմերվալդյան մեծամասնության վարքագիծը մինչև վերջ մերկացնելու համար Լենինն անձամբ և արտասահմանում գտնվող բոլշևիկ գործիչների միջոցով, օգնում էր ձախ ինտերնացիոնալիստներին՝ հասկանալու իրենց խնդիրները, կապերը խզելու Ցիմմերվալդից և ստեղծելու ինքնուրույն հեղափոխական կուսակցություններ։ Այսպես, իմանալով, որ շվեդական ձախերը Ստոկհոլմում ստեղծելու են իրենց կուսակցությունը, Լենինը դիմում է այնտեղ գտնվող Կոլոնտային՝ նրանց օգնելու խնդրանքով. «...օգնել նրանց հասկանալու ցիմմերվալդյան մեծամասնության ամբողջ գարշելիությունը, օգնել նրանց մշակելու իրենց նոր կուսակցության համար լավ ծրագիր ու տակտիկա» (Երկեր, հ. 35, էջ 314)։

Ցիմմերվալդյան միավորումից դուրս գալու և նոր ինտերնացիոնալ ստեղծելու հարցը Վ. Ի. Լենինն ավելի որոշակիորեն դրեց Ապրիլյան հուշակավոր թեզիսներում և կուսակցության VII ապրիլյան կոնֆերանսում։ Նա ընդգծում էր, որ Ցիմմերվալդում պետք է մնալ միայն ինֆորմացիոն նպատակով և պետք է ստեղծել «...նոր, հեղափոխական, պրոլետարական ինտերնացիոնալ կամ ավելի շուտ՝ չվախենանք ի լուր ամենի խոստովանել, որ այն արդեն հիմնված է և գործում է» (Երկեր, հ. 24, էջ 82)։ Քննադատելով բանաձևը և կոնֆերանսի որոշումը, Լենինը գրում էր. «Մնալով Ցիմմերվալդում՝ մենք (թեկուզ և մեր կամքին հակառակ) մասնակցում ենք III ինտերնացիոնալի ստեղծման գործի ձգձգմանը. մենք կողմնակի կերպով արգելակում ենք նրա ստեղծումը, կաշկանդված լինելով իդեապես-քաղաքականապես արդեն մեռած Ցիմմերվալդի մեռած բեռով» (Երկեր, հ. 24, էջ 91)։

Ձախ սոցիալ-դեմոկրատների համախմբման և III ինտերնացիոնալի ստեղծման գործում կարևոր դեր խաղաց ՌՍԴԲԿ(բ) ԿԿ-ի արտասահմանյան բյուրոն, որը Լենինի նախաձեռնությամբ ստեղծվել էր 1917 թ. մարտի 30-ին (ապրիլի 13-ին)։ Բյուրոն Լենինի հանձնարարությամբ հրատարակում էր իր օրգանը, որի առաջին համարը լույս տեսավ 1917 թ. հունիսի 3-ին և կոչվեց «Russische Korespondens Pravda»։ Դրա նպատակն էր՝ «տպագրված փաստաթղթերի և սեփական թղթակցությունների հիման վրա եվրոպական սոցիալիստական մամուլին ծանոթացնել ռուսական հեղափոխության զարգացման, նրա պայքարի և աղբյուրների հետ» (ЦПА ИМЛ при ЦК КПСС, «Русский бюллетень Правды», № 1, 3 июля, 1917 г.), միջազգային պրոլետարիատին պայքարի հանել՝ հանուն ռուսական հեղափոխության պաշտպանության, նպաստել ձախ սոցիալ-դեմոկրատների համախմբման գործին։

Եվրոպայում հեղափոխական ճգնաժամի խորացման պայմաններում, 1917 թ. սեպտեմբերի 5—12-ը (օգոստոսի 23—30) Ստոկհոլմում տեղի ունեցավ Ցիմմերվալդյան III կոնֆերանսը, որտեղ ամենասուր բանավեճ ծագեց Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման հնարավորության հարցի շուրջ։ Մենշևիկ ինտերնացիոնալիստ Ե. Երմանսկին գտնում էր, որ սոցիալիզմի գաղափարը Ռուսաստանում գոյություն ունի միայն ուտոպիայի ձևով (տե՛ս Ерманский Е., Из пережитого, М., 1927, стр. 144, 172, 173)։ Նա առաջարկեց առայժմ պայքար մղել հաշտության և ոչ սոցիալիզմի համար, չհասկանալով, որ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմամբ հնարավորություն կընձեռվի նաև դեմոկրատական հաշտության համար։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր պայմաններ ստեղծեց միջազգային կոմունիստական շարժման զարգացման և III ինտերնացիոնալի ստեղծման համար։ Այն հսկայական չափով ազդեց բանվոր

դասակարգի հեղափոխական շարժման և ազգային-ազատագրական պայքարի հետագա զարգացման վրա։ Առանձնապես հեղափոխական բուռն իրադարձություններ տեղի ունեցան Գերմանիայում, Հունգարիայում, Բուլղարիայում, Իտալիայում, Ֆրանսիայում, Անգլիայում, ԱՄՆ-ում, Ռումինիայում, Լեհաստանում, գաղութային և կախյալ երկրներում։

Հոկտեմբերյան հեղափոխության և ծավալված միջազգային բանվորական շարժման ազդեցության ներքո, սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների ձախ խմբերը համախմբվում էին կոմունիստական կազմակերպությունների մեջ։ 1918 թ. ընթացքում կոմունիստական կուսակցություններ ստեղծվեցին Գերմանիայում, Հունգարիայում, Ֆինլանդիայում, Ավստրիայում, Լեհաստանում, Հոլանդիայում, Արգենտինայում։ Միջազգային պրոլետարիատի մեծագույն նվաճումներից մեկը Գերմանիայի կոմունիստական կուսակցության ստեղծումն էր։ Լենինն այդ առթիվ գրում է. «...երբ «Սպարտակ միությունը» իրեն անվանեց «Գերմանիայի կոմունիստական կուսակցություն»,— այն ժամանակ, իրոք պրոլետարական, իրոք, ինտերնացիոնալիստական, իրոք հեղափոխական III ինտերնացիոնալի, կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադրումը դարձավ փաստ» (Երկեր, հ. 28, էջ 559)։

Հոկտեմբերյան հեղափոխությունը և կոմինտերնի I կոնգրեսի հրավիրման նախապատրաստությունն անհանգստացրին սոցիալ-շովինիստներին և ցենտրիստներին։ Նրանք ձգտում էին արագացնել միջազգային սոցիալիստական կոնֆերանսի հրավիրումը՝ ցանկանալով հարություն տալ կրախի մատնված II ինտերնացիոնալին։ Անգլիայի բանվորական կուսակցությունը 1918 թ. դեկտեմբերին դիմեց բոլոր սոցիալիստական կուսակցություններին, առաջարկելով 1919 թ. հունվարի 6-ին Լոնդոնում հրավիրել միջազգային սոցիալիստական կոնֆերանս։

Սակայն մինչ այդ ՌԿ(բ)Կ-ն արդեն ձեռնամուխ էր եղել ձախերի միջազգային կոնֆերանս հրավիրելու գործին։ Արդեն 1918 թ. հունվարի 4-ին (1917 թ. դեկտեմբերի 22-ին) սովետների համառուսական գործադիր կոմիտեն որոշեց պատվիրակություն ուղարկել արտասահման՝ ձախ ինտերնացիոնալիստների հետ բանակցելու և ձախերի միջազգային կոնֆերանս հրավիրելու համար։ Սակայն Ռուսաստանի ռազմական բլոկադայի պատճառով պատվիրակությանը չհաջողվեց արտասահման մեկնել, և կոնֆերանսը չկայացավ։ Այնուհանդերձ, նույն թվականի հունվարի 24-ին ՌԿ(բ)Կ ԿԿ-ի նախաձեռնությամբ տեղի ունեցավ նախնական խորհրդակցություն, որտեղ քննարկվեց III ինտերնացիոնալի ստեղծման հարցը, այն իրագործելու միջոցներն ու խնդիրները։ Խորհրդակցությանը մասնակցում էին ՌԿ(բ)Կ ԿԿ-ի ներկայացուցիչ Ի. Վ. Ստալինը, ձախ էսեռներ Մ. Նաթանսոնը և Ա. Ուստինովը, շվեդական ձախերի (Կ. Խեգլունդ, Կ. Գրիմվուլդ), Լեհաստանի և Լիտվայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության օպոզիցիայի (Յա. Դոլեցկի), Հարավսլավիայի ձախ ինտերնացիոնալիստների (Մ. Ռադոշևիչ), Հայաստանի կոմունիստական կուսակցության (Գ. Հայկունի), Ռումինիայի սոցիալ-դեմոկրատական (Մ. Գ. Բոժուր) և այլ կուսակցությունների ներկայացուցիչներ (տե՛ս «Правда», №23, 12 февраля 1918 (30 января))։ Խորհրդակցությունը որոշեց հրավիրել միջազգային սոցիալիստական կոնֆերանս, որին կարող էին մասնակցել այն կուսակցություններն ու կազմակերպությունները, որոնք հավատարիմ էին մնացել պրոլետարական ինտերնացիոնալիզմին։

Երկրորդ ինտերնացիոնալի վերականգնման հույսերը չէին կորցնում սոցիալ-շովինիստները։ Չնայած Լոզանում նախատեսվող կոնֆերանսը չկայացավ, սակայն 1918 թ. փետրվարի 3-ին Բեռնում տեղի ունեցավ միջազգային սոցիալիստական կոնֆերանս, որի նպատակն էր ստեղծել մի կազմակերպություն, որն ի վիճակի լիներ պրոլետարիատին հեռու պահել հեղափոխական պայքարից։ Կոնֆերանսի գլխավոր հարցը «ռուսական հարցն» էր, ավելի ճիշտ բոլշևիզմի դեմ պայքարելու մեթոդների և ուղիների, բոլշևիզմի «վտանգի» առաջն առնելու հարցը։ Ֆրանսիական պատվիրակության մի մասը ինտերնացիոնալիստ Լորիոյի գլխավորությամբ վճռականապես քննարկման դեմ արտահայտվեց։ Բանավեճն ավարտվեց ինտերնացիոնալիստների հաղթանակով։ Ապարդյուն անցան է. Բեռնշտայնի և Կ. Կաուցկու փորձերը, որոնք



ջանում էին հավաստիացնել կոնֆերանսի մասնակիցներին, թե բոլշևիզմը «կարմիր միլիտարիզմ է», և «մենք պետք է կտրականապես դատապարտենք սովետական իշխանությունը և սովետական հեղափոխությունը, որովհետև այլ կերպ մենք կկորցնենք մասսաների մեջ մեր ունեցած մեծ հեղինակությունը» (մեջբերումն ըստ Протоколы VIII съезд РКП(б), М., 1958, стр. 133)։

Կոնֆերանսին չհաջողվեց բոլշևիզմը դատապարտող որևէ որոշում ընդունել, այն ձևականորեն վերականգնեց II ինտերնացիոնալը, ստեղծեց, այսպես կոչված՝ «Բեռնի ինտերնացիոնալ»։

Եթե սոցիալ-շովինիստների և ցենտրիստների ջանքերն ապարդյուն անցան, ապա միջազգային կոմունիստական ուժերի համախմբման ուղղությամբ ՌԿ(բ)Կ-ի մղած պայքարը գնալով նոր հաջողություններ էր ձեռք բերում։

1918 թ. դեկտեմբերի 24-ին ՌԿ(բ)Կ ԿԿ ռադիոհեռագրով դիմեց բոլոր նրանց, ովքեր կանգնած են III ինտերնացիոնալի պլատֆորմի վրա, կոչ անելով՝ չմասնակցել բանվոր դասակարգի թշնամիների կոնֆերանսներին, որոնք թաքնվում են սոցիալիզմի քողի տակ, և միավորվել «արդեն փաստորեն ստեղծված III ինտերնացիոնալի շուրջը», որն իր առաջ դնում է բանվոր դասակարգի կողմից «իշխանության նվաճման հարցը» («Правда», № 281, 25 декабря, 1918 г.)։

Գ. Վ. Չիչերինին գրած նամակում (1918 թ. վերջերին) Լենինը նախատեսում էր 1919 թ. փետրվարի 1-ին հրավիրել ձախերի միջազգային կոնֆերանս։ Նա գտնում էր, որ անհրաժեշտ է մերձենալ միայն այնպիսի կուսակցությունների ու խմբերի հետ, որոնք արդեն կանգնած են III ինտերնացիոնալի պլատֆորմի վրա, մոտ են դրան և կարող են միանալ ինտերնացիոնալին՝ արդեն «մշակված պլատֆորմի հիման վրա» («Вопросы истории КПСС», № 4, 1957, стр. 270)։

1919 թ. հունվարի 21-ին տեղի ունեցավ ձախերի նոր խորհրդակցություն, որին մասնակցեցին ՌԿ(բ)Կ, Հունգարիայի, Լեհաստանի, Գերմանիայի, Ֆինլանդիայի կոմկուսակցությունների, Բալկանյան ֆեդերացիայի, Ամերիկայի սոցիալիստական բանվորական կուսակցության ներկայացուցիչները։ Դրան մասնակցում էր նաև Հայաստանի կոմկուսակցության ներկայացուցիչ Գ. Հայկունին։ Խորհրդակցությունը մշակեց նոր ինտերնացիոնալի կազմակերպական հիմքերը և Վ. Ի. Լենինի առաջարկությամբ դիմեց արտասահմանյան բոլոր հեղափոխական կուսակցություններին, խմբերին ու կազմակերպություններին՝ առաջարկելով նրանց ակտիվ մասնակցել III ինտերնացիոնալի I համագումարին։

Խորհրդակցությունից մի փոքր անց Մոսկվա ժամանեցին եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչները։ 1919 թ. մարտի 2-ին Մոսկվայում, Կրեմլում իր նիստերն սկսեց III ինտերնացիոնալի հիմնադիր կոնգրեսը։ Կոնգրեսին մասնակցում էին 21 երկրների 52 պատվիրակ։ Ռուսաստանի ռազմական բլոկադայի հետևանքով շատերին չհաջողվեց Մոսկվա գալ։

Կոնգրեսը, ամենից առաջ, քննարկեց կոմինտերնի ստեղծման հարցը։ ՌԿ(բ)Կ-ի, Ֆինլանդիայի, Հունգարիայի, Ավստրիայի և այլ կազմակերպությունների ներկայացուցիչները գտնում էին, որ Կոմինտերնի ստեղծման համար ժամանակը լիովին հասունացել է։ Հակառակ կարծիքի էր Գերմանիայի կոմկուսի ներկայացուցիչ Գ. Էբերլեյնը (Ալբերտը)։ ՌԿ(բ)Կ-ի պատվիրակությունը հայտարարեց. քանի որ ԳԿԿ-ը կոմինտերնի ստեղծմանը դեմ է, ապա կոնգրեսը պետք է շարունակել որպես միջազգային սոցիալիստական կոնֆերանս։ Նոր պատվիրակների ժամանումով այդ հարցը նորից բարձրացվեց, և մարտի 4-ին կոնֆերանսն իր նիստերը շարունակեց որպես կոմինտերնի հիմնադիր կոնգրես։

Կոմինտերնի առաջին կոնգրեսի նիստերին վճռական ձայնի իրավունքով մասնակցում էր Հայաստանի կոմունիստական կուսակցության ներկայացուցիչ Գ. Հայկունին։ Նիստերի դահլիճում ռուսերեն և այլ լեզուներով գրված ողջույնի լոզունգներում կար նաև «Կեցցե՛ III կոմունիստական ինտերնացիոնալը» հայերեն լոզունգը։ Հայկունին կոնգրեսին ներկայացրած գրավոր զեկուցագրում (տե՛ս «Правда», 11 марта, 1919 г.) վերլուծում էր Հոկտեմբերի հաղթանակից հետո Անդրկովկասում ստեղծված իրադրությունը,

մերկացնում մենշևիկների, դաշնակցականների և մուսավաթիստների հակահեղափոխական, դավաճանական քաղաքականությունը։

Կոնգրեսում քննարկված բազմաթիվ կարևոր հարցերից էին՝ կոմինտերնի պլատֆորմի հարցը և բուրժուական դեմոկրատիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ Լենինի զեկուցումը։ Դա լիովին հասկանալի էր։ Ամեն երանգի օպորտունիստները, հանձինս Կ. Կաուցկու, Հ. Կունովի, Ռ. Հիլֆերդինգի, Օ. Բաուերի, է. Վանդերվելդեի, ամենակատաղի հարձակումներ էին գործում պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարի դեմ, թմբկահարում բուրժուական «զուտ» դեմոկրատիայի «առավելությունները»։ Լենինն իր զեկուցման մեջ բացահայտեց նրանց բոլորի հայացքները, ցույց տվեց, որ «Պրոլետարական դեմոկրատիան միլիոն անգամ ավելի դեմոկրատիկ է ամեն մի բուրժուական դեմոկրատիայից,— սովետական իշխանությունը միլիոն անգամ ավելի դեմոկրատիկ է ամենադեմոկրատական բուրժուական հանրապետությունից» (Երկեր, հ. 28, էջ 311)։

Պրոլետարիատի դիկտատուրան սկզբունքորեն նոր տիպի պետություն է, կոմունիստական հասարակության կառուցման գլխավոր զենքը։ Այն կոչված է ճնշելու տապալված դասակարգերի դիմադրությունը, կազմակերպելու սոցիալիզմի կառուցումը։

Վ. Ի. Լենինի թեզիսները բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ միջազգային պրոլետարիատի և նրա ավանգարդի՝ կոմկուսակցությունների համար հեղափոխական հսկայական նշանակություն ունեցան։ Այն խոշոր հարված էր բուրժուական «զուտ» դեմոկրատիայի վերաբերյալ ռեֆորմիստների և օպորտունիստների գաղափարախոսությանը։

Կոմինտերնի առաջին կոնգրեսն ընտրեց ղեկավար օրգաններ, գործկոմ և բյուրո։ Կոմինտերնն անվանվեց միջազգային կոմունիստական կուսակցություն, հեղափոխական պրոլետարիատի մարտական շտաբ։

* * *

Կոմունիստական ինտերնացիոնալի ստեղծումը խոշոր երևույթ էր միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման պատմության մեջ։ Կոմինտերնը կոչված էր վերականգնելու Մարքսի և Էնգելսի ղեկավարած առաջին ինտերնացիոնալի լավագույն տրադիցիաները, ի մի բերելու միջազգային բանվոր դասակարգի բոլոր ուժերը, նախապատրաստելու կապիտալիզմի ամբողջ վերջնական գրոհը։ Եվ նա իր գործունեության ողջ ժամանակաշրջանում (1919—1943 թթ.) հավատարիմ մնաց այդ կոչմանը։ Այժմ կոմունիստական ինտերնացիոնալի հեղափոխական տրադիցիաները ծառայում են համաշխարհային կոմունիստական շարժման շահերին, որն արդիականության, հասարակական առաջադիմության վճռական գործոնն է։

Մեր օրերում, երբ որոշակի տարաձայնություններ են առաջացել միջազգային կոմունիստական շարժման մեջ, ավելի քան երբեք, անհրաժեշտ է վերհիշել, թե կոմինտերնի ստեղծման ճանապարհին ինչպիսի դժվարությունների հաղթահարման գնով Լենինին, բոլշևիկներին հաջողվեց մարքսիզմի դրոշի ներքո համախմբել բոլոր ինտերնացիոնալիստներին։ Օգտագործելով անցյալի ուսանելի, հարուստ փորձը, ՍՄԿԿ, եղբայրական կոմունիստական կուսակցություններն անում են ամեն ինչ տարաձայնությունները հաղթահարելու համար։ Այդ նպատակին են ծառայում կոմունիստական կուսակցությունների երկկողմանի և բազմակողմանի հանդիպումները, կոնսուլտատիվ խորհրդակցությունները։

Կասկածից վեր է, որ Մոսկվայում հրավիրվող կոմունիստական ու բանվորական կուսակցությունների առաջիկա միջազգային խորհրդակցությունը կմշակի գործողությունների լայն ծրագիր, կմիավորի դեմոկրատական, առաջադիմական ուժերը՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ՄԱՆՅԱ ԲԱԽՉԻՆՅԱՆ
ՀԿԿ Երևանի քաղաքային
կոմիտեի քարտուղար

## ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԿԱՆԱՅՔ ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Մարտի 8-ը կանանց միջազգային օրն է. 59 տարի է, ինչ այն նշվում է աշխարհի գրեթե բոլոր երկրներում։ Կանանց միջազգային օրը մեծ հանդիսավորությամբ նշեցին Սովետական Միության և սոցիալիստական երկրների ժողովուրդները, աշխարհի առաջադեմ մարդկությունը։

ՍՍՀՄ-ում մարտի 8-ը համաժողովրդական տոն է, այն նշանավորում է սոցիալիզմի խոշորագույն հաղթանակներից մեկը՝ մեծ Հոկտեմբերի կողմից կանանց լիակատար ազատագրումն ու տղամարդկանց հետ նրանց իրավունքների հավասարեցումը՝ կյանքի բոլոր բնագավառներում։ Մեր երկրում այդ տոնն անցնում է կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում սովետական կանանց ստեղծագործական ուժերի հետագա մոբիլիզացման, նրանց աշխատանքային և կուլտուր-կենցաղային պայմանների առավել բարելավման, աշխարհի բոլոր կանանց հեղափոխական ուժերը միջազգային կապիտալի ու պատերազմի դեմ, ազատության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարում համախմբելու և բազմապատկելու մարտական նշանաբանով։

Հայտնի է, որ կանանց հարցի վերջնական և արմատական լուծման օրինակն աշխարհին տվեց միայն մեծ Հոկտեմբերը։ Դեռևս քաղաքացիական թեժ կռիվների օրերին, 1918 թ. նոյեմբերին հրավիրված աշխատավորուհիների I համառուսաստանյան համագումարում Վ. Ի. Լենինն ընդգծեց աշխատավոր կանանց մեծ դերը սոցիալիստական հեղափոխության մեջ, ասելով, որ սովետական կառավարությունը կանի ամեն ինչ, որպեսզի նրանք կարողանան ակտիվ մասնակցել նոր կյանքի շինարարությանը։

Անցել է կես դար։ Այդ փառապանծ, փորձություններով լի տարիներին սովետական կինը, հավատարիմ լենինյան դրոշին, հերոսության, անձնազոհության ու սխրանքների իմաստալի ճանապարհ է անցել։ Հիրավի, մեծ է և

անգնահատելի կանանց ավանդը սովետական պետության ստեղծման, նրա հզորության ամրապնդման, սոցիալիզմի նվաճումների ու կոմունիզմի հաղթանակի համար մղվող համաժողովրդական պայքարում։ Կանանց ավագ սերունդին էր վիճակվել հերոսաբար մարտնչել սովետական իշխանության պաշտպանության դիրքերում և տղամարդկանց հետ ուս-ուսի կառուցել աշխարհում առաջին սոցիալիստական հասարակարգը։

Վլադիմիր Իլյիչ Լենինի հետ, բանվոր դասակարգի կուսակցության ստեղծման գործում, մեծ ավանդ են ներդրել Ն. Կ. Կրուպսկայան, Ա. Ուլյանովա-Ելիզարովան, Մ. Ուլյանովան, Զ. Կրժիժանովսկայան, Ե. Ստասովան, Ռ. Զեմլյաչկան, Ց. Բոբրովսկայան, Գ. Օկուլովան, Լ. Կնիպովիչը, Ի. Սմիդովիչը, Ի. Արմանդը, Կ. Սամոյլովան, Ա. Կոլոնտայը և շատ ուրիշ կին կազմակերպիչներ ու պրոֆեսիոնալ հեղափոխականներ։

Հոկտեմբերի հետ ծնված սերնդի կանանց ուսերին ծանրացավ Հայրենական մեծ պատերազմը։ Նրանց մի մասը ռազմաճակատում զենքով մարտնչեց գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերի դեմ, հանուն հայրենիքի ազատության, մյուսը՝ հերոսաբար աշխատեց թիկունքում, ապահովելով ռազմաճակատը ռազմամթերքով ու հացով, դաստիարակելով երեխաներին։ Կին ռազմիկները մարտի գնալիս հաճախ էին կրկնում իսպանական ժողովրդի բոցաշունչ դստեր՝ Դոլորես Իբարուրիի կոչերը՝ «Ավելի լավ է մեռնել կանգնած, քան ապրել ծնկաչոք», «Լավ է լինել հերոսի այրի, քան վախկոտի կին»։ Սովետական հիասքանչ դուստրերի՝ Զոյա Կոսմոդեմյանսկայայի, Լիզա Չայկինայի, Ուլյանա Գրոմովայի և շատ ուրիշների անմահ անունները հնչակվեցին ամբողջ աշխարհում. Մոսկվայի բարիկադներում հերոսաբար ընկած Լուսիկ Լիսինյանի նման, նրանք իրենց արյունը հեղեցին մեր այսօրվա երջանիկ կյանքի համար։

Հայրենիքն ըստ արժանվույն գնահատեց իր լավագույն դուստրերի անձնուրացությունը։ Թշնամու դեմ մղած մարտերում քաջագործությունների և պատերազմի տարիներին թիկունքում ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բնագավառում հատուկ ծառայությունների համար 1400 հազար սովետական կանայք պարգևատրվեցին կառավարական շքանշաններով ու մեդալներով, իսկ 91-ը՝ արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման։

Սովետական կինը կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցն է, երկրի իրավահավասար տերը։ Անմահ Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիստական շինարարության գործն առաջ կգնա այն ժամանակ, երբ դրան մասնակցեն միլիոնավոր կանայք։ Լենինյան այդ պատգամը մեր երկրում հաջողությամբ իրականացվել է։ Իրոք, միլիոնավոր կանանց հերոսական աշխատանք է ներդրված սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում։ Սովետական կինը մեծ ջանասիրությամբ շարունակում է հեղափոխական սերնդի ավանդն ու սխրանքները։ Մեր երկրում բնակչության 54 տոկոսը (129 մլն), ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվոր-ծառայողների կեսը (42,7 մլն) կանայք են։ Զգալի չափով բարձրացել է նրանց կրթական մակարդակը։

20-ական թվականներին գրաճանաչություն սովորող կինն այսօր առաջավոր ու բարդ զբաղմունքների մասնագետ է։ Ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետներից ավելի քան 8 մլն (58 տոկոսը) կանայք են. դա 54 անգամ ավելի է 1928 թ. մակարդակից։ Մեր երկրի ուսուցիչների և բժիշկների 70, իսկ ինժեներների 30 տոկոսը կանայք են։



Նախահեղափոխական Ռուսաստանում կինը փաստորեն հնարավորություն չուներ բարձրագույն կրթություն ստանալու։ Նրանց միայն 12 տոկոսն էր գրագետ, իսկ աշխատող կանանց 80 տոկոսը տնային ծառայողներ ու բատրակներ էին։

Հիանալի գիտնական-մաթեմատիկոս Սոֆյա Կովալևսկայան, նախահեղափոխական Ռուսաստանի միակ կին պրոֆեսորը, կրթություն ստանալու համար ստիպված էր կեղծ ամուսնություն կնքել, որպեսզի թույլ տան արտասահման մեկնել։ Բայց նա հնարավորություն չունեցավ տառապանքով ձեռք բերած կրթությունը, գիտելիքներն օգտագործել իր հայրենիքում։ Նրան թույլատրվեց միայն ցածր դասարաններում թվաբանություն դասավանդել։

Կարո՞ղ էր արդյոք Կովալևսկայան երազել, որ իր հայրենիքն այդքան կարճ ժամանակում արդի գիտության ու տեխնիկայի վճռական ճյուղերում կգերազանցի կապիտալիստական զարգացած երկրներին ու կհասնի գիտության այնպիսի բարձունքների, որ առաջին տիեզերագնացների թվում կլինի և նրա հայրենակցուհին՝ Վալենտինա Տերեշկովան։

Այսօր մեր երկրի 295 հազար կանայք գիտական աշխատողներ են, նրանցից 1300-ը ունեն ակադեմիկոսի, ակադեմիայի թղթակից-անդամի և պրոֆեսորի կոչում, մոտ 48 հազարը գիտության դոկտորներ ու թեկնածուներ են։ Երկրի գիտական աշխատողների 38 տոկոսը կանայք են։

Սովետական Միության բարձրագույն ուսումնական հաստատությունների 46 և միջնակարգ մասնագիտական հաստատությունների ուսանողների 52 տոկոսը կանայք ու աղջիկներ են։ Նրանք լուրջ ավանդ ունեն նաև սովետական արվեստի, գրականության, սպորտի զարգացման ասպարեզում։

Սովետական կինը երկրի իրավահավասար տերն է։ Մեր երկրի կառավարման բարձրագույն օրգանի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատներից 425-ը (28 տոկոսը) կանայք են։ Ավելի քան 2,6 մլն կին ՍՄԿԿ անդամ են։ Հայրենիքին մատուցած ծառայությունների համար ավելի քան մեկ մլն կանայք պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։

Մեր երկրում ամենուրեք մեծ հարգանքի և ուշադրության է արժանանում սովետական մայրը։

Վ. Ի. Լենինն ասում էր. Դուք ամենքդ գիտեք, որ նույնիսկ լիակատար իրավահավասարության ժամանակ, այնուամենայնիվ, մնում է կնոջ այդ փաստական ճնշվածությունը, որովհետև նրա վրա են բարդում ամբողջ տնային տնտեսությունը։ Այդ տնային տնտեսությունը մեծ մասամբ հանդիսանում է ամենից անարտադրողական, ամենից վայրենի և ամենից ծանր մի աշխատանք, որը կատարում է կինը։ Այդ վերին աստիճանի ծանր աշխատանք է, որն իր մեջ կնոջ զարգացմանը որևէ չափով նպաստող ոչինչ չի պարունակում։

Մեր երկրում բազմաթիվ նորանոր միջոցառումներ են կիրառվում կնոջ հոգսերը թեթևացնելու, նրան հասարակական ակտիվ աշխատանքում ներգրավելու, հոգևոր զարգացման բազմապիսի հնարավորություններ ապահովելու համար։

Սովետական Միության բազմազգ ընտանիքում իրենց լուման են ներդնում նաև Հայաստանի աշխատավորուհիները։ Երբեմնի խղճուկ հայ գեղջ-

կուհին, որի սև օրն այնքան ռեալիստորեն բնութագրել է հանճարեղ բանաստեղծ Հովհ. Թումանյանը, այժմ դարձել է բժիշկ ու ինժեներ, բանաստեղծ ու ուսուցիչ, ղեկավար պաշտոններ է գրավում պետական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։

Հանրապետության էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման գործում, հասարակական-քաղաքական մեծ ավանդ ունեն 1917 թ. հունվարից ՍՄԿԿ անդամ, Լենինի կրկնակի շքանշանակիր Սուսաննա Շահվերդովան, հին բոլշևիկներ, գիտության վաստակավոր գործիչ Զոյա Յասինսկայան, Լենինի շքանշանակիր Վարդուշ Թարախչյանը, Սերիկ Դավթյանը (արվեստագիտության թեկնածու), Մինիստրների սովետի նախագահի տեղակալ Լարիսա Ստեփանյանը, վաստակավոր ինժեներ Վարդուշ Մխիթարյանը, Լենինի շքանշանակիր Աննա Իշենինան, արտասահմանի հետ բարեկամության և կուլտուրական կապերի հայկական ընկերության կանանց բաժանմունքի նախագահ, ակադեմիկոս Արաքսյա Բաբայանը, պետական մրցանակի դափնեկիր Մարիամ Բաբաջանյանը, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ, մինիստր Նունիկ Թուխիկյանը, վաստակավոր ինժեներ Մարգո Լալայանը, կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՍՄԿԿ XXIII համագումարի պատգամավոր Մարգարիտ Գրիգորյանը, բժշկական գիտությունների դոկտոր Եկատերինա Բլավատսկայան, անվանի բանաստեղծ, պետական մրցանակի դափնեկիր Սիլվա Կապուտիկյանը, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, Միության ժողովրդական դերասանուհի Գոհար Գասպարյանը, ժողովրդական նկարիչ Այծեմիկ Ուրարտուն, սոցիալիստական աշխատանքի հերոս բանվորուհիներ Արփիկ Ֆրանգուլյանը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության անդամ, հայրենադարձ Ծաղկանուշ Գալամտերյանը և շատ ուրիշներ։

Մայրաքաղաքի աշխատավորները հաջողությամբ են կատարում ժողովրդական տնտեսության զարգացման պետական առաջադրանքները և լայն մրցություն են ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի զարգացման և ժողովրդի բարեկեցության բնագավառներում նորանոր հաջողություններով դիմավորելու համար։

Զգալիորեն գերակատարվել են հնգամյակի երեք տարիների արտադրական պլաններն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Արդյունաբերության արտադրանքի ծավալը հնգամյակի անցած ժամանակաշրջանում Երևանում աճել է 38,6 տոկոսով, թողարկվել է 100 մլն ռուբլու արտապլանային արտադրանք. ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 24-ին կատարվեց նաև արտադրանքի իրացման 1968 թ. պլանը, իսկ չորրորդ եռամսյակում լավագույն ցուցանիշների համար Երևանի արդյունաբերողները հաղթող դուրս եկան մրցությունում՝ շահեցին ՀԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի ու ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշը և արժանացան դրամական պարգևի։ Այսօր ավելի քան 125 հազար կանայք են ընդգրկված Երևանի ժողովրդական տնտեսության ոլորտում, այդ թվում՝ 58 հազարն աշխատում են արդյունաբերության մեջ։ Մոտ 10 հազարը կոմունիստական կուսակցության անդամներ են և քայլում են կոմունիզմ կառուցողների ավանգարդում։

Երևանի Օրջոնիկիձեի անվան շրջանում, որը 1968 թվականի լավագույն արդյունքների համար արժանացել է ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի և աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործկոմի փոխանցիկ դրոշին, 25 կանայք հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ ու



գլխավոր ինժեներներ են, 75-ը՝ բաժնի վարիչներ, 24-ը՝ դպրոցների ուսմասվարներ, 5-ը՝ բուժօբյեկտների գլխավոր բժիշկներ։ Շրջանի 211 սկզբնական կուսակցական կազմակերպություններից 64-ի քարտուղարները կանայք, 148-ը բյուրոյի անդամներ են։

Մայրաքաղաքի կանայք ակտիվ մասնակցում են նաև գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, արտադրության գիտական կազմակերպման, արտադրանքի որակի բարելավման գործին։ Միայն 1968 թ. Երևանի ձեռնարկությունների 728 կանայք արել են 868 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից 526-ի ներդրումն արտադրության մեջ տվել է 2 մլն 386 հազար ռուբլու տնտեսական օգուտ։

Երևանի թեթև արդյունաբերության ձեռնարկությունների աշխատողների 73, իսկ ինժեներա-տեխնիկական ու ղեկավար աշխատողների 47 տոկոսը կանայք են։ Երկար տարիներ Քնարիկ Հովսեփյանը ղեկավարում է Երևանի կարի 4-րդ ֆաբրիկան։ 370 առաջավոր կանայք արդեն 15—30 տարի է, ինչ աշխատում են ֆաբրիկայում։ Այս համերաշխ կոլեկտիվն իր գոյության տարիներին 31 անգամ արժանացել է մրցանակի. վերջին 15 տարիներին սիստեմատիկաբար կատարել է արտադրական պլանները, թողարկել բարձրորակ արտադրանք։ 1968 թ. ֆաբրիկայի արտադրության ծավալն աճել է 27 տոկոսով և այն արժանացել է ՀՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին ու ստացել առաջին կարգի դրամական պարգև։

Ավելի քան 4 հազար կանայք են աշխատում աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում, որի արտադրանքը լայն ճանաչում է գտել ո՛չ միայն մեր Միության մեջ, այլև նրա սահմաններից դուրս։ Գործարանի 460 կանայք աշխատում են կոմունիստական աշխատանքի բրիգադներում, 470-ը սովորում բարձրագույն ուսումնական հաստատություններում, տեխնիկումներում և միջնակարգ դպրոցներում։ Ձեռնարկությանը կից գործում են պոլիտեխնիկական ինստիտուտի և էլեկտրատեխնիկական տեխնիկումի ֆիլիալները, բաներիտ դպրոցը։

Գործարանում վատ չի աշխատում կանանց խորհուրդը։ Ստեղծված են բոլոր պայմաններն արտադրության մեջ կանանց արդյունավետ աշխատանքի համար։ Գործում են 6 մանկապարտեզ ու մսուր, կազմակերպված է կիսաֆաբրիկատների վաճառք, որն զգալիորեն թեթևացնում է կնոջ աշխատանքը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում մեծ ավանդ են ներդնում Ս. Մ. Կիրովի անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր քիմկոմբինատի կանայք։ 1500 կանանցից 520-ը հիմնական արտադրամասերում առաջատար մասնագիտության բանվորուհիներ են, 252-ը՝ ինժեներատեխնիկական աշխատողներ։ 882 կին ունեն բարձրագույն, միջնակարգ տեխնիկական և միջնակարգ կրթություն, 175-ը՝ առանց արտադրությունից կտրվելու սովորում են։

Կուսակցությունը և կառավարությունն ըստ արժանվույն են գնահատում պանծալի քիմիագործների քրտնաջան աշխատանքը։ Այստեղ 258 կանայք պարգևատրվել են կառավարական շքանշաններով, մեդալներով ու պատվոգրերով, 50-ը՝ արտադրության նորարարներ են։ Նրանց ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումից տնտեսվել է 600 հազար ռուբլի։ Հմուտ ինժեներներ Էմմա Մկրտչյանը, Սեդա Աթոյանը, Խայա Խայկինան,

Մարիա Փորքշեյանը, Աննա Ոսկանյանը արժանացել են հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորի պատվավոր կոչման։

Կոմբինատում ավելի քան 20 տարի աշխատում է կոմունիստ-նորարար, հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատոր Մարիա Փորքշեյանը։ Նա միայն վերջին 3 տարում ռացիոնալիզատորական 17 առաջարկություն է արել։ Երիտասարդության լավագույն դաստիարակ է 1—6 արտադրամասի լաբորատորիայի վարիչ Ծովիկ Մանվելյանը, որն իր աշխատանքային հարուստ փորձը սիրով հաղորդում է երիտասարդներին։

25 տարի է, ինչ կարբիդի արտադրամասում է աշխատում առաջավոր բանվորուհի Հայաստան Սիմոնյանը, որին իրենց ուսուցիչն ու խորհրդատուն են համարում կարբիդագործներ Գ. Ռուշանյանը, Մ. Թումանյանը, Ց. Ղազանչյանը և շատ ուրիշներ։ Անցյալ տարի մարտի 8-ին բազմավաստակ բանվորուհին արժանացավ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրի։ Ձեռնարկության պատվոգրքում, որպես պատվավոր անդամ, գրանցված է առաջավոր մեքենավար, բանվորուհի Վարդուշ Գևորգյանի անունը։ Արտադրության կին վետերանների օրինակը շատերին է ոգևորում։

Մայրաքաղաքի 3324 կանայք պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, այդ թվում 231-ը՝ Լենինի շքանշանով։ 1081 կին արժանացել են հանրապետության վաստակավոր ուսուցչի, բժշկի, ինժեների, գիտությունների ու արվեստի գործչի, դերասանի և այլ պատվավոր կոչումների, իսկ 1786-ը պարգևատրվել են Գերագույն սովետի պատվոգրով, 10-ը՝ սոցիալիստական աշխատանքի հերոսներ են, 2-ը՝ Միության ժողովրդական դերասանուհիներ։ Երևանի 134 կանայք արժանացել են «Հերոսուհի մայր» կոչման, 17663-ը՝ պարգևատրվել «Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալ»-ով։

Տարեցտարի բարելավվում է մոր և մանկան առողջության ամրապնդման վիճակը, ընդարձակվում բուժական հիմնարկությունների. մսուր-մանկապարտեզների, դպրոցների ցանցը։ Վերջին 15 տարում Երևանում մոտ 6 անգամ պակասել է երեխաների մահացությունը. այն միջին միութենականից ցածր է։

Աշխատավոր մայրերի համար լավ պայմաններ ստեղծելու նպատակով, զգալի աշխատանք է կատարվում ժողովրդական կրթության բնագավառում։ Երկարօրյա դպրոցներում ու խմբերում ավելանում է աշակերտների թիվը։ Այժմ Երևանում գործում են 10 գիշերօթիկ դպրոց՝ 3630 աշակերտական տեղով, 1200 երեխա ընդգրկված են գիշերօթիկ մսուր-մանկապարտեզներում։ Անցյալ տարի մսուր-մանկապարտեզներում երեխաների թիվն ավելացել է 1400-ով։

Կանայք քաղաքային և շրջանային սովետների դեպուտատներ են։ Նրանք հիմնականում ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների օրինակելի աշխատողներ են՝ արտադրության առաջավորներ, մանկավարժներ, գիտնականներ ու բժիշկներ, գրողներ, գիտության, կուլտուրայի ու արվեստի այլ ներկայացուցիչներ, սովետական ու կուսակցական ապարատի աշխատողներ։

Սոցիալիստական բոլոր երկրների աշխատավորները մեծամեծ նվաճումներով դիմավորեցին մարտի 8-ը։ Բոլորովին այլ պայմաններում նշվեց այդ օրը կապիտալիստական, գաղութային ու կախյալ երկրներում, որտեղ կանայք պայքարում են գործազրկության ու շահագործման, պատերազմի քաղաքականության դեմ, պահանջում կանանց ու տղամարդկանց՝ տնտեսական և քաղաքական հավասար իրավունքներ, կանանց ու երեխաների դրության բարելավում, նրանց կրթության իրավունք։



Այսօր կանայք աշխարհի վարձու աշխատողների մեկ երրորդն են։ Նրանք նյութական ու կուլտուրական բարիքներ են ստեղծում մարդկության համար։ Մինչդեռ Բելգիայի, Շվեդիայի, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության, Շվեյցարիայի և Արևմուտքի մյուս երկրներում նրանք հավասար աշխատանքի համար վարձատրվում են տղամարդկանց աշխատավարձի մեկ երրորդից ոչ ավելի։

Աշխարհի առաջադեմ կանայք, համախմբված կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի շուրջը, դատապարտում են ամերիկյան ագրեսորներին Վիետնամում, նյութական ու բարոյական օգնություն են ցույց տալիս նրա հերոս կանանց ու երեխաներին, մարտնչող Վիետնամի հայրենասեր ժողովրդին։

Տարբեր են աշխարհի երկրների կանանց պայքարի խնդիրներն ու նպատակները։ Բայց կա հողագնդի բոլոր կանանց համար կենսական մի կարևորագույն ընդհանուր նպատակ. դա պայքարն է խաղաղության ամրապնդման ու պահպանման համար։

«Կանայք,— ասել է Գորկին,— անսահման ատելությամբ են լցված մահվան նկատմամբ»։ Խուսափել երրորդ համաշխարհային պատերազմից— այս է բոլոր խաղաղասեր ժողովուրդների կարևորագույն նպատակը։ Խաղաղությունն անհրաժեշտ է երկրագնդի բոլոր ժողովուրդների լուսավոր ապագայի համար։ Ահա թե ինչու, սովետական միլիոնավոր աշխատավորուհիների բանակը միահամուռ դատապարտեց և անարգանքի սյունին գամեց չինական ավանտյուրիստների զինված պրովոկացիան։

Սովետական կանանց կոմիտեն մեծ նշանակություն է տալիս կանանց միջազգային դեմոկրատական շարժման ընդլայնմանն ու ամրապնդմանը։ Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի նախաձեռնությամբ այս տարվա հունիսին հրավիրվելու է միջազգային կոնգրես, որը քննարկելու է «Կնոջ դերը ժամանակակից աշխարհում» պրոբլեմը։ Կոնգրեսի հիմնական նպատակն է՝ միավորել առաջավոր կանանց ուժերն ընդդեմ իմպերիալիզմի, համախմբվել խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության, կանանց իրավունքների, երեխաների և երիտասարդության բարեկեցության համար մղվող պայքարում։ Կոնգրեսը մեծ ազդակ կհանդիսանա նաև աշխարհի առաջադեմ կանանց ինտերնացիոնալ կապերի ընդլայնման գործում։

Լենինի պատգամների իրականացման շնորհիվ ազատագրված սովետական կանայք ստեղծագործական աշխատանքի լայն հնարավորություններ են ձեռք բերել. նրանք լավ գիտեն, որ մեր երկրի հաջողությունները, կոմունիստական շինարարության հետագա առաջընթացը մեծապես պայմանավորված են նաև իրենց աշխատանքով։ Սովետական ողջ ժողովրդի հետ բոլոր կանայք, այդ թվում և Երևանի աշխատավորուհիներն արժանավայել գործերով կդիմավորեն Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։



Մ. Հ. ՀԱԿՈԲՅԱՆ
ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմի
քարտուղար

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՕՂԱԿԸ

Կոմունիստական կուսակցության հիմնադիր և առաջնորդ Վ. Ի. Լենինը կազմակերպական աշխատանքում գլխավորը համարում էր մարդկանց ճիշտ ընտրությունն ու կատարման ստուգումը։

Սոցիալիստական շինարարության ղեկավարման գործում կատարման ստուգումը կուսակցական ղեկավար աշխատանքի կարևորագույն մասն է, լուրջ հարցերից մեկը։ Այն միշտ եղել է կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր՝ ստուգել աշխատողներին աշխատանքի փաստական արդյունքներով— սա է գլխավորը կազմակերպական աշխատանքում։

Վլադիմիր Իլյիչը կատարման ստուգումը համարում էր աշխատողներին օգնելու, աճեցնելու և ճանաչելու կարևոր մեթոդ։ 1922 թ. անդրադառնալով այդ հարցին, նա ցուցում էր տալիս. «...ստուգեցեք աշխատանքը, խորացեք էության մեջ, լրջորեն կրթեցեք, սովորեցրեք, խարազանեք։ Ուսումնասիրել մարդկանց, որոնել ձեռնհաս աշխատողների։ Այժմ էականն այդ է» (Երկեր, հ. 35, էջ 582)։ Կուսակցության XI համագումարում Վ. Ի. Լենինը նշում է. պետք է «...հասնել այն բանին, ինչ որ, իմ կարծիքով, կազմում է այժմյան քաղաքական մոմենտի ամբողջ մեխը, ամբողջ էությունը. ծանրության կենտրոնը տեղափոխել մարդկանց ընտրության, փաստական կատարումն ստուգելու վրա» (Երկեր, հ. 33, էջ 365)։

Կատարման ստուգման մասին լենինյան դրույթները մեր կուսակցության կազմակերպական գործունեության էական մասն են։ Ելնելով դրանից, ՍՄԿԿ XXIII համագումարը սրությամբ դրեց բոլոր կազմակերպությունների ու հիմնարկությունների աշխատանքներում հսկողությունն ու կատարման ստուգումն ուժեղացնելու, հանձնարարված գործի նկատմամբ կադրերի, առաջին հերթին, կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու, տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրներն իրականացնելու համար նրանց ուժերը մոբիլիզացնելու հարցերը։ Համագումարը մի անգամ ևս ընդգծեց, որ առաջադրված ամեն մի խնդրի հաջող լուծման երաշխիքը խոսքի և գործի սերտ միասնությունն է, կուսակցական ու պետական ամուր կարգապահությունը։ Համագումարն անդրադարձավ կուսակցության և պետության



ղեկավարման մեջ տեղ գտած սխալների բացահայտմանն ու շտկմանը, սուբյեկտիվիզմի և լենինիզմի ոգուն խորթ երևույթների վերացմանը։ Համագումարի որոշումների կենսագործման շնորհիվ բարձրացավ կուսակցական-կազմակերպական աշխատանքի մակարդակը։

ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմը այժմ սիստեմատիկաբար անդրադառնում է կուսակցական-կազմակերպական աշխատանքի, իր ընդունած որոշումների կատարման և ղեկավարության մեթոդների կատարելագործման հարցերին։ Շրջկոմի բյուրոն նպատակահարմար գտավ հերթական պլենումում քննարկել շրջանի կուսկազմակերպություններում կատարման ստուգման վիճակը։

Այդ հարցը նախապես մանրամասն ուսումնասիրեցին շրջկոմի անդամները։ Քննարկման ընթացքում բացահայտվեցին մի շարք լուրջ թերություններ։ Չնայած շրջկոմի բյուրոն բազմիցս ուսումնասիրել ու քննարկել է շրջանի ետ մնացող կոլտնտեսությունների, Ջորի ենթաշրջանի գյուղերում ոչխարաբուծության զարգացման, ֆերմաներում տոհմային գործի բարելավման և շատ այլ հարցեր, ընդունել որոշումներ, սակայն դրանց մի մասը չի կատարվել։ Բացահայտվեցին նաև ստուգման բնագավառում եղած աղաղակող թերությունները։ Շրջկոմի պլենումը բյուրոյին, բաժիններին ու սկզբնական կուսկազմակերպություններին հանձնարարեց լրջորեն զբաղվել և բարձր հիմքերի վրա դնել որոշումների կատարման ստուգումը։

Պլենումից հետո շրջկոմի բյուրոն, սկզբնական կուսկազմակերպությունները հաճախ են անդրադառնում իրենց ընդունած որոշումների կատարմանը։ Կուսշրջկոմի աշխատողները պարբերաբար լինում են կուսկազմակերպություններում, օգնում նրանց, ստուգում կատարման արդյունքները։ Ստուգումն ու օգնությունը զուգակցվում են իրար հետ։ Օգնություն է ցույց տրվում այն պահից, երբ սկսվում է ստուգումը, հարցը նախապատրաստվում քննարկման համար։ Չէ՞ որ կուսակցական աշխատողը սոսկ ահազանգող չէ։ Նա պարտավոր է ստուգման ժամանակ օբյեկտիվորեն բացահայտել սխալները, գտնել դրանց ծագման պատճառները, օգնել վերացնելու դրանք։ Սա է կուսակցական աշխատանքի փորձված մեթոդը, դրանով է կուսակցական աշխատողը տարբերվում գերատեսչական վերահսկողներից։

Մեր շրջանում պրակտիկա է դարձել որոշման կատարումն ստուգել ո՛չ թե գրասենյակում, այլ աշխատանքի պրոցեսում։ Որոշումներն ընդունելուց հետո տրվում են համապատասխան հրահանգներ, նշվում կատարման ուղիները, առաջադրված կոնկրետ խնդիրները։ Այդ ամենը, մի կողմից՝ բարձրացնում է աշխատողների պատասխանատվությունը, մյուս կողմից՝ ցույց տալիս նրանց կոնկրետ անելիքները՝ առաջադրված խնդիրները լուծելու համար։

Շրջկոմի բյուրոյի նիստերում, պլենումներում, ակտիվի ժողովներում հաճախ քննարկվում են կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների կողմից կուսակցության և կառավարության որոշումների ու դիրեկտիվների, ինչպես նաև իրենց որոշումների կենսագործման հարցերը, լսվում սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունները։

Որոշումների կատարման հաճախակի ստուգումը բարձրացնում է կադրերի պատասխանատվությունը, պարզում, թե նրանք ի վիճակի՞ են, արդյոք, կատարելու կուսակցության և կառավարության դիրեկտիվները։ Կատարման մանրազնին, բարեխիղճ ստուգումը կադրերին դաստիարակում է սկզբունքայնության, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության, թերությունների հանդեպ անհաշտելիության ոգով։ Այդպիսի ստու-

գումն ամրապնդում է կուսակցական և պետական կարգապահությունը, շրջկոմին հնարավորություն տալիս ժամանակին հայտաբերելու և վերացնելու բացերը, կանխելու խափանումները, ուսումնասիրելու և տարածելու աշխատանքի դրական փորձը։

Կուսակցության դիրեկտիվների և սեփական որոշումների կատարումն ապահովելու նպատակով շրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպություններն իրենց ուշադրությունը սևեռում են կազմակերպական աշխատանքի, կոլտնտեսությունների վարչություններին, սովխոզների դիրեկտորներին, ֆերմաներին ու բրիգադներին ցույց տրվող պրակտիկ օգնության, կադրերի ճիշտ ընտրության ու դաստիարակության վրա։ Նրանք կատարման ստուգման միջոցով բացահայտում են կոլեկտիվ ու պետական տնտեսությունների աշխատանքներում եղած թերությունները և դրանց վերացման կոնկրետ միջոցառումներ նշում։

Վերջին տարիներին շրջանը չէր ապահովում կերի կուտակման պլանային առաջադրանքների կատարումը։ Դրա հիմնական պատճառն այն էր, որ շրջանի տնտեսություններում տարեցտարի կրճատվել էին բազմամյա խոտաբույսերի և, հատկապես, կորնգանի ցանքատարածությունները։ Իջել էր բնական խոտհարքերի բերքատվությունը, հույսը դրվել էր միամյա խոտաբույսերի, հատկապես վարսակի ցանքատարածությունների ընդարձակման վրա, որը, սակայն, չէր ապահովում ու չէր կարող ապահովել շրջանի անասնապահության կերի պահանջները։ Այս հարցը լուրջ անհանգստացրեց շրջանի կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպություններին։ Երբ շրջկոմում ամփոփվում էին կերի կուտակման պլանային առաջադրանքների կատարման արդյունքները, միահամուռ այն կարծիքը հայտնվեց, որ պետք է լրջորեն անդրադառնալ անասուններին կերով ապահովելու խնդրին։

Շրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը միացյալ նիստում քննության առան «Կոլտնտեսություններում և սովխոզներում կերի արտադրությունն ու կուտակումն ավելացնելու միջոցառումների» հարցը, բացահայտվեցին այդ գործում տեղ գտած թերությունները և գործնական միջոցառումներ մշակվեցին հանրային անասնապահությունը սեփական կերով ապահովելու համար։ Որոշման մեջ հիմնական շեշտը դրվեց, առաջին հերթին, տնտեսությունները բազմամյա խոտաբույսերի սեփական սերմացուներով ապահովելու վրա։ Գյուղատնտեսության շրջանային արտադրական վարչության և տնտեսությունների ղեկավարները, գյուղական սովետների գործկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները ողջ ջանքերն ուղղեցին որոշման կատարումն ապահովելուն։ Ձեռք բերվեց բազմամյա խոտաբույսերի սերմացու, առանձնացվեցին սերմադաշտեր և, երկու տարի անց, շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները 850 հեկտարից հասան մոտ 3000-ի։ Դա կիսով չափ կապահովի հանրային անասունների կերի պահանջը։

Տարիներ շարունակ մեր շրջանի կուսակցական կոնֆերանսներում, պլենումներում, շրջանային ակտիվի ժողովներում, բյուրոների նիստերում իրավացի քննադատվում էր Փալութլի գյուղի կոլտնտեսությունը։ Այնտեղ ցածր էր գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, կուսկազմակերպությունն աչքաթող էր արել կադրերի ընտրության, տեղադրման ու դաստիարակության գործը, ընկած էր աշխատանքային, կուսակցական ու պետական կարգապահությունը։ Կուսկազմակերպությունը չէր ապահովում ինչպես վե-



րադաս օրգանների, այնպես էլ իր որոշումների կատարման ստուգումը։ Գրեթե ամեն տարի փոխվում էր նախագահը, բայց վիճակը մնում էր նույնը։

Շրջկոմը միջամտեց գործին։ Աշխատանքից ազատեց կոլտնտեսության նախագահ Դ. Դավթյանին, ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Պ. Միքայելյանին և այլ ղեկավարների, նրանց փոխարեն առաջ քաշեց գործունյա մարդկանց։ Եվ երբեմնի ետ մնացող տնտեսությունը բռնեց զարգացման ուղին։ Անցած տարի կոլտնտեսությունը խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման տարեկան պլանը կատարեց 103,2, կաթի համախառն արտադրությանը՝ 113,8, մեկ կովի կաթնատվությանը՝ 109,2 տոկոսով. պետությանը մսի վաճառքի պլանը կատարեց 109, կաթինը՝ 120, բրդինը՝ 100,5 տոկոսով։

Կոլտնտեսության միջոցներով կառուցվեցին և շահագործման հանձնվեցին դպրոցական նոր շենքն ու անասնագոմը։

Ուսանելի շատ բան կա Ղազանչիի սովխոզում։ Կուսակցական կազմակերպությունն ու նրա կոմիտեն (քարտուղար՝ Կ. Խաչատրյան) խորամուխ են լինում սովխոզի տեղամասերի, բրիգադների կոլեկտիվների աշխատանքի էության մեջ, նկատում արտադրության նեղ տեղերը, ետ մնացող բնագավառը, բացահայտում թերությունները և կոնկրետ միջոցառումներ ձեռնարկում պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար։ Առաջադրված խնդիրների հաջող լուծումն ապահովելու նպատակով սովխոզի կուսկոմիտեն սիստեմատիկ ստուգում է մշակված միջոցառումների կատարումը, արտադրության վճռական օղակներում տեղաբաշխում կոմունիստների ուժերը, հոգում նրանց ավանգարդային դերի բարձրացման համար։ Կուսկազմակերպության 53 անդամից 35-ը շարքային աշխատանք են կատարում։ Ընդ. որին, 20 կոմունիստ աշխատում են տնտեսության վճռական ճյուղում՝ անասնապահության բնագավառում։

Արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում և կոմիտեի նիստերում քննարկվում են ո՛չ միայն ղեկավար կադրերի, այլև շարքային կոմունիստների հաշվետվությունները։ Նրանցում հաղորդվում է նախորդ ժողովի կամ կոմիտեի նիստի ընդունած որոշման կատարման ընթացքը։

Սակայն, ինչպես ցույց տվեցին սկզբնական կուսկազմակերպությունների՝ վերջերս ավարտված հաշվետու-ընտրական ժողովները, մի շարք տեղերում դեռևս անբավարար է վերահսկողությունը, կատարման ստուգումը։ Բավրայի, Ջույգաղբյուրի, Ջրաշենի սովխոզների, Ցողամարգի, Մուսայելյանի կոլտնտեսությունների, շրջկապի հանգույցի, կոմունալ-կենցաղային հիմնարկությունների և շրջկոոպի սկզբնական կուսկազմակերպությունները որոշումներ ընդունելուց հետո չեն հետևում դրանց կատարմանը։

Երբեք չի կարելի բավարարվել որոշումներ ընդունելով, սովորեցնում է կուսակցությունը։ Որոշման ընդունումը գործի սկիզբն է միայն։ Գլխավորը կատարումն է։ Նույնիսկ ամենալավ որոշումը կարող է դատարկ թղթի վերածվել, եթե այն չի ամրապնդվում կազմակերպական աշխատանքով և չի իրագործվում։

Շրջանի առանձին սկզբնական կուսկազմակերպություններ դեռևս վճռական քայլերի չեն դիմում մշակած միջոցառումներն անթերի կատարելու համար։ Անցած տարի կուսշրջկոմը մի քանի անգամ անդրադարձավ շրջանում կատարվող կապիտալ շինարարությանը։ Անբավարար էին կատարվում ՀՍՍՀ գյուղական շինարարության մինիստրության Ախուրյանի № 4 շինտրեստի,

№ 10 շարժական մեքենայացված շարասյան և Հայկոոպի շինտրեստի՝ Ախուրյանի շինմոնտաժային գրասենյակների աշխատանքները։ Շրջկոմը օբյեկտների շինարարությունն ավարտելու կոնկրետ ժամկետներ սահմանեց։

Ի՞նչ հետևություն արին նշված կազմակերպությունների ղեկավարները։ Գրեթե ոչ մի։ № 10 շարժական մեքենայացված շարասյունը շրջանում շինարարական պլանը կատարեց 73,7 տոկոսով և 18 օբյեկտի փոխարեն շահագործման հանձնեց 10-ը։ Հայկոոպի շինտրեստի Ախուրյանի շինմոնտաժային գրասենյակը 9 օբյեկտից շահագործման հանձնեց միայն 4-ը։ Առանձնապես անբավարար էր աշխատանքը կոմունալ-կենցաղային և կուլտուր-լուսավորական օբյեկտների կառուցման ասպարեզում։

Կատարման ստուգումը կենդանի, պրակտիկ աշխատանք է. դրա նպատակն է գործի վերածել ընդունած որոշումը։ Այն սիստեմատիկ և հետևողական ջանքեր է պահանջում։ Մինչդեռ, շրջանի որոշ կուսկազմակերպություններ սպասում են մինչև սահմանված ժամկետը լրանա, որից հետո միայն ստուգում են որոշման կատարման վիճակը։ Կամ ստուգումը կազմակերպում են այն ժամանակ, երբ ակնհայտ է դառնում որոշման կատարման ձախողումը։ Այսպիսի պրակտիկան սխալ է և չի կարող արդյունք տալ։ Որոշ կուսկազմակերպություններ կատարման ստուգումը յուրատեսակ են հասկանում, այսինքն՝ միևնույն հարցի վերաբերյալ ընդունում են մի քանի որոշում և դա համարում են կատարման ստուգում։ Իհարկե, այդ չի նշանակում, թե չի կարելի հարցը քննել կրկին և ընդունել նոր որոշում. կենդանի, պրակտիկ աշխատանքը նոր հարցեր է առաջադրում. ելնելով ժամանակի պահանջներից ու պայմաններից, հին հարցերը պահանջում են նոր մոտեցում։

Մուսայելյանի անվան կոլտնտեսության կուսկազմակերպությունն անասնապահական ֆերմաներն ավտոմատ խմոցներ դնելու, գյուղում բաղնիքի ու ակումբի շենք կառուցելու մասին 5—6 որոշում է ընդունել, բայց դրանցից ոչ մեկը չի կատարվել։

Աշխատանքի այդպիսի արատավոր ոճ գոյություն ունի նաև Ջույգաղբյուրի սովխոզի կուսկազմակերպության աշխատանքում։ Այստեղ անցած գյուղատնտեսական տարում անասնաբուծության զարգացման մասին մի շարք որոշումներ են ընդունվել։ Բայց կազմակերպության բյուրոն չի հետևել դրանց կատարմանը։

Անցած տարվա սկզբին կուսկազմակերպության ժողովը քննության առնելով անասունների ձմեռման վիճակը, որոշում է, որ կթվոր-անասնապահների պակասը լրացնելու համար ղեկավար աշխատանք կատարող կոմունիստներն իրենց ընտանիքների անդամներին ուղարկեն անասնապահական ֆերմա։ Սակայն կոմունիստներից ոչ մեկը չի կատարում այդ որոշումը։ Մի շաբաթ անց կուսկազմակերպության բյուրոն քննության է առնում կազմակերպության ժողովի որոշման կատարման ընթացքը, բայց միջոցներ չի ձեռնարկում այն չկատարողների նկատմամբ։ Այս և այլ պատճառներով սովխոզում ընկած է կարգապահությունը։ 1968 թ. սովխոզը չկատարեց խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակի, կաթի համախառն արտադրության և ֆուրաժային կովի կաթնատվության, պետությանը կաթ վաճառելու պլանային առաջադրանքները։ Մեկ տարվա ընթացքում սովխոզում մոտ 2000 գլուխ մանր եղջերավոր անասուններ հարկադրաբար մորթել են։

Կատարման ստուգումը բարելավելու համար անհրաժեշտ է հաշվի առնել և իրագործել կոմունիստների քննադատական դիտողություններն



ու արժեքավոր առաջարկությունները։ Իմանալով դրա կարևորությունը, կուսշրջկոմն ամենայն հետևողականությամբ հաշվի է առնում սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և շրջանային կոնֆերանսում կուսակցական, սովետական ու տնտեսական օրգանների գործունեությանը վերաբերող քննադատական դիտողություններն ու առաջարկությունները և միջոցառումներ մշակում դրանց կենսագործման համար։

Փորձը ցույց է տալիս, որ կատարման ստուգումը դրական արդյունք է տալիս, երբ այդ գործում ընդգրկվում են կուսակցական և անկուսակցական լայն մասսաները, երբ վերևից ու ներքևից ստուգումները զուգակցվում են։ Ստուգումը վերևից (երբ ղեկավարները ստուգում են ղեկավարվողներին) մարդկանց ճիշտ ընտրության և առաջադրանքների կատարման ստուգման գործարար միջոցառումներից մեկն է։ Սակայն դա բավական չէ։ Վերևից իրականացվող ստուգումը պետք է լրացվի ներքևից եկող ստուգմամբ, երբ մասսաներն իրենք են վերահսկում իրենց ղեկավարներին, քննադատում նրանց թերություններն ու սխալները։

Խոշոր դեր են կատարում նաև կուսկազմակերպությունների՝ ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքն իրականացնող հանձնաժողովները, ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը։ Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական, առևտրական կազմակերպությունների և սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններին կից ստեղծված են ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող 10 հանձնաժողով, ուր ընդգրկված են 50 կոմունիստ։ Բացի այդ, հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում կան ժողովրդական վերահսկողության 15 խումբ և 49 պոստ, ուր ընդգրկված են 435 հոգի։ Սրանք սիստեմատիկաբար ստուգում են վերադաս օրգանների և տվյալ կազմակերպությունների ընդունած որոշումների կենսագործման ընթացքը, պայքարում անտարբերության, անտնտեսվարության, վատնում-յուրացումների և հափշտակումների դեմ։

Ղուկասյանի շրջանի աշխատավորները պատրաստվում են նշելու մարդկության մեծագույն հանճար Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։ Ամենուր լայն մրցություն է ծավալվել։ Կուսակցական կազմակերպությունները, վերացնելով կատարման ստուգման գործում եղած թերությունները, կապահովեն կուսակցության ու կառավարության դիրեկտիվների անշեղ կենսագործումը և արժանավայել կդիմավորեն մեծ տարելիցը։



**Ս. Ա. ՋԻՐՈՅԱՆ**
Արփա—Սևան կառույցի Մարտունու շինվարչության
սկզբնական կուսկազմակերպության քարտուղար

# ԴԺՎԱՐԻՆ ՏԵՂԱՄԱՍՈՒՄ

*Հինգ տարի առաջ էր, որ սկիզբ դրվեց Արփա—Սևան թունելի շինարարությանը։ Ստորգետնյա ջրատար ուղին, որը կանցնի Վարդենիսի լեռների ստորոտով, Ծովինար գյուղից ձգվում է մինչև Կեչուտ։ Մարտունու շինվարչության կոլեկտիվը ջանք ու եռանդ չի խնայում այդ ջրատար ուղու շինարարական աշխատանքները բարձր որակով կատարելու նպատակով։*

*Թունելի շինարարությանը մասնակցելու համար երկրի տարբեր կողմերից տարիներ առաջ Մարտունի են եկել հարյուրավոր մարդիկ։ Այստեղ միասին են աշխատում հայն ու վրացին, ռուսն ու ուկրաինացին, բելոռուսն ու ադրբեջանցին, թաթարն ու չուվաշը, լատիշն ու մոլդավացին... Նրանք եկել են իրենց ինտերնացիոնալ պարտքը կատարելու, նվազող Սևանին ջուր տալու համար։*

*Փոքրիկ գյուղ է Ծովինարը՝ Սևանին կպած։ Այն քարտեզներում չի նշված։ Ծովինարի տասնմեկերորդ թունելախորշը, որով բացվում է Սևան թափվող ջրի հունը, մեր շինվարչության կարևորագույն տեղամասերից է, որտեղ պատրաստի թունելի երկարությունն արդեն հասնում է 3.568 մետրի։*

*Շինարարությունում կան իրենց գործը սիրող, հմուտ ու փորձված թունելագործներ։ Հրաչիկ Գասպարյանի, Հակոբ Ղազարյանի, Մարտուն Հովհաննիսյանի, Երեմ Ստեփանյանի, Աղաբեկ Ավդալյանի, Գրիշա Մուրադյանի, Վիկտոր Գրիցենկոյի, Մելիք Սեդրակյանի և շատ շատերի ջանքերով է, որ օր-օրի տեղի են տալիս լեռները, և մոտենում է այն նվիրական պահը, երբ Արփայի փրփրաբաշ ջրերը կթափվեն Սևան։*

*Ինչպես միշտ, ավանգարդում են կոմունիստները։ Ահա, օրինակ, կոմունիստ բրիգադավար Հրաչիկ Գասպարյանը։ Ծովինարցի է նա։ Թունելի շինարարության առաջին օրերից կառույց է եկել ու դարձել հմուտ հորատող։ Նրա գլխավորած բրիգադան 1968 թ. հորատանցման առաջադրանքը կատարեց 115 տոկոսով, փորելով 280 մետր թունել։ Իր նախաձեռնությամբ Գասպարյանը ծովինարցի 40-ից ավելի երիտասարդների ընդգրկել է թունելի շինարարության աշխատանքներում, սովորեցրել հորատողի դժվարին ու բարդ մասնագիտությունը։ Լավ աշխատանքի համար Գասպարյանը պարգևատր-*



*վել է «Պատվո Նշան» շքանշանով և երկու տարի անընդմեջ ընտրվել Ծովինարի տեղամասի կուսակցական խմբի ղեկավար։*

*Տեղամասում իր օրինակելի աշխատանքով աչքի է ընկնում նաև կոմունիստ հորատող Մարտուն Հովհաննիսյանը։ Կիրովականցի է Մարտունը, Արփա—Սևան կառույց է եկել երկու տարի առաջ՝ ՀԿԿ Կիրովականի քաղկոմի ուղեգրով։ Նա իր առաջադրանքը սիստեմատիկաբար կատարում է 125—130 տոկոսով։*

*Մեծ կառույցի առաջավոր շինարարներից են նաև կոմունիստ հորատող Ժուլվեռն Կարապետյանը, հերթափոխի բրիգադավար, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Հակոբ Ղազարյանը, լեռնային վարպետ Երեմ Ստեփանյանը և շատ ուրիշներ։ Տեղամասի շատ թունելագործներ լավ աշխատանքի համար արժանացել են շքանշանների և մեդալների, պարգևատրվել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով։*

*Մարտունու շինվարչության աշխատանքային տեղամասերից են նաև Վարդենիսի լեռներում գտնվող երրորդ և չորրորդ ուղղահայաց հորանները և դրանց թունելախորշերը։ 365 մետր խորություն ունի չորրորդ հորանը, որի ստորոտից աջ ու ձախ ձգվում են իններորդ (դեպի Արփա) և տասներորդ (դեպի Սևան) տանող թունելախորշերը։ Թեպետ չեն ավարտված ընդերկրյա թունելային դարպասի շինարարական աշխատանքները, բայց հորատողները չեն կորցնում ժամանակը, ձեռնամուխ են եղել հորիզոնական առաջանցմանը։ Իններորդ թունելախորշում արդեն փորվել է 86, իսկ տասներորդում՝ 95 մետր թունել։ Կանցնի ևս մեկ-երկու ամիս, այս տեղամասի կոլեկտիվը, ավարտելով հորանի մոնտաժումը, իր բոլոր ուժերը կգործադրի հորիզոնական թունելների փորման վրա։*

*Այստեղ պետք է նշել տեղամասի պետ, վաստակավոր շինարար, կոմունիստ Իվան Նուժնիի անբասիր աշխատանքը, որն ուժ ու եռանդ չի խնայում պլանների անթերի կատարումն ապահովելու համար։*

*Այստեղ են աշխատում հորատողներ Գևորգ Միրզոյանը, Ենգիբար Սերոբյանը, Կոլյա Լավրենտևը, անվանի թունելագործներ՝ Միխայիլ Մանանյանը, Շալիկո Սահակյանը, Իլյա Կոնիլովը, Վանիկ Ղազարյանը և շատ ուրիշներ, որոնց պայքարի նշանաբանն է՝ օր առաջ ավարտել թունելային դարպասի կառուցումը։ Գևորգ Միրզոյանի գլխավորած հորատողների բրիգադը ամենօրյա առաջադրանքները կատարում է 170—180 տոկոսով։*

*Վարդենիսի ձյունածածկ լեռների գրկում, ծովի մակերևույթից ավելի քան 2600 մետր բարձրության վրա է գտնվում մեծ կառույցի՝ 668 մետրով դեպի երկրի ընդերքը ձգվող երրորդ ուղղահայաց հորանը։ Տեղամասի մարդիկ անցած տարի հերոսական գործ կատարեցին ջրահանգույցի ամենախոր հորանի փորման աշխատանքները սահմանված ժամկետում ավարտելու համար։*

*Բայց դժվարությունները դեռ առջևում են։ Տեղամասում պետք է արագացնել ընդերկրյա թունելային դարպասի շինարարական աշխատանքները, որպեսզի պայմաններ ստեղծվեն յոթերորդ և ութերորդ թունելախորշերի հորիզոնական հորատման համար։*

*Արփա—Սևան թունելի Մարտունու շինվարչության սկզբնական կուսկազմակերպությունը, որն իր շարքերում միավորում է 83 կոմունիստ, անում է ամեն ինչ՝ համաժողովրդական կառույցի շինարարությունն արագացնելու համար։ Միայն անցած տարի կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում կուսկազմակերպությունը տասնմեկ անգամ անդրադարձել է շինարա-*

րության հարցերին, միջոցառումներ է մշակել նկատվող թերությունները վերացնելու համար։ Անցած տարի, օրինակ, կուսկազմակերպության նախաձեռնությամբ ստուգվեց չորրորդ հորանի շինարարության որակը։ Պարզվեց, որ ցեմենտը շռայլելու և նպատակին չծախսելու հետևանքով 150 մետր խորությամբ հորանի պատերի մեկուսացումը կատարվել էր անորակ։ Այդ պատճառով հորան էր լցվում մեծ քանակությամբ ջուր, որը խանգարում էր աշխատանքներին։ Ժողովում մերկացվեցին մեղավորները։ Գործը հանձնվեց քննչական օրգաններին, և շռայլված շուրջ 150 տոննա ցեմենտի արժեքը վերագանձվեց մեղավորներից։

Կուսկազմակերպությունն իր ամենօրյա ուշադրության կենտրոնում է պահում նաև բանվորների շրջանում ծավալվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը, նրանց կուլտուրական սպասարկումը։ Բոլոր երեք տեղամասերում էլ գործում են ակումբ-գրադարաններ, որտեղ թունելագործների համար հաճախակի կազմակերպվում են զեկուցումներ, զրույցներ, հարց ու պատասխանի երեկոներ և զանազան խաղեր։ Գործում են ստացիոնար կինոկետեր։

Արփա—Սևան ժողովրդական կառույցն օր առաջ շահագործման հանձնելու համար մեր շինվարչության թունելագործները քիչ բան չեն արել։ 1968 թ. շինարարական աշխատանքների պլանը շինվարչությունը կատարել է 101,5 տոկոսով։ Միայն հունվար ամսում փորվել է 80 մետր թունել։

Սակայն մեր շինտեղամասը և թունելագործներն ունեն նաև իրենց հուզող հարցերը, որոնց լուծման վրա էլ ուզում ենք հրավիրել համապատասխան կազմակերպությունների ուշադրությունը։ «Հայհիդրոէներգոշինը» անբավարար է զբաղվում մատակարարման գործով։ Բավական է ասել, որ այս տարվա հունվար ամսվա համար պլանով նախատեսված 600-ի դիմաց, տրամադրվել է ընդամենը 260 տոննա ցեմենտ։ Նույնը պետք է ասել նաև շինափայտի (տախտակի) մատակարարման մասին։ Հաճախ տախտակ չլինելու պատճառով ամրակապման աշխատանքները դադարեցվում են։

Շինարարությանն անհրաժեշտ են հորատող նոր մեքենաներ, ջրատար խողովակներ, էլեկտրաքարշներ, էքսկավատորներ, պանելակիր ավտոմեքենաներ ու այլ տեխնիկա։ Ներելի՞ է, օրինակ, որ եղած 100 վագոնիկներից թունելախորշում օգտագործվում են ընդամենը 10-ը, իսկ մնացածները, անհրաժեշտ պահեստամասեր չլինելու պատճառով, չեն նորոգվում և անպետք են։

Բանվորական մատակարարման բաժնի առևտրական բազան վատ է սպասարկում շինարարությանը։ ԲՄԲ-ի պետը, որի մշտական աշխատանքի վայրը Հրազդանն է, ամիսներով չի լինում Արփա—Սևան կառույցի Մարտունու տեղամասերում։ Խանութներում ու ճաշարաններում չեն վաճառվում կաղամբ, կարտոֆիլ, սոխ, կաթ, ձու և այլ մթերքներ։

Օր-օրի հյուսվում է Արփա—Սևան մեծ կառույցի տարեգրությունը։ Շինվարչության կուսկազմակերպությունը և թունելագործների ողջ կոլեկտիվն իրենց պարտքն են համարում հաղթահարել դժվարությունները, 1969 թվականը դարձնել նոր նվաճումների տարի, մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը դիմավորել աշխատանքային նորանոր սխրանքներով։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԼՐԻՎ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

ՍՄԿԿ Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերյան պլենումը, որը «Գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների կատարման ընթացքի մասին» լսեց Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, հանրագումարի բերեց վերջին տարիներին գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած որոշակի հաջողությունները և, միաժամանակ, միջոցառումներ նշեց նրա հետագա առաջընթացի համար։

Գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծումը, առաջին հերթին, պայմանավորված է բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացմամբ։ Դա մեր հանրապետության համար առավել կարևոր նշանակություն ունի, քանի որ Հայաստանը հողասակավ է, շատ հնարավորություններ չունի ցանքատարածությունները լայնորեն ընդարձակելու։ Մնում է, որ մեզ մոտ բարձրացնենք երկրագործության ինտենսիվացման մակարդակը, ոռոգման, քիմիացման ու աշխատանքի մեքենայացման միջոցով ամեն կերպ ավելացնենք գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և ապահովենք հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների անթերի կատարումը։

Երկրագործության կուլտուրայի բարձրացման և այդ ճանապարհով բերքատվության ավելացման ամենակարևոր միջոցառումներից մեկը ցանքաշրջանառությունն է։ Այդ է վկայում հանրապետության մի քանի շրջանների և բազմաթիվ կոլտնտեսությունների ու սովխոզների փորձը։ Այսպես. Անիի, Արթիկի, Ախուրյանի շրջանների կոլտնտեսություններում և սովխոզներում հիմնականում ավարտված է ցանքաշրջանառությունների կիրառումը։ Այդ և մի շարք այլ միջոցառումների իրականացման շնորհիվ Արթիկի շրջանը 1966 թ. մեկ հեկտարից միջին հաշվով ստացել է 26,1, 1967-ին՝ 22,7 և 1968-ին՝ 21,6 ցենտներ հացահատիկի բերք, Անիի շրջանը՝ համապատասխանաբար 18,6, 22,1, 17,2, Ախուրյանի շրջանը՝ 15,4, 19,8, 16,6 ցենտներ և այլն։

Առավել բարձր բերք են ստացել առանձին կոլտնտեսություններ ու սովխոզներ։ Այսպես, Արթիկի շրջանի Հայրենյաց գյուղի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ն. Հարությունյան) 1966—1968 թվականներին մշակել է 368—382 հեկտար հացահատիկ և հեկտարից (1966 թվականին) ստացել 21,6, 1967 թվականին՝ 29,5, 1968 թվականին՝ 40,1 ցենտներ միջին բերք։ Նույն շրջանի

Վարդաքարի կոլտնտեսությունը (նախագահ՝ Պ. Գալստյան) վերջին երեք տարում հեկտարից միջին հաշվով ստացել է 32, Անիի շրջանի Մարալիկի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ս. Նազարյան)՝ 28, Ջիթհանքովի կոլտնտեսությունը (նախագահ՝ Մ. Մկրտչյան)՝ 27,5, Ախուրյանի շրջանի Ազատանի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ե. Մովսիսյան)՝ 22, Ախուրյանի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ս. Եղիազարյան)՝ 23 ցենտներ բերք։

Ցանքաշրջանառության անխախտ կիրառման շնորհիվ բարձր ու կայուն բերք են ստացել նաև այլ կոլտնտեսություններ, սովխոզներ և բազմաթիվ բրիգադաներ։ Սակայն, պետք է խոստովանել, որ հանրապետությունում, ընդհանուր առմամբ վերցրած, ցանքաշրջանառությունը դեռևս դանդաղ է կիրառվում։ Ընթացիկ տարվա հունվարի 1-ի դրությամբ եղած 763 կոլտնտեսություններից ու սովխոզներից ցանքաշրջանառությունը կիրառված է 521-ում, որից 372-ը կոլտնտեսություններ են, 149-ը՝ սովխոզներ։ Բայց դրանցից միայն 106 կոլտնտեսությունում և 50 սովխոզում է, որ ցանքաշրջանառություն կիրառված է, իսկ մնացածում այն տասնյակ տարիներ մնացել է թղթի վրա։ Էլ չենք ասում այն մասին, որ 242 կոլտնտեսությունում ու սովխոզում առհասարակ բոլորովին ցանքաշրջանառություն չի եղել։

Ալավերդու, Հրազդանի, Ազիզբեկովի, Ղուկասյանի, Սիսիանի, Սևանի և այլ շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում փաստորեն ուշադրություն չի նվիրվում ցանքաշրջանառության կիրառմանը։ Այդ է պատճառը, որ տվյալ շրջանների տնտեսությունները հեկտարից ստանում են հացահատիկ՝ 6—10, ծխախոտ՝ 8—10, բազմամյա խոտաբույսեր՝ 16—18, կարտոֆիլ՝ 45—50, բանջարեղեն՝ 25—55 ցենտներ, որը շատ քիչ է ու երբեք չի բավարարում այսօրվա պահանջը։

Ցանքաշրջանառությունն արդյունավետ կիրառելու նպատակով հանրապետության հողագիտության ու ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտը պատրաստել ու տնտեսություններին է հանձնել հողագիտական ու քիմիական պարարտացման քարտեզները։ Բայց, դժբախտաբար, բերքատվության բարձրացման այս կարևոր միջոցը մոռացված ու խելացի չի օգտագործվում, որի հետևանքով շատ դեպքերում հողին չեն տրվում պահանջվող քանակությամբ պարարտանյութեր։ Ավելին, չիմանալով հողի պարարտացման տարրական կանոնները, առանձին տեղերում հողին տալիս են միայն սելիտրա-ազոտային նյութեր, որով իջնում է բերքի որակը։

Վերջին տարիներին ընդհանուր պարարտանյութերի բաժնում խիստ նվազել է օրգանական պարարտանյութերի տեսակարար կշիռը։ Անցյալում մեր հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզներն ամեն տարի դաշտերն են տեղափոխել 1,5—1,8 միլիոն տոննա գոմաղբ, որը լիարժեք ու բարձրորակ տեղական պարարտանյութ է։ Այժմ հեղուկ և բնական գազի օգտագործումը հնարավորություն է տալիս ավելի շատ գոմաղբ փոխադրել դաշտ, բայց, չնայած դրան, ներկայումս դաշտ տեղափոխվող գոմաղբը 0,7—0,8 միլիոն տոննայից չի անցնում։ Մինչդեռ շատ հողատարածություններ (նոր իրացվող ղռերը, կրային ու ավազային հողերը) անհրաժեշտ է պարարտացնել օրգանական պարարտանյութերով, հատկապես գոմաղբով։ Պարարտացման գործը լավ կազմակերպելու շնորհիվ 25—35 տոկոսով կբարձրանա բոլոր կուլտուրաների բերքատվությունն ու միաժամանակ կբարելավվի բերքի որակը։

Հայաստանի բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնք ցանքը կատարում են սորտային սերմերով, ավելի բարձր բերք են ստանում։ Փորձը ցույց է տվել, որ սելեկցիոն և բարելավված սերմերն ավելի դիմացկուն են և 20—25 տոկոսով բարձր բերք են տալիս։



Վարդենիկի (Մարտունու շրջան), Նորակերտի (Բասարգեչարի շրջան), Հացիկի (Ախուրյանի շրջան), Նորավանի (Սիսիանի շրջան), Կամոյի (Կամոյի շրջան), Կույբիշևի (Ստեփանավանի շրջան) և այլ սովխոզներ ու կոլտնտեսություններ բարելավել են սորտային սերմերի արտադրությունը և բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստացել։ Այս տնտեսություններում մեկ հեկտարից միջինն ստացել են հացահատիկ՝ 18—22, կարտոֆիլ՝ 110—150, կորնգան (սերմացու)՝ 13—16, կորնգանի խոտ՝ 40—45 ցենտներ և այլն։ Իսկ Կրասնոսելսկի, Սևանի, Եղեգնաձորի, Աբովյանի, Հրազդանի, Աշտարակի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները անորակ սերմացուներ ցանելու պատճառով հեկտարից ստացել են հացահատիկ՝ 6—11, կորնգանի սերմացու՝ 2,5—4, կորնգանի խոտ՝ 12—18 ցենտներ։

Հաշվի առնելով այս ամենը, յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ պարտավոր է հոգալ սեփական սերմացուի համար (բացի ծխախոտի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի որոշ տեսակների սերմերից, խաղողի ու պտղատու տնկիներից)։ Այդ նշանակում է, որ հացահատիկային կուլտուրաներ մշակող տնտեսությունները պետք է զբաղվեն սեփական սերմացուների արտադրությամբ։ Դրա խելացի ու ժամանակին կազմակերպմամբ հնարավոր կլինի 18—22 տոկոսով բարձրացնել մշակվող կուլտուրաների բերքատվությունը։ Այդ նպատակով յուրաքանչյուր տնտեսություն պետք է ունենա սերմադաշտեր և լավ խնամի դրանք։ Սերմադաշտերում պետք է ցանվեն պետական տնտեսություններից ստացած տեսակավոր սերմացուներ։

Հայաստանում առանձնացված են մի շարք տնտեսություններ, որոնք զբաղվում են տեսակավոր սերմնաբուծությամբ։ Նրանք արտադրում և կոլտնտեսություններին են հանձնում ու վաճառում հացահատիկային բոլոր կուլտուրաների, խոտաբույսերի և կարտոֆիլի էլիտա, սուպեր էլիտա և առաջին տեսակի սերմացուներ։ Առանձնացված են հացահատիկային 10 տնտեսություն, այդ թվում՝ Աբովյանի շրջանի Աբովյանի անվան սովխոզը, ծխախոտի պետական կայանը, Գորիսի շրջանի «Զանգեզուր», Իջևանի շրջանի Աչաջրի, Մարտունու շրջանի Լիճքի, Սիսիանի շրջանի Նորավանի, Ստեփանավանի շրջանի Կուրթանի սովխոզները, ինչպես նաև Էջմիածնի երկրագործության գիտահետազոտական ինստիտուտը։ Այս տնտեսությունները տարեկան կարտադրեն ավելի քան 24 հազար ցենտներ բարձր տեսակի սերմացու, որով կապահովեն մեր հանրապետության պահանջները։ Ցավոք, առանձին սերմնաբուծական տնտեսություններ, ստանալով տեսակավոր սերմացուներ, դրանք ծառայեցնում են այլ նպատակի, որը երբեք չի կարելի։

Կարտոֆիլի սերմնաբուծության հարցը լուծելու նպատակով նույնպես առանձնացված են համապատասխան տնտեսություններ։ Այդպիսիք են՝ Կալինինոյի շրջանի Նորաշենի, Կամոյի շրջանի Կամոյի, Կրասնոսելսկի շրջանի Կրասնոսելսկի, Ստեփանավանի շրջանի Կույբիշևի սովխոզները և Շամշադինի շրջանի Ղրղի կոլտնտեսությունը, որոնք տարեկան կարտադրեն ավելի քան 32.000 ցենտներ կարտոֆիլի տեսակավոր սերմացու, որով և կապահովվի կարտոֆիլաբուծությամբ զբաղվող կոլտնտեսությունների ու սովխոզների՝ սերմադաշտեր ստեղծելու պահանջը։

Անասնապահության կերի բազայի ստեղծման, հողերի կառուցվածքի

բարելավման և ցանքաշրջանառությունների անցկացման համար վճռական նշանակություն ունի արոտամարգագետնային խոտերի մշակությունը։ Հաշվի առնելով այս, Ամասիայի շրջանի Բանդիվանի, Կալինինոյի շրջանի Շահնազարի և Կալինինոյի, Կամոյի շրջանի Կամոյի, Մարտունու շրջանի Գեղահովտի, Սիսիանի շրջանի Սառնակունքի, Թալինի շրջանի Թալինի սովխոզները և Ստեփանավանի շրջանի Վարդաբլուրի կոլտնտեսությունն ընթացիկ տարվանից կարտադրեն արոտամարգագետնային խոտերի մոտ 2 հազար ցենտներ սերմացու, որը հնարավորություն կընձեռի ամեն տարի 10—12 հազար հեկտարով ավելացնելու խոտամարգագետնային տարածությունները և պայքարելու հողերի էռոզիայի դեմ։ Սակայն մեր սովխոզներն ու կոլտնտեսություններն իրենց հույսերը չպետք է կապեն միայն այդ տնտեսությունների հետ։ Նրանք, իրենց հերթին, պետք է կազմակերպեն այդ սերմացուների արտադրությունը։

Երկրագործական կուլտուրաներից բարձր բերք ստանալու համար անհրաժեշտ է ապահովել նաև յուրաքանչյուր հեկտարի վրա մշակվող այս կամ այն բույսերի, սածիլների, թփերի, տնկիների, վազերի համապատասխան քանակ։

Երկար տարիների ուսումնասիրությունները ցույց են տվել, որ այն կոլտնտեսությունները, սովխոզները, բրիգադներն ու օղակներն են բարձր բերք ստանում, որոնք յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովում են բույսերի համապատասխան քանակ։ Այսպես, մեկ հեկտարի վրա պետք է ապահովել հացահատիկի 6—6,5 միլիոնից ոչ պակաս բույս։ Բայց իրականում այն (լավագույն դեպքում) 3,5—4 միլիոն է։ Նշենք և այն, որ բանջարեղենի մեկ հեկտարի վրա պետք է ապահովել 45—50, կարտոֆիլի՝ ոչ պակաս 40 հազար բույս և այլն։

Ագրոկանոններով հաստատված է, որ մեկ հեկտարի վրա պետք է սածիլվի 100—130 հազար ծխախոտի բույս, բայց վերջին տասը տարվա ուսումնասիրությունները ցույց են տվել, որ (հանրապետության մասշտաբով) ապահովվում է միայն դրա 65—70 տոկոսը, որը, բնականաբար, չի ապահովում բարձր բերքի ստացումը։ Ահա թե ինչու գյուղատնտեսության առաջավորները, ինչպիսիք, ասենք, Շամշադինի շրջանի ծխախոտագործներն են, բոլոր միջոցառումների հետ միասին առաջնահերթ տեղը տալիս են մեկ հեկտարում պահանջվող բույսերի քանակի պահպանմանը։ Դրա շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից շրջանի միջին բերքը վերջին 10—15 տարում հասել է 25—33 ցենտների։ Իսկ առանձին կոլտնտեսություններ (Մովսեսգյուղ, Վ. Կարմիր աղբյուր, Նորաշեն, Ղրղի) միջինը հեկտարից ստանում են 33—41 ցենտներ ծխախոտ։ Այստեղ մեկ հեկտարից (դրամական արտահայտությամբ) շրջանի մասշտաբով ստանում են 6000—6200, իսկ Մովսես գյուղի, Ղրղիի և այլ տնտեսություններում՝ 7000 ռուբլու եկամուտ։ Վերջին երեք տարում Մարտունու շրջանի ծխախոտի պլանտացիաներում մեկ հեկտարի վրա ապահովում են 100—110 հազար բույս, որի շնորհիվ ծխախոտի արտադրության տարեկան պլանը կատարվում է 135—145 տոկոսով։ Նույնը կարելի է ասել Կամոյի, Բասարգեչարի, Արարատի, Աշտարակի, Աբովյանի շրջանների շատ տնտեսությունների մասին։

Մեկ հեկտարի վրա անհրաժեշտ քանակությամբ բույսերի ապահովումը բարձր բերքի երաշխիք է նաև բանջարաբուծության բնագավառում։ Այսպես, Արտաշատի շրջանի Այգեզարդի կոլտնտեսությունը (նախագահ՝ Հ. Սար-



գսյան) այդ ճանապարհով վերջին երեք տարիներին հեկտարից միջին հաշվով ստացել է մոտ 500, Էջմիածնի շրջանի Արագած կոլտնտեսությունը (նախագահ՝ Լ. Հակոբյան)՝ 510, Հոկտեմբերյանի շրջանի Ջանֆիդայի կոլտնտեսությունը (նախագահ՝ Կ. Հարությունյան)՝ 450 ցենտներ բանջարեղեն։

Այս տեսակետից բնորոշ է շաքարի ճակնդեղագործների հարուստ և ուսանելի փորձը։ Մեր հանրապետությունում հայտնի են Ախուրյանի շրջանի ճակնդեղագործների նվաճումները։ Նրանք վերջին 5 տարում մեկ հեկտարից միջինը ստացել են մոտ 300, իսկ Ղարիբջանյանի կոլտնտեսությունը՝ 410—415, Ազատանի կոլտնտեսությունը՝ 350 ցենտներ բերք։ Ավելի բարձր ցուցանիշների են հասել առանձին բրիգադներ։ Այսպես, Ախուրյանի շրջանի կոլտնտեսության ճակնդեղագործ, սոցիալիստական աշխատանքի հերոս Մ. Շահբազյանն իր մշակած հողատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 570, Ս. Հովհաննիսյանը՝ 450, Հ. Պողոսյանը՝ 530 ցենտներ բերք։ Առաջավոր ճակնդեղագործները գործը վարում են այնպես, որ ոչ մի թիզ հող չմնա անմշակ, յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովվի բույսերի սահմանված քանակը։ Այս ռեզերվի վրա պետք է լուրջ ուշադրություն դարձնել, որը հնարավորություն կտա զգալի չափով բարձրացնելու բերքատվությունը։

Հողերը լիարժեք օգտագործելու և մեկ հեկտարից ավելի շատ բերք ստանալու հարուստ փորձ ունեն Ախուրյանի շրջանի մեխանիզատորները։ 15 տարի առաջ նրանք կոչ արեցին՝ ոչ մի կտոր հող չթողնել առանց վարելու, այսինքն՝ պայքարել հողերի խոպանացման դեմ։ Նրանք հարյուրավոր հեկտար խամ ու խոպան հողեր մշակեցին։ Արտաշատի շրջանի հողագործները պայքարի ելան հարուստ հեկտարի համար լոզունգով։ Նրանց նպատակն էր՝ մեկ հեկտարից ավելի շատ բերք ստանալ։ Այս երկու շարժման նախաձեռնողները կոմերիտականներն էին։ Նրանց ջանքերն ապարդյուն չանցան։ Բայց անհասկանալի պատճառներով կոմերիտական օրգանները մինչև վերջ չգլխավորեցին այդ շարժումը։

Բերքատվության բարձրացման կարևոր գործոններից մեկը՝ հողերի մելիորացիան է։ Սովետական իշխանության տարիներին մեր հանրապետությունում մեծ գործ է կատարվել ջրաշինարարության ուղղությամբ։ Ներկայումս Սովետական Հայաստանն ունի ջրանցքների, ջրամբարների խիտ ցանց, որի շնորհիվ մոտ 300 հազար հեկտարը դարձել է ոռոգելի, իսկ 200 հազարը՝ ջրարբի։ Բայց, դժբախտաբար, մեզ մոտ ջուրն օգտագործվում է մեծ կորուստներով, որի հետևանքով բույսերը ժամանակին ու բավարար չափով ջուր չեն ստանում։ Այդ, առաջին հերթին, վերաբերում է Էջմիածնի, Շահումյանի, Արտաշատի, Աշտարակի և այլ շրջաններին։ Շատ տնտեսություններում ցանքատարածությունները ճահճացնելու պատճառով փչանում են բույսերը, վազերը, պտղատու ծառերը և այլն։ Այս տեսակետից դրությունն անմխիթար է Արտաշատի շրջանի՝ Շահումյանի, Արարատի շրջանի՝ Տիրապլուի, Էջմիածնի շրջանի՝ Վ. Խաթունարխի, Ջրառատի, Ալավերդու շրջանի՝ Ղաչաղանի տնտեսություններում։ Ինչպես նշված, այնպես էլ շատ տնտեսություններում ջուրն արդյունավետ չի օգտագործվում։ Օրվա որոշ ժամերին, հատկապես գիշերները, ջուրը հոսում է ապարդյուն, մինչդեռ ցանքատարածությունների գիշերային ոռոգումն առավել մեծ արդյունք է տալիս։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում վճռական նշանակություն ունի ցանքի ու բերքահավաքի ժամկետների պահպանումը։ Բայց շատ դեպքերում այս կարևոր հանգամանքը թերագնահատ-

վում կամ խախտվում է։ Հանրապետության նախալեռնային ու լեռնային շրջաններում ցանքերի և դրանց մշակման աշխատանքները հաճախ կատարվում են առանց բնական պայմանները, այս կամ այն կուլտուրայի բիոլոգիական առանձնահատկությունները հաշվի առնելու, որը ցածր բերքի հիմնական պատճառներից մեկն է։

Հողի բերրիությունը և այլ հնարավորություններ լրիվ օգտագործելու համար ագրոտեխնիկական այս կամ այն միջոցառման ժամկետ սահմանելիս անհրաժեշտ է հաշվի առնել մշակվող կուլտուրայի և դրա սորտի առանձնահատկությունները, ինչպես նաև շրջանի, կոլտնտեսության, սովխոզի հողակլիմայական պայմանները։ Գարնանացանի ժամկետները նախօրոք չեն որոշվում, պայմանավորված չեն օրացուցային ժամկետներով։ Այս կամ այն կուլտուրայի ցանքի առավել ընդունելի ժամկետ ընտրելիս հաշվի է առնվում սերմերի ծլման համար պահանջվող ջերմաստիճանն ու ծիլերի դիմացկունությունը։ Երկրագործները պետք է լավ իմանան, որ այն կուլտուրաները, որոնց սերմերի ծլման համար բարձր ջերմություն չի պահանջվում և որոնց ծիլերը լավ են դիմանում գարնանային վերջին ցրտահարություններին, կարող են վաղ ցանվել։ Իսկ այն կուլտուրաները, որոնց սերմերի ծլման համար ավելի բարձր ջերմություն է պահանջվում, և ծիլերը տուժում են գարնանային ուշ ցրտահարություններից, պետք է ուշ ցանվեն, երբ հողը բավականաչափ տաքացած է և գարնանային ցրտահարությունների վտանգն անցած է։ Վաղ գարնանացանի առավելությունը հատկապես այն է, որ լրիվ է օգտագործվում հողում եղած ջրի պաշարը, մինիմումի են հասնում ջրի անարդյունավետ ծախսումները։ Գարնանային վաղ ժամկետներում ցանքի կատարումը բացառիկ կարևոր նշանակություն ունի մեր հանրապետության չորային շրջաններում (Աշտարակ, Աբովյան, Թալին, Եղեգնաձոր, Ղափան և այլն), որտեղ ցանքի նույնիսկ մեկ—երկու օր ուշացումը կարող է կործանարար հետևանքներ ունենալ։

Վաղ ցանքի դեպքում գարնանացան հացահատիկները շուտ են հասունանում, դիմանում են շոգին և երաշտին, պաշտպանվում են վնասատուներից և հիվանդություններից։ Ժամանակին կատարված ցանքը (հաշվի առնելով տարվա բնական պայմանները, մշակվող սորտերի բիոլոգիական առանձնահատկությունները) որոշում է բերքի քանակը և որակը։

Սովետական Հայաստանի գյուղի մարդիկ ձեռնամուխ են եղել հնգամյակի չորրորդ տարվա գյուղատնտեսական աշխատանքներին։ Նրանց նշանաբանն է՝ ընթացիկ տարում ստանալ համախառն բերք— հացահատիկ՝ 264 հազար տոննա, շաքարի ճակնդեղ՝ 118 հազար, ծխախոտ՝ 14 հազար, գերան՝ 27 հազար, կարտոֆիլ՝ 100 հազար, բանջարեղեն՝ 196 հազար, բոստանային կուլտուրաներ՝ 84 հազար, խաղող՝ 173 հազար, պտուղ՝ 60 հազար տոննա։ Իսկ անասնաբուծությունից՝ միս՝ 51 հազար, կաթ՝ 236 հազար, բուրդ՝ 3 հազար տոննա և 99 միլիոն հատ ձու։

Մեր հանրապետության գյուղատնտեսության աշխատողները պատվով կկատարեն իրենց վերցրած պարտավորությունները և աշխատավոր մարդկության մեծ ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական կարգերի ստեղծման 50-րդ տարեդարձը կդիմավորեն արժանավայել։

Ռ. Տ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԳՆՄԱՆ ԳՆԵՐԸ

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումը, քննության առնելով գյուղատնտեսության վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի և նրան հաջորդող պլենումների որոշումների կատարման ընթացքի հարցը, գոհունակությամբ նշեց, որ դրանց կենսագործումը հաջողությամբ է ընթանում և արդեն շոշափելի արդյունքներ կան, որոնք հաստատում են ձեռնարկված միջոցառումների արդյունավետությունը։

Կոլտնտեսությունների համար հատկապես կարևոր նշանակություն ունեցավ գյուղատնտեսական մթերքների իրացման պայմանների և գնման գների կատարելագործմանն ուղղված միջոցառումների կենսագործումը։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տարբեր էտապներում գոյություն ունեցող մթերման ձևերը և գների մակարդակը, չնայած թույլ տրված առանձին սխալներին, հիմնականում սահմանվել են, ելնելով սոցիալիստական պետության առջև ծառացած տնտեսական կոնկրետ խնդիրներից։

Վերջին տարիներին երկրում մեծ աշխատանք կատարվեց գյուղատնտեսական մթերքների և գյուղատնտեսությանը մատակարարվող արդյունաբերական ապրանքների գների կատարելագործման ուղղությամբ։ Գյուղատնտեսական մի շարք հիմնական մթերքների գնման գների նշանակալի բարձրացման շնորհիվ մեծ չափով նվազեց, իսկ առանձին մթերքների գծով վերացվեց գնման գների և նրանց հիմքի՝ ինքնարժեքի միջև գոյություն ունեցող խզումը։ Դրանով շատ կոլտնտեսություններում որոշակի պայմաններ ստեղծվեցին շահութաբեր աշխատանքի համար։ Այդ մասին է վկայում հանրապետության գյուղատնտեսության տրադիցիոն վնասաբեր ճյուղի՝ անասնաբուծության մթերքների արտադրության ծախքերի և գնման գնի հարաբերության փոփոխությունը վերջին տարիներին։

Այդ ցայտուն կերպով դրսևորվում է մսի ինքնարժեքի և գնման գնի հարաբերակցությունում։ Այսպես, հանրապետությունում 1964 թվականին մեկ ցենտներ տավարի մսի ինքնարժեքը եղել է 111,5 ռուբլի, իսկ գնման գինը՝ 89,6 ռուբլի։ 1967 թվականին նրանց մակարդակները գրեթե հավասարվում են։ Ոչխարի մսի մեկ ցենտների ինքնարժեքը 1964 թ. եղել է 73,9, իսկ գնման գինը՝ 66,3 ռուբլի, իսկ 1967 թ. ինքնարժեքը՝ 99,3, գնման գինը՝ 134,1 ռուբլի։ Բայց դեռևս զգալի տարբերություններ կան մի շարք մթերքների գնման գների և արտադրության ծախքերի միջև։ Այդ տարբերությունների վերացման գործում մեծ նշանակություն ունի ինքնարժեքի իջեցումը՝ նորագույն տեխնի-

կայի, պարարտանյութերի և թունաքիմիկատների լայն օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։

Չժխտելով որոշ մթերքների արտադրության շահութաբերությունն ապահովելու գործում գնման գների բարձրացման անհրաժեշտությունը, միաժամանակ պետք է նշել, որ շատ կոլտնտեսություններ աչքաթող են արել եկամտաբերության բարձրացումը գործող գնման գների արդյունավետ օգտագործման միջոցով։

Առանձին մթերքների գնման գների տնտեսական ու հիմնավորվածության մասին հաճախ են լսվում քննադատական դիտողություններ (մեծ մասամբ ոչ առանց հիմքի), իսկ թե որքանով են արդյունավետ օգտագործվում եղած գնման գները, դեռևս լուրջ խոսակցության առարկա չի դարձել։ Մինչդեռ շատ օրինակներ կարելի է բերել, երբ միասնական գների պայմաններում, հավասար քանակությամբ մթերքների իրացումից, տարբեր տնտեսությունների ստացած դրամական միջոցներն զգալիորեն տարբերվում են միմյանցից։ Այսպես, օրինակ, 1966 թ. 1 ցենտներ ծխախոտի հումքի վաճառքից Իջևանի շրջանի Գետաշենի կոլտնտեսությունն ստացել է 162,0, իսկ նույն շրջանի Սալահի կոլտնտեսությունը՝ 125,0 ռ.։ Այսպիսով, Սալահի կոլտնտեսության համեմատությամբ, Գետաշենում յուրաքանչյուր մեկ ցենտներից լրացուցիչ ստանում են 37,0 ռուբլի, որը հանձնված արտադրանքի արժեքում բավական պատկառելի գումար է կազմում։ Եթե հանձնված ծխախոտի քանակությամբ Գետաշենի կոլտնտեսությունը գերազանցում էր Սալահի մակարդակն ընդամենը 7 տոկոսով, ապա հումքից ստացված դրամական միջոցների տարբերությունը հասնում է ավելի քան 40 տոկոսի։

Ինչո՞վ է պայմանավորված նման տարբերությունը։ Հայտնի է, որ ծխախոտի գնման գները զգալի չափով տարբերակված են, ելնելով հումքի որակից։ Բավական է նշել, որ ապրանքային I և IV սորտերի գնման գների հարաբերությունը կազմում է 1:5 և ավելի։

Գնման գների այդ հնարավորությունները խելացի օգտագործելով, Գետաշենի կոլտնտեսությունում ավելի մեծ նշանակություն է տրվում արտադրվող հումքի որակին, որը փոխհատուցվել է լրացուցիչ դրամական եկամուտներով։

Վաճառված ծխախոտի ապրանքային սորտերի կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս, որ հումքի որակի հարցը դուրս է մնացել Իջևանի շրջանի շատ կոլտնտեսությունների տեսադաշտից։ Վերջին չորս տարում (1964—67 թթ.) հանձնված հումքի մեջ գրեթե բացակայում է ապրանքային I սորտը, իսկ II սորտի տեսակարար կշիռը կազմում է ընդամենը 1,3 տոկոս (ամենաբարձրը՝ 4,2 տոկոս, Գետաշենի կոլտնտեսությունում է)։ Հանձնված հումքի հիմնական մասը կազմում է III մուգ սորտը (50 տոկոս)։

Որպեսզի պարզ դառնա, թե դրամական միջոցների ավելացման ինչպիսի պոտենցիալ հնարավորություններ ունեն Իջևանի շրջանի ծխախոտագործները, պետք է նշել, որ ծխախոտի ապրանքային II սորտի մեկ տոննայի գնման գինը 3130 ռուբլի է, իսկ III-ի մուգ սորտինը՝ 1440 ռուբլի։ Հետևաբար, եթե 1964—67 թթ. հանձնված ծխախոտի հումքի մեջ II ապրանքային սորտի տեսակարար կշիռը 1,3 տոկոսի փոխարեն հասցնեին 10 տոկոսի, որը շատ ռեալ է, ապա շրջանի կոլտնտեսությունները կստանային 673 հազար ռուբլի լրացուցիչ գումար։

Զգալի տարբերություններ կան նաև մսի իրացման գների միջև։



Միջակից բարձր գիրության տավարի մեկ ցենտներ միսը վաճառվում է 179,8 ռուբլով, միջակ գիրությանը՝ 150,3 և միջակից ցածր՝ 119,1 ռուբլով, իսկ հյուծվածը (ոչ ստանդարտ) գնահատվում է միջակից ցածր գիրություն ունեցող մսի գնից 20 տոկոս զեղչով։

Ինչպես տեսնում ենք, գների այսպիսի տարբերակումը արտադրողներին բավական մեծ հնարավորություն է ընձեռում մսի որակի բարձրացման միջոցով ավելացնելու դրամական միջոցները։ Սակայն, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ հնարավորությունը նույնպես շատ կոլտնտեսությունների կողմից վատ է օգտագործվում։ Նույնիսկ հանրապետության հիմնական անասնապահական շրջաններում հանձնվող ընդհանուր մսի քանակի մեջ շատ ցածր է միջակից բարձր գիրությամբ մսի տեսակարար կշիռը։ Այսպես, օրինակ, միջին հաշվով 1964—67 թթ. ընթացքում Սիսիանի շրջանի կոլտնտեսությունների հանձնած տավարի մսի ընդհանուր քանակության մեջ բարձր գիրությամբը եղել է ընդամենը 8 տոկոս, ցածր գիրության և հյուծված անասունի միսը կազմել է ընդհանուրի մոտ 16 տոկոսը։ Այսպիսով, հիմնական մասը կազմել է միջակ գիրությամբ հանձնված միսը։ Եվ, պատահական չէ, որ նույն 1964—67 թթ. ընթացքում մեկ ցենտներ տավարի մսի միջին գնման գինը միշտ ցածր է եղել միջակ գիրության համար նախատեսված գնման գնից։

Սակայն նույն շրջանի առանձին տնտեսությունների ձեռք բերած էական հաջողությունները վկայում են այն մասին, որ մեծ են հնարավորությունները մսի որակի բարելավման միջոցով տնտեսության եկամտաբերության բարձրացման գործում։ Այսպես, 1964—67 թթ. Շաքիի կոլտնտեսության հանձնած տավարի մսի ընդհանուր քանակում բարձր գիրությամբ միսը եղել է 21 տոկոս, իսկ 1966 թ. այն հասնում է 31, 1967-ին՝ 32 տոկոսի։ Հիմնականում դա է պատճառը, որ այդ ժամանակաշրջանում տավարի մսի արտադրության ռեալ շահութաբերությամբ Շաքիի կոլտնտեսությունը զգալի չափով գերազանցում է շրջանի միջին ցուցանիշը։ Օրինակ, 1967 թ. շրջանի միջին շահութաբերությունը կազմում էր 26,3, իսկ Շաքիի կոլտնտեսությունում՝ 34 տոկոս։

Գյուղատնտեսական առավել կարևոր մթերքների արտադրությունը խթանելու համար ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը (1965 թ.) նպատակահարմար գտավ պլանից ավելի վաճառված առանձին մթերքների համար սահմանել հավելավճար՝ գնման գնի 50 տոկոսի չափով։ Ինչպես հայտնի է, 1965 թ. նշված կարգը կիրառվում է հացահատիկներից ցորենի և տարեկանի, իսկ 1966 թ.՝ նաև գարու նկատմամբ։

Իրացման նման կարգի արդյունավետությունն առանձնապես շոշափելի դարձավ այն պատճառով, որ կոլտնտեսությունների համար սահմանվեց բավականին ռեալ, առանձին դեպքերում՝ զգալիորեն նվազեցված վաճառքի պլան։ Դրա շնորհիվ կոլտնտեսությունները հնարավորություն ստացան հացահատիկի նշանակալի մասը վաճառել պլանից դուրս՝ գնման բարձրացված գներով։ Այսպես, 1967 թ. հանրապետության կոլտնտեսությունները պլանից դուրս վաճառել են 65439 ցենտներ հացահատիկ, որը կազմում է վաճառված ամբողջ հացահատիկի կեսից ավելին (53 տոկոս)։

Չնայած բարձր ինքնարժեքի պատճառով հացահատիկի արտադրությունը հանրապետությունում առավել շահութաբեր չդարձավ, բայց իրացման նման պայմանների փոխադարձ շահավետությունը թե՛ կոլտնտեսությունների և թե՛

պետության համար, կասկած չի հարուցում։ Այդ է պատճառը, որ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումն առաջարկում է այն կիրառել նաև ուրիշ մթերքների նկատմամբ։ Սակայն, պետք է նշել, որ հանրապետության ոչ բոլոր կոլտնտեսություններն են խելացի օգտագործում հացահատիկի իրացման պայմանների ընձեռած հնարավորությունները։

Մի շարք մթերքների գնման գները տարբերակված են ըստ հանձնման ժամկետների։ Այդպիսի տարբերակումը թելադրված է տարվա ընթացքում մթերքներն սպառողին հավասարաչափ մատակարարելու անհրաժեշտությամբ, ինչպես նաև կատարվող ծախսերի չափերով։ Բանն այն է, որ տարվա ընթացքում արտադրվելիք մթերքների մեծ մասն ստացվում է գրեթե միանգամից, շատ կարճ ժամանակի ընթացքում։ Մինչդեռ նույնպիսի կարճ ժամանակամիջոցում այն սպառել հնարավոր չէ, հետևաբար սպառումը տարվա ընթացքում հավասարաչափ դարձնելու համար անհրաժեշտ է հնարավորին չափ երկարացնել արտադրանքի ստացման կամ պահպանման ժամանակաշրջանը։ Թե՛ մեկը և թե մյուսը մեծ մասամբ պահանջում են լրացուցիչ ծախսումներ, որոնք և արտահայտվում են գների մեջ։ Իհարկե, այդ չի նշանակում, որ սեզոնային գներում բոլոր դեպքերում արտահայտված են միայն արտադրության ծախքերը։ Գյուղատնտեսական մթերքների ստացման և սպառման ժամանակաշրջանները միմյանց համապատասխանեցնելու խնդրի կարևորությունը պահանջում է, որպեսզի գնման գները շահագրգռեն արտադրողներին՝ մթերքների ստացումը շուրջտարյա դարձնելու կամ դրան մոտեցնելու համար։

Այս տեսակետից ուշագրավ է բանջարեղենի գնման գների տարբերակումն ըստ իրացման ժամկետների։ Հանրապետությունում արտադրվող բանջարեղենի ընդհանուր քանակության մեջ բացարձակ գերակշռություն ունի պոմիդորը, որի գնման գինը տարվա ընթացքում փոփոխվում է 10 անգամ։ Այդ գների գործողության ժամկետները տատանվում են 10 օրից մինչև 6 ամիս։ Նույնքան զգալի են նաև գների մակարդակների տարբերությունները. եթե օգոստոսի 1-ից մինչև սեպտեմբերի 15-ը պոմիդորի մեկ տոննայի համար վճարվում է ընդամենը 57 ռուբլի, ապա հունիսի 11—20-ը՝ 800 ռուբլի, հունիսի 1—10-ը հանձնվածի համար՝ 1500 ռուբլի, իսկ դեկտեմբերի 1-ից մինչև մյուս տարվա հունիսի 1-ն ընկած ժամանակաշրջանում՝ 2000 ռուբլի։

Բավականաչափ տարբերակված են նաև բանջարեղենի մյուս տեսակների գնման գները։

Իսկ ինչպե՞ս են օգտագործվում բանջարեղենի սեզոնային գների հնարավորություններն իրացման միջին գները բարձրացնելու համար։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ այն դեռ բավարար չէ։ Այսպես, 1967 թ. բանջարեղենի հանձնման պետական պլանը գերակատարվեց հանրապետության կոլտնտեսությունների կողմից 110,9 տոկոսով։ Մինչդեռ, չնայած դրան, բանջարեղենի իրացումը տարվա ընթացքում շատ անհամաչափ է կատարվել։ Բավական է նշել, որ մինչև հուլիսի 1-ը հանրապետության կոլտնտեսությունները պետությանը վաճառել են ընդամենը 399, իսկ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունները՝ 13 տոննա բանջարեղեն, որոնք կազմում են տարեկան պլանների 0,4 և 0,1 տոկոսից էլ պակաս։ Դրան հակառակ, հանձնված բանջարեղենի հիմնական մասը (90 տոկոսից ավելին) իրացվել է օգոստոսի 1-ից հոկտեմբերի 15-ն ընկած ժամանակաշրջանում, երբ բանջարեղենի մեծ մասի համար գործում են սեզոնային ամենացածր գները։





Հասկանալի է, որ բանջարեղենի իրացման նման ժամկետը ձեռնտու չէ
ոչ միայն կոլտնտեսությունների (որոնք հսկայական դրամական միջոցներ են
կորցնում), այլև սպառողների համար, որոնք զրկվում են տարվա ընթացքում
անընդհատ բանջարեղեն օգտագործելու հնարավորությունից։
Գյուղատնտեսական մի շարք մթերքների համար տարբերակված գներ
գոյություն ունեն ըստ բուսաբանական սորտերի։ Գաղտնիք չէ, որ շատ կուլ-
տուրաների բուսաբանական սորտերը մի շարք հատկանիշներով զգալիո-
րեն տարբերվում են միմյանցից։ Հետևաբար, հասարակությունն իր համար
ավելի մեծ արժեք ներկայացնող մթերքների արտադրությունը խթանելու հա-
մար նրանց ավելի բարձր գներ է սահմանում։
Այսպես, օրինակ, մուսկատ գինու հումք հանդիսացող մուսկատ սոր-
տի խաղողի մեկ տոննայի գնման գինը սահմանված է 500, իսկ տեղական
սորտերինը՝ 310 ռուբլի։ Սակայն, ինչպես իրավացիորեն քննադատվեց նաև
«Правда» թերթում, այդ արժեքավոր խաղողի արտադրությունը վերջին տա-
րիներին ո՛չ միայն չավելացավ, այլ խիստ կերպով կրճատվեց, որովհետև
մեկ միավորի ինքնարժեքն ավելի բարձր է քան գնման գինը։ Ըստ երևույթին
կազմակերպչական այլ միջոցառումների հետ անհրաժեշտ է ավելի մեծ չա-
փով բարձրացնել խաղողի այդ և մի քանի ուրիշ արժեքավոր սորտերի
գնման գները, մանավանդ որ դա վաղուց այդպես է խաղողագործա-
կան մյուս հանրապետություններում։ Ուսումնասիրությունները ցույց են տա-
լիս, որ 1967 թ. Արտաշատի շրջանի 41 կոլտնտեսություններից միայն 7 տըն-
տեսություններում է խաղողի մեկ ցենտների միջին գնման գինը բարձր 30
ռուբլուց, ընդ որում, ամենաբարձրը, ընդամենը 35,0 ռուբլի է (Բարձրաշենի
կոլտնտեսությունում)։ Եվ, պատահական չէ, որ նշված 7 կոլտնտեսություննե-
րում խաղողի արտադրության շահութաբերությունն զգալիորեն բարձր է շըր-
ջանի միջին մակարդակից, իսկ Բարձրաշենի կոլտնտեսությունում (108 տո-
կոս) ամենաբարձրն է։
Բերված փաստերը վկայում են, որ շրջանի կոլտնտեսությունների կող-
մից պետությանը վաճառված խաղողի մեջ ոչ բարձրարժեք սորտեր չեն եղել,
այլև հանձնված արտադրանքի որակական ցուցանիշներն զգալի չափով ցածր
էին սահմանված կոնդիցիայից (հիմնականում շաքարայնության տոկոսը)։
Ինչպես հայտնի է, նախատեսված կոնդիցիայից ցածր շաքարայնության դեպ-
քում համապատասխան տոկոսով իջեցվում է գնման գինը և հակառակը՝ բա-
զիսային կոնդիցիայից բարձր շաքարայնության յուրաքանչյուր տոկոսի հա-
մար որոշակի տոկոսներով բարձրացվում է խաղողի գնման գինը։
Գյուղատնտեսական շատ մթերքների ներկայումս գործող գնման գները
որոշ շահագրգռվածություն են ստեղծում արտադրանքի որակի
բարձրացման, ինչպես նաև նախատեսված ժամկետներում սպառողներին այն
հավասարաչափ մատակարարելու գործում։ Սակայն, գործող գնման գների
հնարավորությունները դեռևս անբավարար են օգտագործում հանրապետության կոլտնտեսությունները։ Ստեղծված վիճակի հիմնական պատճառն այն
է, որ շատ տնտեսությունների ղեկավարներ չեն կարողանում վերակառուցել
իրենց աշխատանքը նոր պահանջներին համապատասխան և շարունակում են
անտեսել գործող գների արդյունավետ օգտագործման նշանակությունը տնտեսության եկամտաբերության բարձրացման գործում։ Դրա հետ մեկտեղ չի
կարելի չնշել, որ կատարյալ չէ նաև գործող գների տարբերակումը՝ կապված
արտադրանքի որակի և հանձնման ժամկետների հետ։

Հանրահայտ է սեզոնային գների կարևոր նշանակությունն առանձնապես շուտ փչացող այնպիսի մթերքների արտադրությունը և իրացումը խթանելու համար, ինչպիսիք են՝ բանջարեղենը և մրգերը։ Թվում է, թե պոմիդորի գըն-ման գների տարբերակումը պետք է բավարար շահագրգռվածություն ստեղծի տարվա բոլոր ամիսներին այն իրացնելու համար. սակայն սեզոնային գների մակարդակների կտրուկ անցումները տարվա որոշ ամիսներին չեն շահագըր-գռում տնտեսություններին՝ ավելացնելու պոմիդորի արտադրությունը։ Այսպես, հուլիսի 1—15-ը պոմիդորի մեկ տոննայի գինը 200 ռուբլի է, հուլիսի 16-ից այն միանգամից իջեցվում է մինչև 110, իսկ օգոստոսի 1-ից՝ 57 ռուբլի։ Քանի որ վերջինիս մակարդակը չի փոխհատուցում նույնիսկ պո-միդորի արտադրության ծախսերը, ապա դա կարող է հանգեցնել ընդհանրա-պես պոմիդորի արտադրության կրճատմանը։ Նման անցանկալի երևույթնե-րից խուսափելու համար, մեր կարծիքով, ավելի նպատակահարմար կլիներ սեզոնային գների փոփոխությունը կատարել աստիճանական, բայց առավել հաճախակի։ Իսկ սեզոնային ամենացածր գնի մակարդակը չպետք է ցածր լինի մթերքի արտադրության ծախքերից։

Գնագոյացման հիմնական սկզբունքներից են արտադրանքի որակական ցուցանիշների ճիշտ հաշվումը և արտահայտումը։ Սակայն որակական տար-բերությունները գներում ավելի ճիշտ արտահայտելուն մեծապես խան-գարում են արտադրանքի որակի բազիսային նորմաների և ստան-դարտների որոշման ժամանակ թույլ տված անճշտությունները և սխալ-ները։ Այսպես, մսի որակի որոշման հիմքում դրված է միայն անասունի գի-րության աստիճանը, որի համաձայն էլ տարբերակված են մսի գնման գները։ Սակայն հանրահայտ է, որ մսի սպառողական արժեքը մեծ մասամբ սահ-մանվում է նաև ըստ անասունների տարիքի։ Մինչդեռ այդ կարևոր որակական ցուցանիշը հաշվի չի առնվում գնման գների սահմանման ժամանակ։ Ստաց-վում է այնպես, որ բնակչության շրջանում մեծ պահանջարկ ունեցող մատղաշ անասունի միսն ավելի էժան է գնահատվում, քան ծերացած անասունի միսը։

Այս ուղղությամբ ուշագրավ փորձ ունեն արտասահմանյան մի շարք եր-կրներ։ Օրինակ, ԱՄՆ-ում և Անգլիայում ոչխարի և գառի մսի գների տար-բերությունը հասնում է 1:3-ի։ ԱՄՆ-ում տավարի մսի համար, ըստ որակի, սահմանված է 8, Չեխոսլովակիայում՝ 7, ԳԴՀ-ում՝ 5 գին և այլն։

Արտադրանքի որակական ցուցանիշների բարձրացումը շատ բանով որոշ-վում է արտադրողների նյութական շահագրգռվածությամբ, իսկ վերջինիս ապահովման համար անհրաժեշտ է ստեղծել օպտիմալ հարաբերակցություն արտադրանքի որակի և գնման գների միջև։ Այդ հարաբերակցության ապա-հովումը մեծապես կախված է ինչպես գնման գների հետագա կատարելա-գործումից, այնպես էլ որակի որոշման կատարյալ մեթոդների մշակումից և կիրառումից։ Որպեսզի խզում չստացվի արտադրանքի գնի և նրա որակական ցուցանիշների միջև, այդ աշխատանքը պետք է տանել սիստեմատիկ, պլա-նային կարգով՝ մաքսիմալ չափով հաշվի առնելով ինչպես արտադրության պայմանների, այնպես էլ հասարակության պահանջարկի մշտական փոփո-խությունները։

Վ. Հ. ԱԲԳԱՐՅԱՆ



# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՇՎԱՐԿԸ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Շինարարական արտադրությունում (ՍՍՀՄ), ուր աշխատում են ավելի
քան 8 միլիոն մարդ, ներկայումս օգտագործվում է արդյունաբերական ամբողջ
արտադրանքի մոտ 15, շինանյութերի՝ 90, փայտամշակման և անտառանյու-
թերի մոտ 50, երկրի ջերմա-էներգետիկ ռեսուրսների մոտ 30 տոկոսը։ Վերջին
տարիներս շինարարությունում տեղի են ունեցել որակական և քանակական
խոշոր փոփոխություններ։ Բավական է ասել, որ ներկայումս յուրաքանչյուր
կապալային կազմակերպություն կատարում է երկու անգամ ավելի շատ աշ-
խատանք, քան 10 տարի առաջ։ Բայց այդ ամենի հետ միասին, շինարարա-
կան արտադրությունում առ այսօր կան էական թերություններ, որոնք բացա-
սաբար են ազդում արտադրության արդյունավետության բարձրացման, տնտե-
սական հաշվարկի արմատավորման վրա։
Տնտեսական հաշվարկն իր ընդհանուր սկզբունքներով կիրառվում է ժո-
ղովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, բայց դրա կիրառման
ձևերը (ելնելով առանձին ճյուղերի առանձնահատկություններից), տարբեր են։
Շինարարական աշխատանքների մեծ ծավալը, արտադրական ցիկլի երկար
տևողությունը և ոչ միատարրությունը տնտեսական հաշվարկի իրականացման
ժամանակ որոշակի դժվարություններ են առաջ բերում պլանավորման, հաշ-
վառման և հսկողության գործում։
Շինարարության մեջ տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման
համար, առաջին հերթին, կարևոր է լուծել երեք պրոբլեմ՝ օբյեկտների գործ-
արկման ժամկետի կրճատում, դրանց արժեքի իջեցում և արտադրանքի
որակի լավացում։ Այս պրոբլեմների լուծմամբ պետք է շահագրգռված լինեն
շինարարության բոլոր աշխատողները։ Բայց իրականում շինարարները ոչ միշտ
են կարողանում լուծել նշված խնդիրները, քանի որ պլանավորման և խրա-
խուսման գործող սիստեմը թույլ է շահագրգռում շինարարներին։ Շինարարու-
թյան շահութաբերության բարձրացումը գրեթե չի անդրադառնում շինարարի
վաստակի վրա և, ընդհանրապես, թույլ է ոչ միայն նյութական շահագրգռվա-
ծությունը, այլև պատասխանատվությունը։ Այս է այն հիմնական պատճառ-
ներից մեկը, որ վերջին տարիներս հանրապետության շինարարական կազ-
մակերպությունները չեն կարողանում կատարել պլանային մի շարք առաջա-
դրանքներ և, հատկապես, օբյեկտների հանձնման պլանային առաջադրանքը։
Շատ հաճախ պլանով նախատեսված 3—4 տարվա փոխարեն, կառույցը շա-
հագործման են հանձնում հինգից վեց տարում կամ ավելի ուշ։ Օբյեկտների

Հանրահայտ է սեզոնային գների կարևոր նշանակությունն առանձնապես շուտ փչացող այնպիսի մթերքների արտադրությունը և իրացումը խթանելու համար, ինչպիսիք են՝ բանջարեղենը և մրգերը։ Թվում է, թե պոմիդորի գնման գների տարբերակումը պետք է բավարար շահագրգռվածություն ստեղծի տարվա բոլոր ամիսներին այն իրացնելու համար. սակայն սեզոնային գների մակարդակների կտրուկ անցումները տարվա որոշ ամիսներին չեն շահագրգրռում տնտեսություններին՝ ավելացնելու պոմիդորի արտադրությունը։ Այսպես, հուլիսի 1—15-ը պոմիդորի մեկ տոննայի գինը 200 ռուբլի է, հուլիսի 16-ից այն միանգամից իջեցվում է մինչև 110, իսկ օգոստոսի 1-ից՝ 57 ռուբլի։ Քանի որ վերջինիս մակարդակը չի փոխհատուցում նույնիսկ պոմիդորի արտադրության ծախսերը, ապա դա կարող է հանգեցնել ընդհանրապես պոմիդորի արտադրության կրճատմանը։ Նման անցանկալի երևույթներից խուսափելու համար, մեր կարծիքով, ավելի նպատակահարմար կլիներ սեզոնային գների փոփոխությունը կատարել աստիճանական, բայց առավել հաճախակի։ Իսկ սեզոնային ամենացածր գնի մակարդակը չպետք է ցածր լինի մթերքի արտադրության ծախքերից։

Գնագոյացման հիմնական սկզբունքներից են արտադրանքի որակական ցուցանիշների ճիշտ հաշվումը և արտահայտումը։ Սակայն որակական տարբերությունները գներում ավելի ճիշտ արտահայտելուն մեծապես խանգարում են արտադրանքի որակի բազիսային նորմաների և ստանդարտների որոշման ժամանակ թույլ տված անճշտությունները և սխալները։ Այսպես, մսի որակի որոշման հիմքում դրված է միայն անասունի գիրության աստիճանը, որի համաձայն էլ տարբերակված են մսի գնման գները։ Սակայն հանրահայտ է, որ մսի սպառողական արժեքը մեծ մասամբ սահմանվում է նաև ըստ անասունների տարիքի։ Մինչդեռ այդ կարևոր որակական ցուցանիշը հաշվի չի առնվում գնման գների սահմանման ժամանակ։ Ստացվում է այնպես, որ բնակչության շրջանում մեծ պահանջարկ ունեցող մատղաշ անասունի միսն ավելի էժան է գնահատվում, քան ծերացած անասունի միսը։

Այս ուղղությամբ ուշագրավ փորձ ունեն արտասահմանյան մի շարք երկրներ։ Օրինակ, ԱՄՆ-ում և Անգլիայում ոչխարի և գառի մսի գների տարբերությունը հասնում է 1:3-ի։ ԱՄՆ-ում տավարի մսի համար, ըստ որակի, սահմանված է 8, Չեխոսլովակիայում՝ 7, ԳԴՀ-ում՝ 5 գին և այլն։

Արտադրանքի որակական ցուցանիշների բարձրացումը շատ բանով որոշվում է արտադրողների նյութական շահագրգռվածությամբ, իսկ վերջինիս ապահովման համար անհրաժեշտ է ստեղծել օպտիմալ հարաբերակցություն արտադրանքի որակի և գնման գների միջև։ Այդ հարաբերակցության ապահովումը մեծապես կախված է ինչպես գնման գների հետագա կատարելագործումից, այնպես էլ որակի որոշման կատարյալ մեթոդների մշակումից և կիրառումից։ Որպեսզի խզում չստացվի արտադրանքի գնի և նրա որակական ցուցանիշների միջև, այդ աշխատանքը պետք է տանել սիստեմատիկ, պլանային կարգով՝ մաքսիմալ չափով հաշվի առնելով ինչպես արտադրության պայմանների, այնպես էլ հասարակության պահանջարկի մշտական փոփոխությունները։

Վ. Հ. ԱԲԳԱՐՅԱՆ



## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՇՎԱՐԿԸ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Շինարարական արտադրությունում (ՍՍՀՄ), ուր աշխատում են ավելի քան 8 միլիոն մարդ, ներկայումս օգտագործվում է արդյունաբերական ամբողջ արտադրանքի մոտ 15, շինանյութերի՝ 90, փայտամշակման և անտառանյութերի մոտ 50, երկրի ջերմա-էներգետիկ ռեսուրսների մոտ 30 տոկոսը։ Վերջին տարիներս շինարարությունում տեղի են ունեցել որակական և քանակական խոշոր փոփոխություններ։ Բավական է ասել, որ ներկայումս յուրաքանչյուր կապալային կազմակերպություն կատարում է երկու անգամ ավելի շատ աշխատանք, քան 10 տարի առաջ։ Բայց այդ ամենի հետ միասին, շինարարական արտադրությունում առ այսօր կան էական թերություններ, որոնք բացասաբար են ազդում արտադրության արդյունավետության բարձրացման, տնտեսական հաշվարկի արմատավորման վրա։

Տնտեսական հաշվարկն իր ընդհանուր սկզբունքներով կիրառվում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, բայց դրա կիրառման ձևերը (ելնելով առանձին ճյուղերի առանձնահատկություններից), տարբեր են։ Շինարարական աշխատանքների մեծ ծավալը, արտադրական ցիկլի երկարատևողությունը և ոչ միատարրությունը տնտեսական հաշվարկի իրականացման ժամանակ որոշակի դժվարություններ են առաջ բերում պլանավորման, հաշվառման և հսկողության գործում։

Շինարարության մեջ տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման համար, առաջին հերթին, կարևոր է լուծել երեք պրոբլեմ՝ օբյեկտների գործարկման ժամկետի կրճատում, դրանց արժեքի իջեցում և արտադրանքի որակի լավացում։ Այս պրոբլեմների լուծմամբ պետք է շահագրգռված լինեն շինարարության բոլոր աշխատողները։ Բայց իրականում շինարարները ոչ միշտ են կարողանում լուծել նշված խնդիրները, քանի որ պլանավորման և խրախուսման գործող սիստեմը թույլ է շահագրգռում շինարարներին։ Շինարարության շահութաբերության բարձրացումը գրեթե չի անդրադառնում շինարարի վաստակի վրա և, ընդհանրապես, թույլ է ոչ միայն նյութական շահագրգռվածությունը, այլև պատասխանատվությունը։ Այս է այն հիմնական պատճառներից մեկը, որ վերջին տարիներս հանրապետության շինարարական կազմակերպությունները չեն կարողանում կատարել պլանային մի շարք առաջադրանքներ և, հատկապես, օբյեկտների հանձնման պլանային առաջադրանքը։ Շատ հաճախ պլանով նախատեսված 3—4 տարվա փոխարեն, կառույցը շահագործման են հանձնում հինգից վեց տարում կամ ավելի ուշ։ Օբյեկտների

կառուցման ձգձգումը ժողովրդական տնտեսությանը հասցնում է մեծ վնասներ, հատկապես այն ճյուղին, որի համար կառուցվում է այդ օբյեկտը։

Տնտեսական գործունեության գնահատման ներկա սիստեմը շատ դեպքերում չի նպաստում օբյեկտների կառուցման ժամկետների կրճատմանը և ինքնարժեքի իջեցմանը, որը հանգեցնում է նրան, որ շինարարական կազմակերպություններից շատերն աշխատում են վնասով։ Միայն 1966 թվականին հանրապետության շինարարական կազմակերպությունների 49,4 տոկոսը ունեցել է պլանային ինքնարժեքի, իսկ 45 տոկոսը՝ նախահաշվային արժեքի գերածախս։ Մեկ ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանքների կատարման համար նույն տարում ծախսվել է 1,018 ռուբլի և այլն։

Շինարարական արտադրության արդյունավետության բարձրացման համար անհրաժեշտ է իրականացնել կոմպլեքս միջոցառումներ՝ առավել բարձրացնել տեխնիկական զինվածությունը, անպայման կիրառել աշխատանքի և արտադրության առաջավոր մեթոդներ, կատարելագործել պլանավորման ու նյութական խրախուսման սիստեմները, վերացնել հոսունությունը և այլն։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ միայն արտադրության կազմակերպման բարելավումը հնարավորություն է տալիս մոտ 30 տոկոսով ընդլայնելու արտադրության ծավալը։

Արտադրության կազմակերպման հիմնական հարցերից մեկն էլ մեքենայացման մակարդակի բարձրացումն է։ Չնայած այն բանին, որ վերջին տարիներս շինարարական արտադրությունում ներդրվել է մեծ հզորությամբ նորագույն տեխնիկա, բայց կառույցներում դեռևս զգալի տեսակարար կշիռ ունի ձեռքի աշխատանքը, որն առավել ցայտուն է երևում ներքին հարդարման աշխատանքներում։ Ճիշտ է, վերջին 9 տարում մեքենայական պարկը շինարարությունում աճել է մոտ 7 անգամ, բայց նրա օգտագործումն ըստ ժամանակի և հզորության՝ հեռու է բավարար լինելուց։

Շինարարական կարևորագույն մեքենաների (էքսկավատորներ, բուլդոզերներ, վերամբարձ կռունկներ) հերթափոխային գործակիցները 1967 թվականին կազմել է 1,2, այն դեպքում, երբ նրանք առնվազն պետք է ունենային 1,7—1,9 գործակից։ Մեքենաների հերթափոխության գործակցի ցածր լինելը հետևանք է այն բանի, որ դրանց աշխատանքը պլանավորվում է հիմնականում մեկ հերթափոխի սահմաններում, մինչդեռ Միության շինարարական շատ կազմակերպություններում այն պլանավորվում է երկհերթ աշխատանքային օրվա սահմաններում։ Այնպիսի հանրապետություն, ինչպիսին մերն է, բոլոր նախադրյալներն ունի շինարարությունում երկհերթափոխային աշխատանքային օրվա անցնելու, որը և կնպաստի շինարարական մեքենաների ռացիոնալ օգտագործմանը։ Եղած մեքենաների քանակը շինարարական աշխատանքների մասնակի և կոմպլեքսային մեքենայացման հնարավորություն է տալիս։ Բայց այստեղ էլ գործերը լավ չեն, քանի որ մեր ցուցանիշները զիջում են նույնիսկ Միության համանուն ցուցանիշների միջին մակարդակին։ Հատկապես անբավարար է սվաղային և ծեփագործական աշխատանքների մեքենայացումը։ Եթե 1966 թ. տվյալներով այդ աշխատանքներում ընդհանրապես բացակայել է մեքենայացումը, ապա 1968 թվականի առաջին եռամսյակի տվյալներով արդյունաբերական շինարարության մինիստրությունում այն կազմել է 2,5, իսկ գյուղական շինարարության մինիստրությունում՝ 0,3 տոկոս և դա այն դեպքում, երբ Միության մասշտաբով դեռևս 1960 թ. տվյալ աշխատանքների մեքենայացումը կազմել է 61,5 տոկոս։ Մենք ներկայումս հանրապետությունում ունենք



ծեփագործների զգալի բանակ, որին շատ դեպքերում (հատկապես ձմռան և գարնան ամիսներին) չենք կարողանում ապահովել անհրաժեշտ աշխատանքով։

Շինարարական արտադրությունում մեքենաների օգտագործման ցածր մակարդակը բացատրվում է նաև կադրերի պակասով, ինչպես և շինարարական հրապարակներում աշխատանքների վատ կազմակերպմամբ։ Եղած մեքենաներն անբավարար են օգտագործվում նաև այն պատճառով, որ ձգձգվում է դրանց վերանորոգումը կամ այն կատարվում է վատ որակով։

Այս ամենն իրենց կնիքն են դնում արտադրության կազմակերպման և աշխատուժի հոսունության վրա։ Շինարարական աշխատանքների մեքենայացման ցածր մակարդակի ազդեցությունը հոսունության վրա բացատրվում է նրանով, որ ներկայումս երիտասարդությունը հիմնականում ձգտում է կատարել այնպիսի աշխատանք, որն ավելի շատ կապված է տեխնիկայի կիրառման հետ, պահանջում է ստեղծագործական մոտեցում, գիտելիք, հմտություն։

Խոսելով աշխատուժի հոսունության մասին, որի կրճատումից մեծ չափով կախված է արտադրության արդյունավետության բարձրացումը, պետք է նշել, որ հոսունության պատճառներից է նաև արտադրության կազմակերպման, ինչպես նաև նյութական շահագրգռվածության ցածր մակարդակը։ Այսպես, շինարարական № 2 տրեստում 1967 թվականին մեր կողմից կատարված ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այն շինարարական վարչություններում, ուր տարվա ընթացքում եղել են ավելի շատ պարգևատրումներ ու հավելյալ վարձատրություն, նվազել է հոսունությունը։ Այսպես, եթե 1967 թվականին № 2 տրեստում եղել է 75 հազար ռուբլու պարգևատրում, ապա այդ գումարի 50 տոկոսը վճարվել է միայն № 1 և № 3 շինարարական վարչություններին (տրեստն ունի 6 շինվարչություն), որտեղ աշխատուժի հոսունությունը 2 և ավելի անգամ պակաս է եղել, քան №№ 4, 5 և 2 շինարարական վարչություններում։

Միության մասշտաբով պարգևատրման տեսակարար կշիռն աշխատավարձի ֆոնդի մեջ կազմել է 4,1 տոկոս։ Շինանյութերի տնտեսումից ստացված պարգևատրումը մեկ բանվորի համար, միջին հաշվով, կազմել է ամսական 3 կոպեկ։ Մեր հանրապետությունում շինանյութերի տնտեսման համար նախատեսվող պարգևատրում չի եղել, որի պատճառը տնտհաշվարկային բրիգադաների և տեղամասերի բացակայությունն է, իսկ այլ աղբյուրների հաշվին պարգևատրումը շատ քիչ է եղել։ Այսպես, 1967 թվականին հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրությունում մեկ բանվորին տարեկան միջին հաշվով ընկել է 21 ռ. 50 կոպեկ պարգևատրման գումար կամ ամսական, միջին հաշվով, կազմել է 1 ռ. 90 կոպեկ։ Այդ թվում № 1 տրեստում այն կազմել է 3 ռ. 25 կոպ., № 2-ում՝ 2 ռ. 90 կ. և այլն։ Այսպիսի աննշան գումարները չեն խրախուսում շինարարներին, որից և հաճախ առաջ է գալիս աշխատուժի հոսունություն։

Ելնելով այն փաստից, որ շինարարության մեջ աշխատուժի հոսունությունը 2—3 անգամ գերազանցում է արդյունաբերության մեջ եղած հոսունությանը, վերջերս ՍՍՀՄ Մինիստրների սովետը և Կենտրոնական կոմիտեն մշակել են հատուկ միջոցառումներ՝ շինարարական արտադրությունը կայուն ու որակյալ կադրերով ապահովելու համար։ Այդ միջոցառումների մեջ առանձնահատուկ տեղ է հատկացված շինարարական նոր կադրերի պատրաստմանը, որի համար նախատեսվում է ստեղծել ուսումնարանների լայն ցանց։ Սովետական Հայաստանում նոր ուսումնարաններ կբացվեն Երևանում, Լենինականում, Կիրովա-

կանում, Դիլիջանում, Ղափանում, Գորիսում և այլուր, որոնք շինարարությանը տարեկան կտան տարբեր մասնագիտությամբ մոտ 3.500-ից մինչև 4.000 շինարար։

Նախատեսվում է լրացուցիչ վարձատրել աշխատանքային երկար ստաժ ունեցողներին, իսկ 3 տարուց ավելի աշխատողներն ստանում են լրացուցիչ վարձատրություն։ Նախատեսվում է նաև շահագործման հանձնած բնակելի տարածության 10 տոկոսը հատկացնել շինարարներին։ Այս միջոցառումները, անշուշտ, կարող են նպաստել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և հոսունության կրճատմանը։

Ինչպես նշվեց, մեր շինարարները շինանյութերի տնտեսման համար չեն պարգևատրվում։ Իսկ շինանյութերի տնտեսում կարելի է ստանալ այն ժամանակ միայն, երբ շինարարական արտադրության մեջ, նրա ստորին օղակներում ներդրվի տնտեսական հաշվարկը։ Պետք է նշել, որ տնտեսական հաշվարկի արմատավորման գործում մեր շինարարական կազմակերպությունները շատ ետ են մնում միութենական շինարարական կազմակերպություններից։ Տնտհաշվարկային բրիգադները, հանդիսանալով արտադրության կազմակերպման առաջավոր եղանակ, նպաստում են տեխնիկատնտեսական ցուցանիշների բարելավմանը, նյութական շահագրգռվածության բարձրացմանը, ինչպես նաև նյութական, աշխատանքային և դրամական միջոցների ռացիոնալ և խնայողաբար օգտագործմանը։

Ինչպես ցույց է տալիս միութենական խոշորագույն քաղաքների փորձը, տնտեսական հաշվարկի փոխադրման համար նպաստավոր պայմաններ ունեն այն բրիգադները, որոնց աշխատանքի բնույթը հնարավորություն է տալիս սահմանելու ցուցանիշների որոշակի խումբ և հաշվի առնել ծախսված ռեսուրսները։ Այս տեսակետից մեր հանրապետությունում նպատակահարմար է տնտհաշվարկի փոխադրել կոմպլեքսային բրիգադները, որոնք մեծ տեսակարար կշիռ ունեն շինարարությունում։ Այսպես, 1967 թվականի վերջերին մեր հանրապետությունում գործում էին 925 կոմպլեքսային բրիգադա, որոնց մեջ ընդգրկված էին 8647 մարդ։ Սակայն այդ բրիգադներից և ոչ մեկը տնտհաշվարկային չէր, մի փաստ, որը խոսում է արտադրության կազմակերպման անբավարար մակարդակի մասին։

Նախատեսված է ընթացիկ տարում կոմպլեքսային բրիգադների 30 տոկոսը դարձնել տնտհաշվարկային։ Այս նպատակով որոշակի քայլեր են կատարվում հանրապետության № 1 շինարարական տրեստում, որտեղ նախապատրաստվում է ունենալ նաև տնտհաշվարկային բրիգադայի հատուկ գրքույկ (հեղինակներ՝ Վ. Գասպարյան և № 1 տրեստի աշխատանքի և աշխատավարձի բաժնի վարիչ Ռ. Խաչատրյան)։ Այդ գրքույկում ամփոփ կերպով գրառվում են տնտհաշվարկային բրիգադայի տնտեսական գործունեության հիմնական ցուցանիշները և դրանց փաստացի կատարումը։

Վերջին տարիներս մեր շինարարական կազմակերպությունները որոշակի գործ են կատարել աշխատանքի և արտադրության կազմակերպման առաջավոր ձևերի ու մեթոդների արմատավորման ուղղությամբ։ Այդ մեթոդներից է աշխատավարձի վճարման ակորդային սիստեմի արմատավորումը։ Ճիշտ է, այս սիստեմն ընդհանրապես նորություն չէ, բայց այն մեր հանրապետության շինարարական կազմակերպություններում կիրառվել է վերջերս, և թերևս սա է պատճառը, որ 1967 թվականին այն կազմեց ամբողջ գործավարձային աշխատավարձի ընդհանուր ֆոնդի միայն 9,26 տոկոսը։ Դա դեռևս



շատ ցածր է, ուստի նախատեսվում է այդ տոկոսը հասցնել 50-ի։ Աշխատավարձի վճարման ակորդային սիստեմի էությունը հիմնականում այն է, որ նախատեսված աշխատանքը գնահատվում է նախօրոք, գույություն ունեցող գնարկներով։ Ընդ որում, գնահատումը կատարվում է մեծածավալ ցուցանիշներով ամբողջ կառույցի համար։ Առանձին տարրերի աշխատավարձի ֆոնդը դուրս բերելուց հետո, այն հաշվարկում են նաև ամբողջ կառույցի համար և նախքան կառույցն սկսելը, տվյալ օբյեկտի աշխատավարձի ֆոնդը հայտնվում է կառուցող տնտհաշվարկային կամ կոմպլեքսային բրիգադային։ Աշխատավարձը վճարվում է առանց կարգագրի, քանի որ նրան նախօրոք հայտնի է լինում աշխատավարձի գումարը (ընդհանուր աշխատավարձի հարաբերությունը նախահաշվային արժեքին) և կատարված աշխատանքների ծավալի համապատասխան ստանում են իրենց աշխատավարձի ֆոնդը։ Այսպես, եթե աշխատավարձի ընդհանուր ֆոնդն ամբողջ օբյեկտի նախահաշվի մեջ կազմել է, ասենք, 15 տոկոս, ապա տվյալ ամսում 10.000 ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանք կատարելիս տվյալ բրիգադան ստանում է 1500 ռուբլի աշխատավարձ։

Շինարարական արտադրությունում այս և համանման մի շարք այլ միջոցառումների կիրառումը ավելի արդյունավետ կլինեն այն ժամանակ միայն, երբ բարձր հիմքերի վրա դրվեն շինարարական կազմակերպությունների տնտեսական աշխատանքները և, առաջին հերթին՝ ստորին օղակների պլանավորման, հաշվառման և վերահսկման հստակ կազմակերպումը։

Ամենից առաջ անհրաժեշտ է շինարարական արտադրության մասնագիտացում, ինչպես տրեստների, այնպես էլ շինարարական վարչությունների մասշտաբով, որը հնարավորություն կտա բարձրացնելու ամեն մի կազմակերպության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Մասնագիտացման շնորհիվ ամեն մի վարչություն ու տրեստ հնարավորություն կունենա կառուցվող միատեսակ օբյեկտների համար մշակելու նորմատիվներ։ Այս նորմատիվները կարող են արտահայտել առանձին օբյեկտների կամ նրանց առանձին էտապների համար նախատեսվող անհրաժեշտ նյութական և աշխատանքային ծախսումները։ Ընդ որում, նորմատիվները մշակվում են հաշվի առնելով նորագույն տեխնիկայի նվաճումները, աշխատանքի և արտադրության կազմակերպման առաջավոր ձևերն ու մեթոդները։ Հասկանալի է, որ առանց մասնագիտացման դժվար կլինի յուրաքանչյուր կառույցի համար մշակել առանձին նորմատիվներ, որը մեծ աշխատանք է պահանջում։

Ունենալով օբյեկտի համար մշակված և գիտականորեն հիմնավորված նորմատիվներ, շինվարչությունների պլանային բաժիններն արդեն կարող են ձեռնամուխ լինել ստորին օղակների պլանավորմանը, մի բան, որը բացակայում է մեր հանրապետությունում։ Այս հարցի դրական լուծումը կարող է նպաստել շինարարական արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Պլանավորման և նյութական խրախուսման նոր կարգը, որը շինարարությունում նախատեսվում է իրականացնել 1970 թվականից, կարող է ավելի արդյունավետ լինել, եթե վերանայվեն և արտադրության մեջ ներդրվեն աշխատանքի կազմակերպման վերը նշված առաջավոր ձևերը։

Վ. Ռ. ԳԱՍՊԱՐՅԱՆ



այդ երկու բևեռային սիստեմների զարգացման և դրանց միջև նյութափոխանակության ուժեղացման հետ։ Երիտասարդ են համարվում այն բույսերը, որ ունակ են բազմապատկելու արմատների ու տերևների թիվը, նրանց ֆունկցիայի ակտիվությունը։

Դեռ շատ վաղուց այգեգործության և բուսաբուծության պրակտիկայում ընդունված է խուզել պտղատու ծառերը, կտրել գագաթային ճյուղերը. այդ նպաստում է բույսերի կյանքի երկարացման ու բերքատվության վերականգնմանը։ Բացի դրանից, երբ հեռացնում ենք ծեր ու հզոր ճյուղերը, դրանց փոխարեն առաջանում են երիտասարդ, ավելի փոքր ճյուղեր, որոնք ավելի մոտ են գտնվում արմատներին, բարձրանում է տերևների արմատապահովվածությունը, ուժեղանում արմատատերևային նյութափոխանակությունը։ Բույսերը կտրելիս կամ խուզելիս շատ կարևոր է հաշվի առնել բույսի բիոլոգիական առանձնահատկությունը, հասակը և աճի պայմանները, ինչպես և բերքի կազմավորման տարում պտուղների ու տերևային մասսաների հարաբերությունը։ Ավելի նպատակահարմար է կտրել առանցքային արմատները, որոնք հասակով ծեր ծառերի մոտ շատ երկար են և աղքատ ծծող մազարմատներից։ Կտրված արմատների վրա այնուհետև առաջանում են մեծ քանակությամբ մազարմատներ, որոնք բարձրացնում են ամբողջ բույսի կենսագործունեությունը, քանի որ ջրի ու հանքային տարրերի կլանումն ու վերափոխումը տեղի են ունենում միայն նրանց միջոցով։

Բույսի կյանքի երկարացման՝ երիտասարդացման նպատակով ընդունված է կատարել նաև խոր կտրում։ Այս դեպքում հեռացնում են բոլոր առանցքային ծեր ճյուղերը։ Մեկ-երկու տարուց հետո առաջանում են ավելի շատ տերևավոր ճյուղեր, որոնք գտնվելով արմատային սիստեմին մոտիկ, ցուցաբերում են ակտիվ նյութափոխանակություն վերջինիս հետ։ Նույն նպատակին է ծառայում նաև մարգախոտերի հաճախակի հարքը, որով տասնյակ տարիներով երկարում է նրանց կյանքը։

Պտղաբույծները դեռ շատ վաղուց նկատել են, որ բույսի վեգետատիվ աճն ու բերքատվությունը հակասական պրոցեսներ են՝ ուժեղ աճը միշտ բացասաբար է անդրադառնում բերքի առաջացման վրա, և հակառակը՝ թույլ աճը նպաստում է ուժեղ պտղակալմանը։ Այս հակասության գլխավոր գործոնը արմատային սիստեմն է։ Ուժեղ արմատային սիստեմը նպաստում է վեգետատիվ աճին, կասեցնելով պտղակալումը և հակառակը։ Նույնիսկ ծառերի վրա պատվաստված խոտաբույսերը դառնում են բազմամյա։

Բույսերի ծերացման նոր տեսությունը հնարավորություն է տալիս բացատրելու մի կարևոր ու մինչ այժմ անհասկանալի երևույթ ևս, որն անտառաբուծության մեջ ունի տնտեսական ու գործնական խոշոր նշանակություն։ Ինչպես հայտնի է, անտառային շատ ծառերի հատումից հետո առաջանում են բնային շվեր, որոնք օգտվելով մայրական հզոր արմատներից՝ հետագայում զարգանում ու կազմավորում են շվային, կամ, այսպես կոչված՝ ցածրաբուն անտառներ։ Շվային ծագում ունեցող ծառերն այնքան հզոր, բարձր և հաստաբուն չեն, ինչպես սերմային ծագում ունեցողները։ Այս պատճառով էլ շատ գիտնականներ այն կարծիքն են հայտնում, որ անտառների շվային վերականգնումը մի քանի սերունդներից հետո տանում է դեպի նրանց այլասերում և տնտեսական արժեքի աստիճանական անկում։ Եվ իրոք, մեր հանրապետության մի շարք լեռնային անտառների օրինակը ցույց է տալիս, որ երկարատև ու անտնտեսվար հատումներից հետո առաջացել են անտառային հսկայական զանգվածներ, բայց խիստ ցածր արդյունավետությամբ։ Այդ ծառերից շատերը չեն տարբերվում թփուտներից։

Անտառագիտության մեջ այս հարցը երկար ժամանակ անլուծելի էր։ Ծերացման պրոբլեմի այս նոր լուսաբանումը հնարավորություն ընձեռեց պարզաբանելու շվային ծառերի աճի էներգիայի անկման պատճառները և գտնելու այդ ծառերի թույլ աճն ու դրանցից ստացվող բնափայտի կորուստները կանխելու եղանակներ։

Այդ ծառերն իրենց կյանքի վաղ շրջանում, երբ դեռ կապված են մայրական բնի հզոր արմատային սիստեմի հետ, շատ արագ են աճում, սակայն 8—10 տարի հետո խիստ թուլանում է նրանց աճը և հետագայում սերմայիններն աճի էներգիայով աստիճանաբար գերազանցում են շվային ծառերին։

Շվային ծառերի վաղ ծերացման հիմնական պատճառը մայրական հզոր արմատների հերթափոխումն է թույլ զարգացած շվարմատներով։ Մյուս կողմից էլ ամեն մի կտրված ծառի փոխարեն նույն կենսական տարածության վրա առաջանում են 2-ից ավելին, որոնց մեջ ուժեղանում է պայքարը անհրաժեշտ կենսատարածության համար։

Ներկա ու հետագա բոլոր ուսումնասիրությունների ու փորձերի նպատակն է՝ գիտական միջոցներ մշակել, հնարավորություններ ստեղծել ծառերի ու բույսերի երկարակեցությունը ղեկավարելու, բարձր բերքատվությունն ապահովելու համար։

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՆՈՐ ԴԱՍԱԳՐՔԵՐԸ

«Միջնակարգ հանրակրթական դպրոցի աշխատանքների հետագա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ լուրջ խնդիրներ են դրված սովետական դպրոցի, ինչպես նաև դասագրքեր լույս ընծայող հրատարակչությունների առջև։

Նոր դասագրքերի ստեղծման բնագավառում առաջադրված են հետևյալ պահանջները. ապահովել կրթության բովանդակության և գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի զարգացման ներկա մակարդակների համապատասխանությունը. I—X դասարաններում սահմանել գիտության հիմունքների հաջորդական կապ, ավելի ռացիոնալ, ըստ ուսումնական տարիների բաշխել նյութը, ուսման չորրորդ տարվանից սկսել գիտության հիմունքների սիստեմատիկ ուսումնասիրությունը։ Դասագրքերում ու ձեռնարկներում եղած ավելորդ մանրամասներն ու երկրորդական նյութերը կրճատելու միջոցով աշակերտներին ազատել ավելորդ ծանրաբեռնվածությունից։

Դրանցից, թերևս, առավել կարևորը ուսուցման պրոցեսում գիտության արդի նվաճումների օգտագործումն է, դրանց միջև համապատասխանության ապահովումը, որը բացակայում էր դասագրքերում։ Դա նկատելի էր ինչպես բնական ու մաթեմատիկական, այնպես և հումանիտար գիտությունների դասագրքերում։ Անհրաժեշտ էր նաև գրականության, պատմության, աշխարհագրության և հումանիտար առարկաների մյուս դասագրքերում արտացոլել այն բոլոր էական փոփոխությունները, որ տեղի էին ունեցել մինչև մեր օրերը։

Գիտական շատ պրոբլեմների աշակերտներին ծանոթացնում, դրանց մասին նախնական պատկերացում են տալիս դեռևս ցածր դասարաններում։ Ուստի, ակամայից հարց է ծագում, թե ի՛նչ չափով և ինչպիսի՛ խորությամբ բացատրել նյութը, որպեսզի, մի կողմից՝ այն հասկանալի լինի ցածր դասարանների աշակերտներին, մյուս կողմից՝ գիտական տեսակետից չխեղաթյուրվի։ Այդ հարցը լուծվում է նոր դասագրքերում։

Ուսման բովանդակությունը գիտատեխնիկական առաջադիմության մակարդակին համապատասխանեցնելու համար անհրաժեշտ է հրաժարվել մանկավարժության մեջ գոյություն ունեցող այն տեսակետից, թե դպրոցական դասագիրքը պետք է լինի անառարկելի, պարունակի միայն գիտության կողմից մեկընդմիշտ ապացուցված դրույթներ։ Հիշենք, թե ոչ հեռու անցյալում ինչ գնահատական էինք տալիս հարաբերականության կամ նյութի քվանտային տեսությանը, կենսաբանության մեջ՝ ժառանգականության հարցին։ Ինչպես հայտնի է, կենսաբանությունն արմատական փոփոխություններ

է կրել. այն ներկա էտապում, թերևս, ամենաարագ զարգացող գիտությունն է (բացառությամբ կիբեռնետիկայի ու էլեկտրոնիկայի), որի նվաճումները բացառիկ նշանակություն ունեն մարդկության համար։ Վերջին 10—15 տարիներին կենսաբանության մեջ տեղի ունեցան որակական փոփոխություններ. իսկ հետազոտության իր մեթոդներով ու ստացված արդյունքներով այն ընդհուպ մոտեցավ ճշգրիտ գիտություններին։ Մոլեկուլային գենետիկայի բնագավառում ձեռք բերված հաջողությունները հեղաշրջող դեր կատարեցին ժառանգականության ու փոփոխականության տեսության մեջ, որոնց հետ առնչվում են մյուս բոլոր հարցերը։ Պարզ է, որ այդ ամենը չէին կարող չարտացոլվել կենսաբանության դասագրքում, և այն հիմնովին փոխվեց։

Օրգանական քիմիան այժմ զբաղվում է ամենաբարդ օրգանական նյութերի սինթեզով. արդեն ստացվել են սպիտակուցային բնույթի մի շարք նյութեր (ֆերմենտներ, հորմոններ)։ Այժմ սինթեզվում են այնպիսի օրգանական նյութեր, որպիսիք չկան բնության մեջ (պլաստմասսաներ, կաուչուկներ, սինթետիկ և արհեստական թելանյութեր և այլն)։ Այս բոլորն արտացոլված են X դասարանի օրգանական քիմիայի դասագրքում։

Գիտության զարգացման հարատև պրոցեսը պետք է բացահայտվի ուսումնական դասընթացներում։ Անշուշտ, այդ չի նշանակում, թե յուրաքանչյուր դասագիրք պետք է դարձնել գիտական վեճերի ու դիսկուսիաների ասպարեզ։ Սակայն գիտությունը դասագրքում չպետք է մատուցվի իբրև վերջնական ու քարացած ճշմարտություն, առանց հիպոթեզի ու պրպտումների։ Այնտեղ, ուր խոսվում է բնության ու հասարակության օրենքների մասին, կարտացոլվեն նաև հիպոթեզները, այդ բնագավառներում կատարվող ուսումնասիրությունները։ Գիտության մատուցման այս մեթոդը ո՛չ միայն կնպաստի գիտելիքների յուրացմանը, այլև կզարգացնի աշակերտների ստեղծագործական հակումները, ուսուցումը կդարձնի ավելի ակտիվ ու հետաքրքրական։

Նոր դասագրքերի ստեղծման չափազանց բարդ ու ծանր խնդիրը պահանջում է ավելի սերտ կապ գիտության և ուսումնական գործի միջև։ Տեղական դասագրքերի ստեղծման գործում ներգրավվել են հանրապետության խոշոր գիտնականները. այսպես՝ աշխարհահռչակ գիտնական Վ. Հ. Համբարձումյանի խմբագրությամբ կկազմվի աստղագիտության դասագիրքը, ուր կարտացոլվեն նաև վերջին տասնամյակների հայրենական աստղագիտության և աստրոֆիզիկայի նվաճումները։ Հայ գրականության և լեզվի դասագրքերի հեղինակներ են լինելու գրականագետներ, լեզվաբաններ՝ պրոֆեսորներ Մ. Մկրյանը, Ա. Ղարիբյանը, Էդ. Աղայանը, Գ. Սևակը, Ս. Աղաբաբյանը, Հր. Թամրազյանը, դոցենտ Հ. Բարսեղյանը և ուրիշներ։ Բացի դրանից, դասագրքերը կքննարկվեն գիտական ու մանկավարժական կոլեկտիվներում, հաշվի կառնվեն նրանց դիտողություններն ու կարծիքները։

Դասագրքերի ստեղծմանը մասնակցում են նաև հանրապետության ճանաչված ուսուցիչներն ու մանկավարժները։ Գիտնականի ստեղծած դասագիրքը, գիտական տեսակետից անթերի լինելով հանդերձ, շատ հաճախ ունենում է մեթոդական թերություններ։ Ուսուցիչը լրացնում է այդ բացը, թարգմանում գիտական «լեզուն», աշակերտի համար մատչելի դարձնում նյութը։ Դասագրքի մատչելիության պրոբլեմն ունի ո՛չ միայն գիտա-մեթոդական, այլև մասամբ՝ հրատարակչական-պոլիգրաֆիական բնույթ։ Սովետական հոգեբանների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դասավանդվող



նյութի յուրացման համար կարևոր նշանակություն ունեն դասագրքերի նկարազարդումը, տողամիջի տարածության չափը, տողերի երկարությունը, տառատեսակների ընտրությունը, նույնիսկ՝ տպագրական ներկը, տեքստի ֆոնը և այլն։

Նոր դասագրքերն ստեղծելիս հաշվի կառնվեն նաև ժամանակակից սերնդի զարգացման աստիճանն ու ընդունակությունները։ Մեր օրերի միջին դպրոցականն իր գիտելիքներով ու իմացությամբ տարբերվում է սրանից 20—30 տարի առաջվա միջին դպրոցականից։ Վերջին տասնամյակներում քաղաքի և գյուղի միջև ստեղծված սերտ կապերը, ռադիոյի ու հեռուստատեսության տարածումը, կենցաղում տեխնիկայի լայն կիրառումը և այլն խոշոր չափով խթանեցին անհատի զարգացմանը։ Այսօրվա ուսուցման տեմպերը չեն կարող նույնը լինել, ինչ տարիներ առաջ։

Ներկա դասագիրքը պետք է նպաստի աշակերտների կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը, նրանց զինի հասարակության զարգացման օրենքների իմացությամբ, դաստիարակի սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, բացահայտի Սովետական Միության բոլոր ժողովուրդների եղբայրական միասնության, սոցիալիստական երկրների աշխատավորության հետ մեր ժողովրդի բարեկամության նշանակությունը։ Այդ ամենը պետք է արվի ոչ թե բարոյախոսությամբ, այլ աշակերտության համար հետաքրքրական, ուշագրավ թեմաների շարադրման միջոցով։

Կարևոր է նաև դասագրքերի ծավալի հարցը։ Յուրաքանչյուր դասագրքի համար հարկավոր է ընտրել ամենահամապատասխան ծավալ։ Մեծածավալ, մանրամասներով ծանրաբեռնված դասագիրքը չի կարող չվնասել ուսումնական գործին, եթե նույնիսկ այն լինի հետաքրքրական, գիտական բարձր մակարդակով։ Այդպիսի դասագրքում դժվար է ջոկել գլխավորը երկրորդականից, յուրացնել ու հիշողության մեջ ամրապնդել էականը, կարևորը։

Սակայն համառոտ շարադրված դասագիրքը ևս, ուր տրված են միայն սահմանումներ, եզրակացություններ կամ ընդհանրացումներ, դժվարացնում է ուսումնական պրոցեսը։ Այդպիսի դասագիրքն սպանում է հետաքրքրասիրությունը տվյալ գիտության հանդեպ, նպաստում ոչ թե առարկայի ակտիվ յուրացմանը, այլ սերտելուն։

Հետաքրքրասիրությունը ուսումնական պրոցեսի համար ունի վճռական նշանակություն։ Հրատարակչությունը մեծ ջանքեր է գործադրում, որպեսզի դասագրքի բովանդակությունը, շարադրանքի բնույթն ու ձևը, ձևավորումն ու պոլիգրաֆիական կատարումը աշակերտի հոգում սեր հարուցեն գրքի, ուսման հանդեպ, միաժամանակ զարգացնեն նրա գեղագիտական ճաշակը։ Դասագիրք ստեղծող բոլոր օղակները՝ հեղինակներն ու մանկավարժները, հրատարակիչներն ու պոլիգրաֆիստները չպետք է մոռանան այն հանրահայտ ճշմարտությունը, որ բոլոր թերությունները դասագրքի համար խոշոր են։ Այդ ամենը նկատի ունենալով որոշ դասագրքեր կհանվեն։

Գործող դասագրքերի զգալի մասը կվերակառուցվի, կբարեփոխվի։ Այդ բարեփոխումները կկրեն արմատական բնույթ։ Վերցնենք, օրինակ, հասարակագիտության դասագիրքը։ Եթե ուսումնական նյութի բաշխման տեսակետից նախկին դասագրքում չկար համամասնություն և շատ տեղերում այն հակասում էր ուսումնական պլանին, ապա այժմ այդ թերությունը վերացել է։ Ճշտվել են շատ ձևակերպումներ։ Նոր դասագրքում ավելի մեծ տեղ է հատ-

կացված փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի հարցերի ուսումնասիրությանը։ Ուշադրությունը բևեռված է մարքս-լենինյան գիտության միայն հիմնական դրույթների վրա։ Տրամաբանական ավելի կուռ կառուցվածքի շնորհիվ հասարակագիտության նոր դասագիրքը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու դասավանդման տեսական մակարդակը։ Նոր դասագրքում ու ծրագրում չկան մասնատվածություն, անառարկելի բացարձակություն, որոնք կաշկանդում էին ուսուցչին, զրկում նրան ստեղծագործական ինքնուրույնությունից։ Այստեղ առաջին անգամ սիստեմատիկորեն քննարկվում են այնպիսի հարցեր, որոնց նպատակն է ամբողջական գիտելիքներ տալ գիտական առանձին պրոբլեմների շուրջ։ Օրինակ, պատմական մատերիալիզմ բաժնում մանրամասն բացահայտված են մարդկանց հանրության պատմական ձևերը (տոհմ, ցեղ, ժողովուրդ և ազգ հասկացությունները)։

Դասագրքում առանձնապես մեծ ուշադրություն է նվիրված հասարակության զարգացման ընդհանուր օրենքների բացահայտմանը (I, II և III թեմաներ)։ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժն է թեման ուսումնասիրվում է հասարակագիտության և պատմության անցած նյութի ընդհանրացման միջոցով, որի շնորհիվ ավելի ցայտուն է բացահայտվում ՍՄԿԿ աճող դերը կոմունիստական շինարարության մեջ։

Հասարակագիտություն դասընթացն ավարտվում է համաշխարհային զարգացման հանրագումարների ու հեռանկարների քննարկմամբ։ Դասագրքի տրամաբանական այսպիսի կառուցվածքը, միջնակարգ դպրոցի պայմաններում, նպաստում է դպրոցականների գիտական աշխարհայացքի ձևավորմանը, ապահովում նրանց գաղափարական-քաղաքական ուսուցումը։

Պատմության նոր դասագրքերում նորագույն պատմությունը շարունակվում է մինչև մեր օրերը և, որ կարևորն է, նյութը մատուցվում է աշակերտներին առավել ռացիոնալ մեթոդով։ Դասագիրք կազմողները ջանում են նպատակահարմար, պատշաճ հասկացություններ, փաստեր ընտրել և մատչելի շարադրել նյութը՝ հաշվի առնելով կրթա-դաստիարակչական պահանջները։

Շատ կարևոր են թեմաների հաջորդական շարադրանքը, տեքստի բաժանումը տրամաբանական ամբողջական մասերի՝ գլուխների, ենթագլուխների, ինչպես և պատկերավոր, դյուրըմբռնելի, տպավորիչ, դարաշրջանի կոլորիտն արտացոլող գրելաձևը։ Դասագիրք կազմողներն աշխատում են այնպես անել, որ այն առավել չափով նպաստի սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ինչպես և էսթետիկական, գիտաաթեիստական դաստիարակությանը, ջանում ապահովել հաջորդական կապը տարբեր դասարանների պատմության դասընթացների միջև։

Ռուսաց լեզվի և գրականության նոր դասագրքերն իրենց կառուցվածքով, բովանդակությամբ ու ձևով մեծ չափով կտարբերվեն ներկայումս գործածվողներից։ Ռուսաց լեզվի դասագրքի հիմնական նպատակը աշակերտների բանավոր ու գրավոր խոսքի զարգացումն է, որով և պետք է պայմանավորվեն նոր դասագրքի բնույթը, բովանդակությունն ու կառուցվածքը։

Քերականության կանոններից, առաջին հերթին, դասագրքերում կզետեղվեն այնպիսիք, որ կնպաստեն նախադասություն կազմելուն և ընդհանրապես կզարգացնեն աշակերտի խոսքի կուլտուրան։ Դասագրքում գրեթե տեղ չեն գտնի սահմանափակ թվով բառերի վրա տարածվող կամ միայն լեզ-



վական ընդհանուր օրինաչափություններին վերաբերող կանոնները. կանոնների ձևով կտրվեն միայն ուղղագրական ու կետադրական օրինաչափությունները։ Իսկ խոսքի զարգացմանը նպաստող բառապաշարային-քերականական նյութերը նախկին դասագրքերում զետեղված նյութերից կտարբերվեն նրանով, որ դրանք կառաջադրվեն գրեթե բացառապես տիպային կառուցվածքներով (մոդելներով)։ Ցածր դասարաններում առաջադրվում են առավելապես դասակարգված, իսկ բարձր դասարաններում՝ ընդհանրացված մոդելներ։

Եթե այժմյան դասագրքերում կիրառվում է ռուսաց լեզվի ուսուցման կոմբինացված մեթոդը, ապա նորերում կգերիշխի գիտակցական-գործնականը։ Չափազանց կարևոր է, որ քերականական վարժությունների համար ընտրված օրինակներում առավել չափով օգտագործվեն ընթերցանության համար ընտրված տեքստերը։ Ռուսաց լեզվի այժմյան դասագրքերի համեմատությամբ նորերում ավելի մեծ չափով կօգտագործվեն դիտողական նյութերը։ Գրեթե նույն սկզբունքներով են ստեղծվելու նաև օտար լեզվի դասագրքերը։

Այժմ մի քանի խոսք հայ գրականության նոր դասագրքերի մասին։

Ս. Աղաբաբյանի սովետահայ գրականության դասագիրքն (X դաս.) ունի մի շարք արժեքավոր կողմեր։ Հեղինակը խուսափել է նախկին դասագրքերում նկատվող մթամածությունից, խճողումներից, մակերեսայնությունից։ Դասագիրքը գրված է հստակ ու պարզ լեզվով, բովանդակալից է, ներդաշնակ ձևով ու բովանդակությամբ, գաղափարների պատշաճ վերլուծությամբ։ Սա զգալի առավելություն է նախկինի համեմատությամբ։

Դասագիրքը զերծ է տեղական սահմանափակվածությունից. մեր գրականությունն աշակերտներին ներկայացվում է իբրև համաշխարհային գրական պրոցեսի մի բնական օղակ, միաժամանակ նպաստելով երեխայի մտահորիզոնի ընդլայնմանն ու խորացմանը։

Նորություն է սփյուռքահայ գրականությանը նվիրված ակնարկը, որի միջոցով մեր աշակերտությունը կծանոթանա սփյուռքին, սփյուռքահայ մի շարք անվանի գրողների հիմնական ստեղծագործություններին։

Հր. Թամրազյանի հայ գրականության IX դասարանի դասագիրքն զգալի չափով բարելավվել է՝ ելնելով նոր ուսումնական ծրագրի պահանջներից։ Դասագրքի միջոցով մեր աշակերտները ծանոթանում են Մուրացանի, Շիրվանզադեի, Թումանյանի, Իսահակյանի, Նար-Դոսի, Վարուժանի ու Տերյանի ստեղծագործություններին, թափանցում դրանց գեղարվեստական հմայքի գաղտնիքները, ըմբռնում գաղափարական մեծ արժեքը։ Դասագրքում ավելացված են երկու գլուխ՝ նվիրված արևմտահայ մեծագույն գրողներ Զոհրապին ու Մեծարենցին։ Մեր միջնակարգ դպրոցի աշակերտները հնարավորություն կունենան ծանոթանալու այդ գրողների ստեղծագործական հարուստ աշխարհին։

Դասագրքի արժանիքներից է նաև գրական-տեսական մի շարք հարցերի նոր բացատրությունը, որի կարիքը մեծապես զգացվում էր միջնակարգ դպրոցում։

Նոր է նաև Մ. Մկրյանի հայ գրականության պատմության VIII դասարանի դասագիրքը։ Անվանի գիտնականն զգալի չափով բարեփոխել է գիրքը՝ հաշվի առնելով միջնակարգ դպրոցում մայրենի գրականության դասավանդ-

ման գիտական ու մանկավարժական պահանջները, հաղթահարելով դպրոցական դասագրքին անհարիր բարդությունը։

Շուտով տպագրության կհանձնվի I դասարանի մաթեմատիկայի դասագիրքը։ Ի տարբերություն նախորդի, այն կազմել են հայ հեղինակներ, խնդիրների ու վարժությունների համար օգտագործելով Հայաստանի ֆլորային, ֆաունային վերաբերող նյութեր, աշխարհագրական անուններ։ Ծրագրային նյութն այստեղ ավելի խտացված է, որովհետև չորս տարվա դասընթացն ամփոփված է երեք տարվա դասագրքերում (I, II և III դաս.), վերացված է թվաբանության, հանրահաշվի տարրերի և երկրաչափական նյութի միջև եղած անջրպետը։

Նույն կերպ են կազմված նաև IX ու X դասարանների Հանրահաշիվ և տարրական ֆունկցիաներ ձեռնարկները։

Բուհերի ընդունելության քննությունների՝ երկար տարիների փորձը ցույց է տվել, որ միջնակարգ դպրոցի սովորողների զգալի մասի ստացած մաթեմատիկական գիտելիքները չեն բավարարում բուհերի ընդունելության քննությունների պահանջները։ Ավելին, տարրական և բարձրագույն մաթեմատիկայի դասընթացների միջև անջրպետ կա։ Այն վերացնելու նպատակով անհրաժեշտ է տարրական մաթեմատիկայի դասավանդումը վարել այնպես, որ սովորողը ձեռք բերի նաև նախնական գիտելիքներ բարձրագույն մաթեմատիկայից։ Դա կվերացնի այն միջնորմը, որ գոյություն ունի միջնակարգ դպրոցի ու բուհերի միջև։

Նույնը պետք է ասել նաև ֆիզիկայի դասագրքերի վերաբերյալ։ Ֆիզիկայի հայտնագործությունները կարևոր նշանակություն ունեն տեխնիկայի համար։ Այս ասպարեզի վերջին ժամանակների նվաճումներն արտացոլված չեն հին դասագրքերում և ավելի քիչ տեղ է տրված գործնական աշխատանքներին։ Աշակերտը տեսականորեն պատկերացնում է, թե ինչ են զուգահեռ, հաջորդական և խառը միացումները, սակայն դժվարանում է կիրառել դրանք։ Հրատարակչությունը պատրաստում է VI դասարանի ֆիզիկայի նոր դասագիրքը (թարգմանական), ուր ավելի մեծ տեղ է տրված գործնական ու լաբորատոր աշխատանքներին, ֆիզիկայի ժամանակակից նվաճումներին և այլն։

1969 թվականից լույս կընծայվեն նոր դասագրքերը։ Ծանր ու բարդ աշխատանք է սպասում ինչպես դասագրքերի հեղինակներին, այնպես և «Լույս» հրատարակչությանը։

Օգտվելով առիթից, ցանկանում ենք խոսել մի խիստ կարևոր հարցի՝ դասագրքերի պահպանության մասին, որն ունի նաև բարոյադաստիարակչական մեծ նշանակություն։ Աշակերտների մեծ մասն ուսումնական տարվա վերջում ոչնչացնում է դասագրքերը, առանց մտածելու, որ դրանց վրա ծախսվել են պետական հսկայական միջոցներ։ Դասագրքի վրա կատարված ծախսերը շատ ավելի մեծ են, քան դրանց վաճառքից ստացված գումարները։ Օրինակ, միայն հին աշխարհի պատմության դասագրքի լույսընծայումից հրատարակչությունն ունենում է մոտ 3900 ռ. վնաս, IV դասարանի թվաբանության դասագրքի վերահրատարակումից՝ 3270, Այբբենարանի՝ 1300 ռ. վնաս։ Եվ, եթե նկատի ունենանք, որ ամեն տարի հրատարակվում և վերահրատարակվում են 102—110 անուն դասագիրք, ապա պարզ կդառնա, թե որքա՞ն մեծ են դպրոցական դասագրքերի վերահրատարակումից առաջացած վնասները։ Ոչնչացնելով դասագիրքը՝ երեխան փաստորեն վնաս է հասցնում հասարակությանը։



Ամեն տարի հսկայական միջոցներ, մարդկային աշխատանք են վատնըվում դասագրքերի հրատարակման վրա. հուլիս—օգոստոս ամիսներին ավարտվում է տվյալ ուսումնական տարվա դասագրքերի հրատարակումը, և անմիջապես հրատարակչությունն սկսում է նախապատրաստել և արտադրություն իջեցնել գալիք տարվա դասագրքերը։ Դեռ մի քանի օր առաջ լույս տեսածը նորից բռնում է հրատարակչական ու տպարանական պրոցեսների երկարատև ու դժվարին ուղին։ Նորից ու նորից լարված օրերի ու ամիսների աշխատանք, հսկայական քանակությամբ թուղթ, ստվարաթուղթ և այլ նյութեր են ծախսվում, որպեսզի նույն դասագրքերը լույս ընծայվեն ու տրվեն դպրոցականներին։ Հաշվումները ցույց են տվել, որ եթե 3 տարի միևնույն դասագրքերը պահպանվեն և նույնիսկ ձրի տրվեն երեխաներին, կտնտեսվի այդ դասագրքի վրա ծախսվող միջոցների մոտ 30 տոկոսը։ Եվ, եթե այդ դասագրքերն աշակերտները պահպանեն ու տան իրենց հաջորդներին, ապա հրատարակչությունը հնարավորություն կունենա դրանց փոխարեն հարուստ ու բազմազան գրականություն հրատարակելու աշակերտների, ուսուցիչների ու ծնողների համար։ Պլանում հնարավոր կլինի զետեղել ուսումնական ծրագրերի մեջ մտնող գեղարվեստական գործեր, ինչպես նաև գիտատեխնիկական հանրամատչելի գրքեր, որոնք մեծ չափով կնպաստեն մեր դպրոցականների գիտելիքների հարստացմանը։

Պետական ու հանրային ունեցվածքի, ժողովրդի կուլտուրական ժառանգության նկատմամբ սրտացավություն, քաղաքացիական բարեխղճություն դաստիարակելու համար վիթխարի նշանակություն կունենա դասագրքի և ընդհանրապես գրքի նկատմամբ սեր հարուցելը։

Հեղինակների, հեղինակային կոլեկտիվների հետ մեկտեղ «Լույս» հրատարակչությունը ջանում է մեր սովորող երիտասարդությանը, աշակերտությանն ապահովել բարձրորակ, բովանդակալից ու պատշաճ ձևավորված դասագրքերով։

Այս գործում մեզ մեծ օգնություն ցույց կտան մանկավարժները, դըպրոցների ուսուցիչները, եթե դասագրքերի հրատարակումից հետո ուղարկեն իրենց դիտողություններն ու ցանկություններն այդ դասագրքերի մասին, հանդես գան օգտակար առաջարկություններով։

«Լույս» հրատարակչությունն սպասում է նրանց, ինչպես և բանիմաց շատ ընկերների գործարար արձագանքին։

Մ. Հ. ՄԿՐՏՉՅԱՆ
«Լույս» հրատարակչության դիրեկտոր



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ԱՌԱՏԱՁԵՌՆ Է ՀԱՅՐԵՆԻ ԲՆԱՇԽԱՐՀԸ

(Էջեր երկրաբանության պատմությունից)

*Հայերը դեռևս հնագույն ժամանակներից զբաղվում էին լեռնագործությամբ ու մետաղագործությամբ։ Հնագետները կուտակված վիթխարի փաստական նյութի հիման վրա գտնում են, որ հայկական լեռնաշխարհում հանքերն սկսել են մշակվել մեր թվականությունից շատ առաջ։*

*Մետաղների և դրանցից ձուլված գեղարվեստական արույրների առատությունը հայկական լեռնաշխարհում, անշուշտ, խոսում է ժամանակի զարգացած լեռնային և դրա հետ կապված մետաղաձուլական արդյունագործության գոյության մասին։ Այս առումով Արևելյան Հայաստանը դեռևս չի ուսումնասիրված։ Ինչ վերաբերում է Սովետական Հայաստանին, ապա դրա տերիտորիայում հայտնաբերված են մետաղաձուլման բազմաթիվ օջախների հետքեր, խարամի, ձուլվածքների, կաղապարների մնացորդներ։*

*Վերջին տարիների ընթացքում երկրաբանների և հնէաբանների գիտական համագործակցության շնորհիվ Արարատյան դաշտավայրում՝ Մեծամոր գետի ակունքում, հայտնաբերված է լեռնամետալուրգիական արդյունագործության հնագույն օջախներից մեկը (մ. թ. ա. III հազարամյակից սկսվող) մետաղաձուլման հարմարանքներով։ Առայժմ պեղված են 23 մետաղաձուլական վառարան, ձուլվածքների բազմաթիվ մնացորդներ, կաղապարներ և այլն։*

*Պատմական մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև Սիսիմադանի հանքավայրի հին փորվածքները՝ Փամբակ գետի աջ ափին, լեռնային հանքատեղերի և խարամային շեղջերի մնացորդները Շահալի—էլարի շրջանում, հնագույն խարամների և օքսիդացված հանքակտորների կույտերը Թումանյան գյուղի և Ստեփանավան քաղաքի մոտակայքում, ինչպես նաև հնագույն ձուլարանների մնացորդներն ու խարամային շեղջերը Դիլիջան քաղաքի մոտ և Հայաստանի մի շարք շրջաններում։ Լեռնագործության հնագույն կենտրոնում՝ Զանգեզուրում, հանդիպում են փորվածքներ, որոնք արվել են առանց վառոդ օգտագործելու և իրենցից ներկայացնում են 20 մ խորությամբ հանքահորեր, փոսի կամ առվակի տեսքով օգտագործված բաց հանքատեղեր։*



*Հնագույն ժամանակներում ոսկի է արդյունահանվել Զոդի, Մեղրաձորի, Համպաչիմանի շրջաններում։*

*Զոդում մինչև օրս պարզ երևում են հանքի հնագույն մշակման հետքերը՝ խարամները, գետնախորշի քարե ապտիճանները և այլն։ Հանքավայրի շրջապատում գտնվել է Հռոմի կայսր Օկտավիանոսի դրոշմանիշով մետաղադրամ։ Այնուհետև, Սևանա լճի՝ ջրից ազատված տերիտորիայում հնէաբանները հայտնաբերել են մեծ քանակությամբ քարե գործիքներ, որոնք օգտագործվել են ոսկու հանքաքարը մանրացնելու համար. իսկ գերեզմանները պեղելիս գտնվել են հնագույն ժամանակներում պատրաստված ոսկե զարդեր, որոնց մանրազնին հետազոտությունները Մոսկվայում ցույց տվեցին, որ դրանք պատրաստված են Զոդի ոսկուց։ Հայաստանն այդ ժամանակ Մերձավոր Արևելքի երկրների ոսկու գլխավոր մատակարարներից մեկն էր. այդ ոսկին հանգիստ չի տվել հույն, պարսիկ, արաբ զավթիչներին։ Ստրաբոնը գրում՝ է, որ Ալեքսանդր Մակեդոնացին հանքերին տիրելու համար Հայաստան է ուղարկել իր զորավար Մենոնին։ Տեղի բնակչությունն ուժեղ դիմադրություն է ցույց տվել զավթիչներին։ Մարտերից մեկում ընկել է Մենոնը։*

*Հետաքրքրական է նշել, որ Արևելքի ժողովուրդները վաղ ժամանակներից օգտագործել են Փոքր Կովկասի և, հատկապես, Հայաստանի երկաթը. սակայն ժամանակի ընթացքում հանքավայրերի մշակումը դադարեցվել է կուլտուրապես հետամնաց և վաչկատուն հորդաների տիրապետության հետևանքով։ Ներկայումս երկրաբանների և գեոֆիզիկոսների համատեղ ջանքերով Սովետական Հայաստանի տերիտորիայում հայտնաբերվել են ավելի քան հարյուր հանքավայրեր և երևակումներ, որոնց ուսումնասիրության արդյունքները հիմք են տալիս ասելու, որ հանրապետությունում շուտով կստեղծվի արդյունաբերության մի նոր ճյուղ՝ սև մետալուրգիան։*

*Երկրաբանության մասին խոսելիս, ամենից առաջ նկատի է առնվում այդ գիտության հաջողությունները օգտակար հանածոների նոր հանքավայրերի հայտնաբերման բնագավառում։ Մինչև մ. թ. VII դարը բնական գիտությունների վերաբերյալ առանձին հարցեր արծարծել են Եզնիկը, Եղիշեն, Դավիթ Անհաղթը և ուրիշներ։ Սակայն Հայաստանում բնական գիտությունների, մասնավորապես, մաթեմատիկայի, աստղագիտության և վերջինիս հետ այն ժամանակ սերտ շաղկապված աշխարհա-երկրաբանական գիտությունների հիմնադիրն է VII դարի հայ բնագիտական մտքի խոշոր ներկայացուցիչ Անանիա Շիրակացին, որի աշխատությունները մեծ ազդեցություն են թողել ո՛չ միայն իր ժամանակակիցների, այլև հետագա գիտնականների վրա։*

*Ինչպես ռուս, այնպես էլ արտասահմանյան ճանապարհորդների գրքերում մենք գտնում ենք մի շարք տվյալներ, որոնք վերաբերում են Կովկասի և, մասնավորապես, Հայաստանի երկրաբանությանը։ Նրանց թվում են իր ժամանակի ականավոր գիտնական, Սևանա լիճը նկարագրող առաջին եվրոպացին՝ Շարդենը, Գյուլդենշտեդը, էհվալդը, Գուրեը, Վոսկոբոյնիկովը, Դյուբուա դե-Մոնպերյոն, Կոխը, Վագները, Նեշելը և ուրիշներ, որոնք Հայաստան են այցելել 1670—1854 թթ.։*

*Ռուսական Բերգ-Կոլեգիայի հանձնարարությամբ առաջին անգամ Անդրկովկասի, ինչպես և Հայաստանի երկրաբանության և լեռնահանքային արդյունաբերության ուսումնասիրությամբ զբաղվեցին Մարկշեյդեր Վոնյավինի ղեկավարած լեռնային էքսպեդիցիայի անդամները։ 1767—1768 թթ. նրանց աշխատանքի արդյունքների մասին զեկուցվեց Բերգ-Կոլե-*

գիայի նիստում, որն անհրաժեշտ համարեց զբաղվել Կովկասյան երկրամասի ընդերքի ուսումնասիրությամբ։ Այնուհետև Կովկաս են ուղարկվում գիտական մի շարք էքսպեդիցիաներ ակադեմիկոս Գմելինի, Մուսին-Պուշկինի, Գյուլդենշտեդի և այլ մասնագետների ղեկավարությամբ։

Խոշոր մասնագետ Ա. Մուսին-Պուշկինը (1760—1805) կազմեց Հայաստանում լեռնագործության զարգացման լայն ծրագիր. Նրա էքսպեդիցիայի աշխատանքներին մասնակցեցին տեղի մասնագետները (իշխաններ Արղությինսկի եղբայրները, Բեգտաբեգովը և Մելիքովը)։

Լեռնահանքային արդյունագործության զարգացման արշալույսին հայ երիտասարդությունը ձգտում էր տիրապետել տեխնիկական գիտություններին։ Հայտնի է, որ Ա. Մուսին-Պուշկինը խնդրել էր լեռնային կոլեգիային՝ հայ երիտասարդներից առավել ընդունակներին իր հայեցողությամբ աշխատանքի ընդունել և կոչումներ շնորհել։ Արդեն XIX դարի վերջում զգալի թվով հայ երիտասարդներ սովորում էին Ռուսաստանի և Եվրոպայի տարբեր քաղաքներում՝ Պետերբուրգում, Մոսկվայում, Վարշավայում, Տոմսկում, Բեռլինում, Ժնևում և այլուր։ Նրանցից շատերը խոշոր մասնագետներ դարձան։ Նշենք հայ նշանավոր երկրաբան, ռուսական ակադեմիայի անդամ Անդրեաս Արծրունուն, որը բացի Կովկասում, մասնավորապես Հայաստանում, Ուրալում և Գերմանիայում վարած երկրաբանական հետախուզական աշխատանքներից, զբաղվել է նաև տեսական խոշոր նշանակություն ունեցող գիտական հետազոտություններով։ Հանքաբանության, գեոքիմիայի և բյուրեղաքիմիայի հետաքրքրական և կարևորագույն բնագավառներից մեկին՝ հավասարաձևունակությանը (իզոմորֆիզմ) նվիրված նրա աշխատությունները պահպանել են իրենց գիտական նշանակությունը։

Անցյալ դարի երկրորդ կեսերին Ռուսաստանում կազմավորվեց երկրաբանական ամենաուժեղ դպրոցներից մեկը։ Եվ այն ժամանակվանից միջազգային կոնգրեսներում ռուս երկրաբաններն առաջատար դիրք գրավեցին։

Երկրաբանական հետախուզական աշխատանքների բոլոր փուլերում վիթխարի նշանակություն ունեն երկրաբանական քարտեզահանումները։ Անցյալ դարի մասնագետների մի ամբողջ խմբի, ինչպես նաև անձնական երկրաբանական հետազոտությունների արդյունքներն ամփոփված են ակադեմիկոս Հ. Աբիխի երկրաբանական քարտեզներում։ 1908 և 1913 թ. Կովկասի լեռնային վարչությունը լույս նոր երկրաբանական քարտեզներ հրատարակեց։

Պետք է նշել, որ հենց այդ ժամանակ սկսվում են հայ ավագագույն երկրաբան Հ. Տ. Կարապետյանի բեղմնավոր հետազոտությունները Կովկասի տերիտորիայում։ Նա իրեն հատուկ եռանդով ձեռնամուխ եղավ պղնձի, բազմամետաղների, ածխի և ցեմենտի հումքի հանքատեղերի հետազոտմանը Ադրբեջանում, Վրաստանում, Թուրքմենիայում, ինչպես և Իրանում ու Թուրքիայում։ Անդրկովկասում սովետական իշխանության հաստատումից հետո Հ. Տ. Կարապետյանը դառնում է երկրի լեռնահանքային արդյունաբերության վերականգնման և զարգացման ակտիվ գործիչներից մեկը։ Գիտության վաստակավոր գործիչ, դոկտոր-պրոֆեսոր Հ. Տ. Կարապետյանը Հայաստանի ժողտնտխորհի նախագահության անդամ էր և գիտական-տեխնիկական խորհրդի նախագահը։

Մինչև հեղափոխությունը կատարված երկրաբանական հետախուզական բոլոր աշխատանքները մեծ նշանակություն ունեցան Հայաստանի ընդերքը յուրացնելու գործում։ Սակայն մի շարք պատճառներով այդ ոչ լրիվ և ոչ համարժեք երկրաբանական նյութերը չէին կարող լուծել նորաստեղծ սովետական հանրապետության առջև դրված մեծ խնդիրները։



Հայաստանի առավել բեղմնավոր ու պլանաչափ երկրաբանական հետազոտությունների ժամանակաշրջանն սկսվում է սովետական իշխանության հաստատման առաջին տարիներից, երբ երկրաբանական մտքի զարգացումը, երկրաբանների մեծ բանակի տեսական-գործնական աշխատանքները հանքային հարստություններ յուրացնելու մարզում մեծ խթան հանդիսացան հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության ու մշակույթի զարգացման գործում։

Պետական երկրաբանական ծառայության սկիզբը Հայաստանում դրվել է 1923 թվականին, երբ ստեղծվեց «Հայպղինձ» տրեստը և ՀՍՍՀ ժողկոմխորհին կից հիմնվեց լեռնային բաժին։ Այնուհետև հիմնվում է գլխավոր երկրաբանական վարչության ներկայացուցչությունը։ 1931 թ. Թբիլիսիում կազմվում է ջրաերկրաբանական-երկրախուզական վարչության պետական անդրկովկասյան տրեստ, իսկ Հայաստանում՝ նրա ներկայացուցչությունը։ 1932 թ. այդ կազմակերպության հետ զուգընթաց հանրապետությունում գործում են հանքային հումքի համամիութենական ինստիտուտի բաժանմունքը, կիրառական հանքաբանության ինստիտուտը. 1934 թ. կազմակերպվում է անդրկովկասյան տրեստի հայկական երկրաբանական բյուրոն, իսկ 1938-ին՝ Հայաստանի տերիտորիալ երկրաբանական վարչությունը։

Այսպիսով, 1923 թ. ինչպես Հայաստանի, այնպես էլ Սովետական Միության այլ հանրապետություններից եկած երկրաբաններն սկսեցին արժեքավոր ուսումնասիրություններ կատարել մեր հանրապետությունում։

Հարկ է նշել, որ նախասովետական Հայաստանը չուներ ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն և զրկված էր մասնագետներ պատրաստելու հնարավորությունից։ Սովետական տարիներին երկրում ծավալվող սոցիալիստական շինարարությունն առաջադրեց նոր մասնագետների պատրաստման անհրաժեշտությունը։ Առաջին հնգամյակի նախօրյակին զգալի հաջողություններ էին ձեռք բերվել Հայաստանի ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման գործում։ Ամբողջովին վերականգնվեց մետաղագործական արդյունաբերությունը, ստեղծվեցին արդյունաբերական նոր ճյուղեր, ընդլայնվեց շինանյութերի արտադրությունը, որի հիմքը հանդիսացան Արթիկի տուֆը, Անիի պեմզան, մարմարի հարուստ հանքերը։

Երկրաբանական և լեռնա-ինժեներական կադրերի անհրաժեշտությունն ավելի սուր զգացվեց, երբ (ժողտնտեսության զարգացման առաջին հնգամյակի պլանի համաձայն) խնդիր դրվեց հանրապետության զարգացող արդյունաբերությունն ապահովել հումքով։ Ելնելով դրանից, 1927 թ. կազմակերպվում է Երևանի լեռնամետաղագործական տեխնիկումը (լայն պրոֆիլով), իսկ 1934 թ. պետական համալսարանում բացվում է երկրաբանական-աշխարհագրական ֆակուլտետ՝ պրոֆեսոր Տ. Ա. Ջրբաշյանի ղեկավարությամբ։

Այդ տարիներին Հայաստանի ընդերքի ուսումնասիրման և հանքային արդյունաբերության սպասարկման գործում բեղմնավոր աշխատանք էին կատարում նաև կենտրոնական գիտահետազոտական կազմակերպությունները, համամիութենական հանքաբանական կոմիտեն։ Առանց չափազանցնելու կարելի է ասել, որ Հայաստանում աշխատել են Սովետական Միության երկրաբանական գիտության բոլոր մասնաճյուղերի խոշոր գիտնականները։

Մեր երկրում և նրա սահմաններից դուրս հայտնի հայ գիտնականներ Վ. Ն. Լոդոչնիկովը (Վ. Մ. Նավավարյանը)՝ մեր ժամանակի հռչակավոր քարաբաններից մեկը, բյուրեղաօպտիկական հետազոտություններով հայտնի Լ. Ա. Վարդանյանցը, ինչպես նաև գեոքիմիայի մեծ մասնագետ Ն. Ի. Խիթարովը (Մխիթարյան), որի աշխատանքներն արժանացել են Սովետական Միության գիտությունների ակադեմիայի բարձրագույն պարգևին՝ Վ. Ի. Վերնադսկու անվան մրցանակին, մեծ ներդրում են կատարել հայրենի գիտության մեջ։

Զարգացող արդյունաբերությունը հանքային հումքով ապահովելու համար երկրաբանական աշխատանքները հանրապետությունում օրըստօրե ընդլայնվում են։ Կազմակերպվում է լեռնային արդյունաբերության ձեռնարկությունների սիստեմատիկ գիտական-երկրաբանական սպասարկումը։ Այդ եռուն աշխատանքում տարեցտարի ներգրավվում է երիտասարդ մասնագետների մի ամբողջ բանակ՝ հանրապետության մայրաքաղաքի կրթական հաստատությունների շրջանավարտները, որոնք իրենց համառ աշխատանքի շնորհիվ ճանաչվել են հանրապետությունում, իսկ շատերը՝ նրա սահմաններից դուրս։

Երևանի պետական համալսարանի երկրաբանական ֆակուլտետն այս տարիներին դարձել է գիտական կենտրոն։ Այստեղ դասախոսություններ են կարդում և գիտական աշխատանք տանում հանրապետության լավագույն գիտնականներն ու մասնագետները՝ Հայաստանի գիտությունների ակադեմիայի իսկական անդամներ՝ Ի. Գ. Մաղաքյանը, Ս. Ս. Մկրտչյանը, Կ. Ն. Պաֆենհոլցը, Հայաստանի գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամներ Ա. Տ. Ասլանյանը, Ա. Ա. Գաբրիելյանը, երկրաբանական-հանքաբանական գիտությունների դոկտորներ Ս. Ի. Բալասանյանը, Բ. Ս. Վարդապետյանը և շատ ուրիշներ, որոնք խոշոր ներդրում ունեն նաև Հայաստանում հանքային հարստությունների հայտնաբերման և ուսումնասիրման գործում։

Հայաստանի գիտական կյանքում խիստ կարևոր իրադարձություն էր 1935 թ. Սովետական Միության գիտությունների ակադեմիայի Հայաստանի ֆիլիալի հիմնադրումը, որի առաջին նախագահ ընտրվեց մեր ժամանակի խոշորագույն գիտնական-երկրաբան Ֆ. Յու. Լևինսոն-Լեսինգը։ 1943 թ. վերջերին այդ ֆիլիալի հիման վրա կազմակերպվեց Հայաստանի գիտությունների ակադեմիան, որի կազմում առաջնակարգ տեղերից մեկը գրավեց երկրաբանական գիտությունների ինստիտուտը, որի լաբորատորիաներում և բաժիններում մշակվում են երկրաբանության տարբեր ճյուղերին վերաբերող բազմաթիվ հարցեր։

Հայաստանի գիտությունների ակադեմիայի երկրաբանական ինստիտուտի, ՀՍՍՀ Մինիստրների սովետին կից երկրաբանության և ընդերքի պահպանման վարչության և այլ կազմակերպությունների հետազոտությունների առանձնահատկությունն այն է, որ դրանց ընթացքում լայնորեն կիրառվում են ուսումնասիրման կոմպլեքսային մեթոդները։ Մանրամասն հետազոտվում են օգտակար հանածոների մի շարք հանքավայրերը, դրանց կառուցվածքը, մշակվում են նոր հանքավայրերի ուսումնասիրման ու որոնման առավել նպատակահարմար մեթոդներ։

Սովետական տարիներին հանրապետության գիտնականների կողմից Հայաստանի երկրաբանական կառուցվածքի և նրանից բխող հանքառաջացման բարդ պրոցեսների օրինաչափությունների բացահայտումը հնարավորություն տվեց օգտակար հանածոների նորանոր հանքավայրեր հայտնաբերելուն, որոնց բազայի վրա ստեղծվեցին և զարգացան ժողովրդական տնտեսության նոր



ճյուղեր։ Երկրաբանները հայտնաբերել և հետագայում հետախուզել են մոլիբդենի, պղնձի, ալյումինի, ոսկու, երկաթի և բազմաթիվ այլ հազվագյուտ մետաղների, բենտոնիտային կավերի, պեռլիտների, դիատոմիտների, հրակայուն և կաղապարման կավահողերի, քարաղի ու բազմազան շինարարական նյութերի հանքավայրեր, ինչպես նաև բարձրորակ հանքային բուժիչ ջրերի աղբյուրներ, արտեզյան ջրհորներ և ստորերկրյա ջրային հոսքեր։

Երկրաբանների ջանքերով Հայաստանի տերիտորիայում հայտնաբերված են 33 տեսակ մետաղների ավելի քան 900 հանքավայր ու երևակում։ Երկրով մեկ հայտնի են Քաջարանի, Ագարակի, Դաստակերտի պղնձամոլիբդենային, Ղափանի պղնձահանքային, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատներն ու հանքերը։ Շուտով հայտնի կդառնան Զոդի ոսկու, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատները։ Ճշտվում է այն կարծիքը, որ Հայկական լեռնաշխարհը հարուստ է ոսկեբեր երակներով։ Երկրաբաններն արդեն տվել են մի նոր՝ Մեղրաձորի ոսկու հանքավայրի նախնական արդյունաբերական գնահատականը։ Ուսումնասիրվում են Մեղրու, ինչպես նաև Գուգարքի շրջանները։ Արդյունքները բավական հուսալի են։ Կասկածից վեր է, որ շուտով Հայաստանն իր արժանավոր տեղը կգրավի ոսկու արդյունաբերության մեջ։

Ներկայումս մեր հանրապետությունը մոլիբդենի հետախուզված պաշարներով և արդյունահանությամբ ՍՍՀՄ-ում գրավում է երկրորդ, իսկ պղնձի արդյունաբերությամբ՝ երրորդ տեղը։

Հայտնաբերվել և շահագործման են հանձնվել բարձրորակ կրաքարերի, կվարցային ավազների, գիպսի, բազմերանգ մարմարների, տուֆերի, գրանիտների, պեմզաների խոշոր հանքավայրեր, որոնց բազայի վրա ներկայումս գործում են Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատը, Թումանյանի հրակայուն արուրքների, Արզնու ապակե տարաների գործարանները, Երևանի «Հայմարմար» կոմբինատը, Արթիկ տուֆի, Անիպեմզայի և մի շարք այլ վայրերի տուֆերի, ավազների հանքերը։ Ի դեպ, վերջերս լրացավ Արթիկ տուֆի հիմնադրման 40 տարին։ Նրա վարդագույն տուֆով են բարձրացել Դնեպրոգէսը, Մինգեչաուրգէսը, Ռուսթավին, Սումգաիթը, Մոսկվայի, Խարկովի, Կրասնոդարի, Բաքվի, Սոչիի, Սուխումիի, Թբիլիսիի և Միության շատ քաղաքների արդյունաբերական ու կուլտուրական կառույցները։ Այժմ Հայաստանի տուֆի, պեմզայի, պեռլիտի, մարմարի որոշ տեսակներ հայտնի են ո՛չ միայն մեր երկրի ավելի քան 200 քաղաքներում, այլև Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում, Չեխոսլովակիայում, Կուբայում, Կոնգոյում և աշխարհի շատ երկրներում։

Հետաքրքրական է նշել, որ այս տարի Ճապոնիայի Օսակա քաղաքում բացվող համաշխարհային «Էքսպո—70» ցուցահանդեսին կմասնակցի նաև ՀՍՍՀ Մինիստրների սովետի երկրաբանական վարչությունը, որը կներկայացնի Հայաստանի օգտակար հանածոների նմուշները, ընդերքի ուսումնասիրման գործում հայ երկրաբանների հաջողությունները պատկերող դիագրամներ, ֆոտոնկարներ և դիդակտիկ այլ նյութեր։

Երկրաբանները հայտնաբերել են բարձրորակ և բուժիչ հանքային ջրերի ավելի քան 550 աղբյուր. դրանց հիման վրա ստեղծվել են Արզնի, Ջերմուկ, Հանքավան առողջարանները։

Երկար ժամանակ է, ինչ երկրաբանները գազ և նավթ հայտնաբերելու նպատակով համառորեն ուսումնասիրում են Արարատյան գոգավորության և դրա հարակից շրջանները. փորվել է հանրապետությունում ամենախոր հո-

րատանցքը։ Այդ աշխատանքների շնորհիվ երկրաբանները եկել են այն եզրակացության, որ Հայաստանի ընդերքի առանձին հատվածներում կարող են լինել գազի և նավթի արդյունաբերական նշանակություն ունեցող առանձին կուտակումներ։

Մեր օրերում առանց նոր տեխնիկայի, բնական գիտությունների ձեռք բերած հաջողությունների ներդրման, երկրաբանական հետախուզության բնագավառում հնարավոր չէ լուրջ հաջողությունների հասնել։ Այժմ երկրաբանների տրամադրության տակ են գտնվում մեծ թվով ժամանակակից մեքենաներ ու սարքավորումներ։

Սովետական երկրաբանների հայրենանվեր աշխատանքը՝ ընդերքի հարստությունները ժողովրդական տնտեսությանը ծառայեցնելու համար, բարձրր է գնահատվում կուսակցության և կառավարության կողմից։ Միայն վերջին երկու տարում հանրապետության երկրաբանական ծառայության 34 աշխատող պարգևատրվել են Սովետական Միության մեդալներով ու շքանշաններով, իսկ հորատման աշխատանքների բրիգադավար Վլ. Ամիրխանյանն արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։

Հանրապետության երկրաբանների առաջ մեծ և պատվավոր խնդիր է դրված՝ բնական հումքով բավարարել ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջները, հայտնաբերել օգտակար հանածոների նորանոր հանքավայրեր, ավելի մանրամասն ու բազմակողմանի ուսումնասիրել ընդերքի խոր հորիզոնական երկրաբանական կառուցվածքը։

Կասկածից վեր է, որ հանրապետության երկրաբանները մոտալուտ տարիները կնշանավորեն ավելի խոշոր հայտնագործություններով։

Ա. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԲԱՆԱԿԻ ԱՌԱՋԱՄԱՐՏԻԿԸ

Հարթ չէ նրա կյանքի ճանապարհը, այն հարուստ է հեղափոխական պայքարի բուռն իրադարձություններով, ոստիկանության հետապնդումներով ու բանտերով, սոցիալիստական շինարարության ու կոմունիզմի համար մղած անխոնջ պայքարով։

Անդրկովկասի աշխատավորների հեղափոխական պայքարի տարեգրության մեջ ուշագրավ էջեր է թողել ադրբեջանական ժողովրդի հավատարիմ զավակ, աննկուն բոլշևիկ-ինտերնացիոնալիստ Ալի Թաղի Զադեն։



Անդրկովկասի հեղափոխական պրոլետարիատի ինտերնացիոնալ բանակի առաջամարտիկներից էր նա, և իր ողջ գիտակցական կյանքը նվիրաբերեց աշխատավորների ազատագրության, սոցիալիզմի կառուցման վեհ գործին։

Ծանր են եղել նրա մանկությունն ու պատանեկությունը։ Ալի Թաղի Զադեն վաղ է ճաշակել կյանքի դառնությունները, տեսել կապիտալի աշխարհում գոյություն ունեցող սոցիալական վիհը։

Նա ծնվել է 1883 թ. Թիֆլիսում, ադրբեջանցի ծայրահեղ չքավոր ընտանիքում, որը Վրաստան էր տեղափոխվել Իրանի Թիրման քաղաքից։ 40 տարի շարունակ չրկիր էր Ալիի հայրը, մի կտոր հացը նա վաստակում էր դառը քրտինքով։ Մեծ ընտանիքը, տնտեսական ծանր կարիքն ստիպեցին պատանուն 15 տարեկանից հոր հետ կիսել ընտանիքի հոգսերի բեռը։ Քիչ սովորեց Ալին, ընդամենը մեկ տարի։ 1898 թ. նա աշխատում էր Թիֆլիսի ներկարարական արհեստանոցում։ Չնչին կոպեկներ էր ստանում աշակերտ Ալին։ Իրենից լավ չէին ապրում շրջապատի բանվորները. տեսնելով նրանց չարքաշ կյանքն ու տառապանքը, Ալի Թաղի Զադեն ավելի ու ավելի էր համոզվում, որ անհրաժեշտ է պայքարել տիրող կարգերի դեմ. «ապրել չի լինի այսպես», խորհում էր պատանին։

Բանվոր դասակարգի տնտեսական ծանր վիճակը խոր դժգոհություն էր առաջացնում։ Բանվորական ելույթնե-

...րին ակտիվ մասնակցում էր Ալին։ Շուտով նա ձեռք է բերում արհեստանոցի բանվորների վստահությունն ու հարգանքը։ 1903 թ. մայիսին մի խումբ բանվորների հետ Ալի Թաղի Զադեն մասնակցում է մայիսմեկյան ցույցերին ու մայովկային։

Եկավ 1905 թ. բքաշունչ ձմեռը...

Երկրի քաղաքական մթնոլորտը գնալով շիկանում էր, հեղափոխական պայքարի բարոմետրը փոթորիկ էր գուժում, որն սկսվեց հունվարի 9-ին։ Ցարիզմի արյունալի չարագործության լուրն ակնթարթորեն տարածվեց ողջ երկրով մեկ. բարձրացավ Ռուսաստանի բանվորական շարժման նոր ալիքը։ Անդրկովկասում ամենուրեք տեղի էին ունենում գործադուլներ, ցույցեր, միտինգներ։

Թիֆլիսի բանվորությունը Կովկասի առավել կազմակերպված ու հեղափոխական ջոկատներից մեկն էր, որը դասակարգային պայքարի մեծ դպրոց էր շատերի համար. այստեղ իրենց մարտական մկրտությունն ստացան վրացի, հայ, ադրբեջանցի, ռուս հազարավոր բանվորներ։

Թիֆլիսի բանվորների վիթխարի ցույցի նախօրյակն էր՝ հունվարի 23-ը։ Ուշ երեկոյան Ալին մի վրացի բանվորի հետ հասավ պայմանավորված վայրը։

— Ալի Թաղի Զադե,— ներկայացավ մի փոքր շփոթված, քսանամյա, սևաչ երիտասարդը. Նրա դեմքը վճռականություն ու կորով էր արտահայտում։

— Ադրբեջանցի՞ եք,— հարցրեց նստածներից մեկը։

— Այո՛,— պատասխանեց երիտասարդը,— Իրանական Ադրբեջանից։

Այնուհետև նրան բացատրեցին, որ հեշտ չէ հեղափոխական կյանքը, այն լի է տագնապներով ու դժվարություններով, որ նա կարող է դեռ մտածել ու հրաժարվել բոլշևիկներին հարելուց։ Բայց Ալին հաստատակամ էր իր որոշման մեջ։ Նա ընտրել էր իր կյանքի ճանապարհը։

Այդ օրը նա ստացավ առաջին մարտական հանձնարարությունը։ Կես գիշերին, թռուցիկներով բեռնված Ալին հեռացավ ընկերներից։

Հին բոլշևիկ Մ. Հունանյանը պատմում է, որ այդ ժամանակ ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեն ադրբեջանցի հեղափոխականների մեծ կարիք էր զգում։ Ալի Թաղի Զադեն մի կատարյալ գյուտ էր բոլշևիկների համար։ Նա շատ բան արեց ադրբեջանական բնակչության շրջանում հեղափոխական գաղափարների տարածման ու պրոպագանդման գործում։

Ալի Թաղի Զադեն, կատարելով Թիֆլիսի բոլշևիկյան կոմիտեի հանձնարարությունները, բանվորների շրջանում տարածում էր թռուցիկներ, ագիտացիոն, պրոպագանդիստական ծավալուն աշխատանք տանում, պարզաբանում հեղափոխության խնդիրներն ու նպատակները։ Նրա բոլշևիկյան հայացքների վերջնական ձևավորման վրա հսկայական ներգործություն ունեցան Ստ. Շահումյանը, Ա. Ենուկիձեն, Ց. Մախարաձեն և ուրիշներ։ 1905—07 թթ. Թիֆլիսում չի եղել հեղափոխական քաղաքական որևէ կարևոր իրադարձություն, ցույց, միտինգ, գործադուլ, որին չմասնակցեր Ալի Թաղի Զադեն։

Փետրվարի 13—14-ին նա մասնակցում է ՌՍԴԲԿ Կովկասյան Միութենական Կոմիտեի և Թիֆլիսի կազմակերպած վիթխարի միտինգին ու 10 հազարանոց ցույցին, որտեղ Անդրկովկասի բանվոր դասակարգը որոշեց միասնական ու միահամուռ հանդես գալ ցարիզմի ազգատյաց քաղաքականության դեմ և թույլ չտալ ազգամիջյան ջարդեր։

Մայիսմեկյան օրերին Ալի Թաղի Զադեն ցուցարարների առաջին շարքերում է, իսկ հոկտեմբերին՝ համընդհանուր քաղաքական գործադուլի մասնակիցը։

Բարձր են գնահատել Ալիի ընկերները նրա հեղափոխական-պրոպագանդիստական աշխատանքը։ 1906 թ. հունիսին Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության անդամներ Ռ. Մելքումովի և Ա. Գրիգորյանի երաշխավորությամբ նա զինվորագրվում է հեղափոխական պայքարի լենինյան բանակին։ Այդ տարիներին բոլշևիկ մարտիկ Ալի Թաղի Զադեն կուսակցության հանձնարարությամբ շատ բան արեց Անդրկովկասի աշխատավորների ինտերնացիոնալ կապերի ամրապնդման, ցարիզմի ազգատյաց քաղաքականության մերկացման, Կովկասի բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների դավաճանական վարքագծի բացահայտման համար։

Արտակարգ համառությունը, նվիրվածությունը գործին ու պատրաստակամությունը նրան դարձնում են հեղափոխական պայքարի աննահանջ զինվոր, որ չգիտե ընկրկել դժվարություններից, ունի հեղափոխական պայքարի պարզորոշ նպատակներ և դրանց հասնելու անկոտրում կամք։

Ռուսական առաջին հեղափոխությունը պարտվեց։

Բոլշևիկները դանդաղ, բայց առանց խուճապի նահանջում էին։ Երկրում մոլեգնում էր ստոլիպինյան ռեակցիան։ Ռազմադաշտային դատարաններն ու սևհարյուրյակային ջոկատներն առանց դատ ու դատաստանի հաշվեհարդար էին տեսնում հեղափոխականների հետ։ Մենք կարծրաքարայիններ ենք,— ասում էր Լենինը,— և այդ պատճառով գլուխներս չենք կորցնի առաջին մեծ պարտությունից. պատմությունը ցույց է տվել, որ հենց մեծ պարտություններն էլ հեղափոխական պայքարի մեծ դասեր են տալիս աշխատավորներին։

1907—10 թթ. չի դադարում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը. ավելին, 1908 թ. այստեղ ծավալվում են գործադուլներ, որոնք բարձր է գնահատում Իլյիչը, անվանելով դրանք «գործադուլային շարժման վերջին մոհիկաններ»։ Ռուսական հեղափոխությունը խոր ազդեցություն թողեց և իր արձագանքը գտավ Իրանում, Թուրքիայում և Արևելքի այլ երկրներում։ Շուտով կուսակցության որոշմամբ Ալի Թաղի Զադեն տեղափոխվում է Պարսկաստան, որտեղ զբաղվում է պարսիկ հեղափոխականներին զենք ու ռազմամթերք մատակարարելու դժվարին, վտանգավոր գործով։ Այստեղ նա եռանդուն աշխատանք է ծավալում Հ. Ամօղլու, Ի. Միքելզադեի և ուրիշների հետ։

Սակայն Ալին՝ անհանգիստ խառնվածքի տեր այդ մարդը, չէր կարող սոսկ տեխնիկական հանձնարարություններ կատարել, երբ հեղափոխական բանակը օրհասական մարտեր էր մղում թշնամիների դեմ։ Շուտով նա հեղափոխական բանակի զինվորների շարքերում է, մարտի դաշտում։ Զինադադար կնքելուց հետո, 1908 թ., ՌՍԴԲԿ Երկրային կոմիտեն նրան ետ կանչեց Թիֆլիս, սակայն Ալին դրանից հետո էլ ակտիվ աջակցում էր պարսկական հեղափոխական շարժմանը։

Ալի Թաղի Զադեի հեղափոխական գործունեությունը վաղուց գրավել էր ցարական ոստիկանության ուշադրությունը. սկսվում են հետապնդումն ու հալածանքը։ 1908 թ. հունիսին նա ձերբակալվեց։ Երկու շաբաթ բանտում մնալուց հետո պարսկահպատակ լինելու հանգամանքը և անհրաժեշտ հանցանշանների բացակայությունը ստիպեցին ցարական ոստիկանությանը բանտից ազատել նրան։ 1911 թ. նա կրկին մեկնում է Պարսկաստան, մասնակցում հեղափոխական շարժումներին։ Այնուհետև կուսակցության հանձնարարությամբ նա լինում է մերթ Բաքվում, մերթ Թիֆլիսում։ Ամենուրեք աշխատելով բանվորների շրջանում, նա բորբոքում է հեղափոխական պայքարի կրակը, դառնում բոլշևիկյան ճանաչված պրոպագանդիստներից մեկը։

1917 թ. փետրվար...

Ցարական կարգերի տապալումը բոլշևիկյան կուսակցությանը հնարավորություն տվեց դուրս գալու ընդհատակից և վարելու բացահայտ քաղաքական գործունեություն։ Չնայած դժվարություններին, գնալով աճում էր բոլշևիկների ազդեցությունը մասսաների շրջանում։ ՌՍԴԲԿ(բ) Անդրերկրկոմի և Թիֆլիսի կոմիտեի հանձնարարությամբ Ալի Թաղի Զադեն շարունակում է աշխատանքը պարսիկ աշխատավորների շրջանում։ Այդ նպատակով 1917 թ. մարտին Իրանական Ադրբեջանում ստեղծվեց սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն, որը կրում էր «Ադելաթ» («Արդարություն») անունը։ Ալի Թաղի Զադեն դառնում է այդ կազմակերպության Թիֆլիսի սեկցիայի քարտուղարը։ Շուտով նա կրկին մեկնում է Իրան՝ ռուսական բանակում պրոպագանդիստական հեղափոխական գործունեություն ծավալելու։ Այստեղ Ա. Շահսուվարյանի և այլ բոլշևիկների հետ միասին նա շատ բան արեց ռուսական բանակի հեղափոխականացման գործում։ Նրան հաջողվում է հեղափոխականորեն տրամադրված զինվորներից բոլշևիկյան բջիջներ ստեղծել Դիլիման, Խոյ քաղաքներում և մի քանի գյուղերում։ Կուսակցության հանձնարարությունը նա փայլուն կերպով կատարեց։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները վերակառուցեցին իրենց գործունեությունը և երկրամասի աշխատավորներին համախմբեցին սովետական

իշխանության հաղթանակի համար մղվող պայքարի դրոշի շուրջը։ Կովկասից ռուսական բանակի հեռանալուց հետո, 1918 թ. հունվարին, Ալի Թաղի Զադեն վերադառնում է Թիֆլիս, ապա մեկնում Բորչալու և Ախալցխա՝ կուսակցական աշխատանքի։ Այս գավառներում նա կազմակերպում է բոլշևիկյան բջիջներ, տարածում թռուցիկներ։ Շրջանում նա ամենուրեք պրոպագանդում է, որ Անդրկովկասի ժողովուրդների ազատագրության ուղին նշել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունները այդ ժողովուրդների համար չեն կարող բերել իրական ազատություն և սոցիալիզմ։ Վրացի, հայ և ադրբեջանցի գյուղացիներին նա կոչ էր անում վճռական պայքարի ելնել սովետական իշխանության հաստատման համար։

1921 թ. սկզբներին Վրաստանի կոմունիստական կազմակերպությունները, հաշվի առնելով երկրում հասունացող հեղափոխական իրադարձությունները, ձեռնամուխ եղան զինված ապստամբության նախապատրաստմանը։ Այդ օրերին Ալի Թաղի Զադեն ակտիվ մասնակցում է բանվորների, գյուղացիների, հեղափոխական ջոկատների ստեղծմանը, զինմանը, նրանց վճռական մարտերի նախապատրաստելու գործին։

Սովետական իշխանության տարիներին ամբողջ ուժով ծավալվեց բանվոր հեղափոխականի, բոլշևիկյան գործչի պետական ու կազմակերպչական տաղանդը։ Զորս տասնամյակից ավելի Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում նա վարել է կուսակցական ու պետական մի շարք պատասխանատու պաշտոններ։ 1921—22 թթ. ՌԿԲԿ Թիֆլիսի V շրջկոմի քարտուղարն էր նա, 1924—25 թթ՝. Բորչալուի գավառային կոմիտեի քարտուղարը, 1926—27 թթ. Վրացական ՍՍՀ Գերագույն դատարանի անդամ։ 1929 թ. Անդրերկրկոմի բյուրոյի որոշմամբ նա տեղափոխվում է Հայաստան։ 30-ական թվականների սկզբին Թաղի Զադեն աշխատում էր որպես ՀԿ(բ)Կ Վեդու շրջկոմի քարտուղար, ապա, մինչև 1937 թ., եղել է ՀՍՍՀ սոցիալական ապահովության ժողկոմը և ՀԿ(բ)Կ ԿԿ բյուրոյի անդամ։

Ժամանակակիցները մեծ գովեստով են խոսում Ալի Թաղի Զադեի այդ տարիների աշխատանքի մասին։ Վարելով կուսակցական ու պետական պատասխանատու պաշտոններ, նա շարունակում էր պրոպագանդիստի իր աշխատանքը։ Բազում թելերով կապված էր հանրապետության աշխատավորների հետ, ջանք ու եռանդ չէր խնայում ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի վերելքի համար։ Լինելով սկզբունքային, բայց արտակարգ ըզգայուն անձնավորություն, մարդկանց մերժելիս էլ մնում էր նրանց բարեկամը։

Երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման, ինդուստրացման ու կոլեկտիվացման տարիներին Ալի Թաղի Զադեն անհաշտ պայքար էր մղում տրոցկիստական զինովևյան բլոկի և աջ թեքման դեմ, վճռականորեն հանդես գալիս կուսակցության լենինյան գծի պաշտպանության դիրքերում։

1937 թ. անհիմն մեղադրանքներով Ալի Թաղի Զադեն հեռացվում է կուսակցությունից... Տարիներ անց նա վերականգնվում և դառնում է Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն Սովետի նախագահը։

Սկզբունքային բոլշևիկ, ազնիվ ու սրտացավ ընկեր, բյուրեղյա հոգու տեր մարդ էր Ալի Թաղի Զադեն։ Նա ապրեց ութ տասնամյակից ավելի, իր մեջ եղած ողջ լավն ու նվիրականը տվեց ժողովրդին ու հայրենիքին ծառայելու սուրբ գործին, Անդրկովկասի ժողովուրդների մեծ բարեկամության ծաղկմանն ու ամրապնդմանը։

**Մ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու



## ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆԸ ՆՎԻՐԱԲԵՐՎԱԾ ԿՅԱՆՔ



1920 թվականի աշնան ցուրտ, մառախլապատ մի օր Ղափանի Շիկահող գյուղի փողոցներով, դաշնակցական մի խումբ զինվորներ դեպի գյուղի կենտրոնն էին տանում պատառոտված շորերով մի կալանավորի։ Տանջահար կալանավորը հազիվ էր ոտքի վրա մնում։ Հրացանի կոթով առաջ էին հրում նրան։ Նա աշխատում էր գլուխը բարձր պահել, չընկնել և, թեև հարվածներից ուռած, կապտած նրա դեմքը մի քանի օրվա բանտարկության ընթացքում բոլորովին հյուծվել, անճանաչելի էր դարձել, դաշնակցական զինվորների կողմից գյուղի հրապարակը քշված գյուղացիներն իսկույն ճանաչեցին իրենց ուսուցչին՝ Բագրատ Համբարձումի Հարությունյանին։

Մինչև հրապարակ դեռ մնում էր մի հարյուր մետրից էլ քիչ տարածություն։ Քայլելը տանջալի էր, ոտքերն ուժասպառվել էին։ Բայց ոչինչ, նա իր մեջ ուժ կգտնի այդ հարյուր մետրը ևս քայլելու... Թույլ չի տա, որ իրեն քարշ տան։ Նա գիտեր, որ դրանք իր կյանքի վերջին րոպեներն էին, իսկ հետևում մնացել էր երկար, երկար մի ճանապարհ, և ահա թե որտեղ է վերջանում այդ ճանապարհը։ Ուղեկցող զինվորները լուռ էին, մռայլ, ինչ-որ նյարդայնացած։ Ինչո՞ւ են նրանք այդպես տագնապահար, ինչո՞ւ հանգիստ չեն, ինչո՞ւ են շտապում, ի՞նչն է նրանց այդպես հալածում։ Հարյուր մետրից էլ պակաս է մնացել նրան մինչև գյուղի հրապարակը. քարե ցածլիկ հյուղակների, խարխուլ ցանկապատերի, խրղճուկ հողակտորների մոտով անցնող քանդված, փոշոտ ճանապարհ։

Եվ մի պահ նա ակամա հարց տվեց իրեն. գուցե այնտեղ, հետևում, քո անցած երկար ճանապարհին ինչ-որ բան սխա՞լ է եղել, և ահա քեզ տանում են մահապատժի հրապարակը։ Նրա աչքի առջևով մեկ-մեկ անցան իր ապրած կյանքի պատկերները... Մանկությունն անցել է Իրանի Սալմաստ գավառի Սարամերիք գյուղում, դառը զրկանքներով լի, նյութական ծանր պայմաններում։ Ընդամենը տասներեք տարեկան պատանի էր, երբ 1907 թվականին եկավ Թիֆլիս՝ բախտ որոնելու։ Սովորեց Հավլաբարի դպրոցում, իսկ երեք տարի հետո հաջողությամբ ընդունվեց Ներսիսյան դպրոցը։ Ահա այստեղ էր, որ Բագրատը ծանոթացավ բոլշևիկ հեղափոխականների հետ, մասնակցեց նրանց ընդհատակյա հավաքներին, նրանց միջոցով հաղորդակից դարձավ մարքսիստական գաղափարներին, կարդաց Մարքսին, Էնգելսին, Լենինին։ Այնուհետև՝ ուսանողական ցույցերին ակտիվ մասնակցելու, հեղափոխական գործունեության համար նրան վտարում են դպրոցից, որպես քաղաքականապես անբարեհույս մարդու։

Սակայն նա գիտեր՝ իր տեղը նրանց շարքերում է, ովքեր վճռել են իրենց կյանքը նվիրաբերել աշխատավորների ազատագրության գործին, որոնց համար դրանից վեհ նպատակ չկա։ Նա արդեն մեկընդմիշտ ընտրել է իր ճանապարհը։ Եվ 1914 թ. սկզբներին արդեն ՌՍԴ(բ)Կ անդամ է, նրա ակտիվ գործիչներից մեկը և լավագույն պրոպագանդիստ։

Նրան չի հաջողվում ընդունվել Գևորգյան ճեմարան՝ ուսումը շարունակելու. ընդունվում է Երևանի թեմական դպրոցը, որն ավարտում է 1916 թ.։

Այնուհետև բոլշևիկ-ուսուցիչ Բագրատ Հարությունյանը հեռավոր Ղափանի մեծաթիվ բանվորների ու գյուղացիների շրջանում տարածում է մարքսիզմի գաղափարները, մոտիկից ծանոթանում աշխատավորների ծանր կենսապայմաններին։ Շրջանի գյուղերում նրա ստեղծած կոոպերատիվ կազմակերպությունները դարձան գյուղացիության քաղաքական դաստիարակության դպրոց։

1917 թ. փետրվարին Ռուսաստանում հաղթանակել է հեղափոխությունը։ Ռուսական նախկին պետության ծայրամասում գտնվող Կեռմանց և Ծավ գյուղերի գյուղացիությունը բոլշևիկ Բագրատ Հարությունյանի գլխավորությամբ ըմբոստանում է և բռնագրավում կալվածատեր Նարիման բեկ Սուլթանովի և Կարապետ աղա Խոջամիրովի հողերը։ Գյուղացիները հրաժարվում են կալվածատերերին հարկ վճարելուց, բռնագրավում նրանց հացհատիկը և բաժանում չքավորներին։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո Բ. Հարությունյանը Ղափանի բանվորների և գյուղացիության շրջանում պարզաբանում է հեղափոխության նշանակությունը հայ ժողովրդի բախտի համար, պրոպագանդում սովետական իշխանության գաղափարը, մասսաներին կոչ անում՝ պայքարի ելնել սովետների իշխանության համար։ 1917—1920 թթ. Բ. Հարությունյանը Ղափանի և շրջանի մի շարք գյուղերում ստեղծում է բոլշևիկյան ընդհատակյա կազմակերպություններ և ղեկավարում նրանց գործունեությունը։ Մեծ էր նրա ազդեցությունը գյուղացիության և բանվորության վրա, նրան սիրում ու հարգում, հավատում էին աշխատավոր մասսաները՝ որպես իրենց շահերի պաշտպանի։

1918 թվականի ապրիլ։ Բաքվի կոմունայի ստեղծման համար մղվող պայքարին ակտիվ մասնակցեցին նաև Ղափանի բանվորները։ Կոմունայի ստեղծման և պաշտպանության գործում Բաքվի բազմազգ պրոլետարների և կարմիրգվարդիականների շարքերում մարտնչում էին նաև Ղափանի բանվորներն ու կոմունիստական կազմակերպության շատ անդամներ, նրանց հետ և Բագրատ Հարությունյանը։

1918 թ. Բաքվի կոմունայի ազդեցությամբ Ղափանի շրջանի մի շարք գյուղերում նորից սկսվում են կուլակների և կալվածատերերի դեմ ուղղված գյուղացիական հեղափոխական ելույթները։ Այդ շարժումները ղեկավարում էր Բագրատ Հարությունյանը, որ Բաքվի կոմունայի անկումից հետո նորից վերադարձել էր Ղափան։

1918—20 թվականներին դաշնակների տիրապետության տարիներին Ղափանի շրջանի գյուղացիությունը և բանվորները դաժանորեն ճնշվում, կեղեքվում էին դաշնակների և նրանց օտարերկրյա տերերի կողմից։ Դաշնակցական խմբապետներ Դրոն, Նժդեհը իրենց խմբերով չարիք էին Ղափանի և Զանգեզուրի աշխատավորների համար։ Ընդհատակյա ծանր պայմաններում Բագրատ Հարությունյանը կազմակերպում էր մասսաներին, նրանց համախմբում բոլշևիկների շուրջը, նախապատրաստում պայքարի՝ դաշնակների բուրժուա-նացիոնալիստական կառավարության տապալման և Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար։

Ղափանի աշխատավորները Բագրատ Հարությունյանին ճանաչում էին ո՛չ միայն որպես հմուտ կազմակերպչի, կայուն հեղափոխականի, այլև որպես բավականին կրթված, պատրաստված մարքսիստներից մեկի։ Նրան լավ ճանաչողները պատմում են, որ նա լավ ուսումնասիրել էր Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները...

1920 թ. մայիսին Հայաստանի աշխատավորները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, զինված պայքարի դրոշ պարզելով դաշնակների և անգլո-ամերիկյան իմպերիալիստների դեմ, մահու և կենաց կռվում արտահայտեցին իրենց անխախտ վճռականությունը՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար։ Ղափանի շրջանի աշխատավորությունը, Հայաստանի մյուս գավառների աշխատավորների հետ մեկտեղ, դիմեց զինված ապստամբության։ Ապստամբությունը ղեկավարում էր ռազմա-հեղափոխական կոմիտեի նախագահ Բագրատ Հարությունյանը։ Սովետական Ռուսաստանի Կարմիր բանակի օգնությամբ Ղափանի շրջանի աշխատավորները հաստատեցին սովետական իշխանություն։

Ապստամբած գյուղերից աչքի ընկավ Շիկահողը, որտեղ կար բոլշևիկյան ուժեղ կազմակերպություն։ Այդ գյուղի կոմունիստները թե՛ ապստամբության ժամանակ և թե դրանից հետո լայն հեղափոխական գործունեություն են ծավալում, որի մասին ժամանակին արձանագրել է Բաքվի «Կոմունիստ» թերթը։ Երբ Կարմիր բանակի զորամասերը մոտեցան Ղափանին, Շիկահողի կոմունիստները գյուղացիների հետ միասին հարձակվեցին Նժդեհի նահանջող զորամասերի վրա, և մեծ օգնություն ցույց տվին Կարմիր բանակի զորամասերին։

1920 թ. հոկտեմբերին Գորիսում գումարվում է Զանգեզուրի կուսակցական կազմակերպության կոնֆերանս, որին Ղափանի շրջանից մասնակցում է Բագրատ Հարությունյանը։ Այդ կոնֆերանսում որոշում է ընդունվում ՌՀԿ-ներն ամրացնելու, հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամությունն ամրապնդելու ու դաշնակների նացիոնալիստական պրովոկացիաներին հակահարված տալու մասին։

Հետագայում Կարմիր բանակի զորամասերի նահանջի հետևանքով Նժդեհն իր խմբով հարձակվում է Ղափանի վրա։ Շրջանի աշխատավորները Բագրատ Հարությունյանի ղեկավարությամբ հերոսական դիմադրություն են ցույց տալիս դաշնակցական բանդիտներին։ Կատաղի կռիվները տևեցին ավելի քան մեկ ամիս։ Այդ կռիվներում Բագրատն ամենուրեք առաջին շարքերում էր և իր հերոսական, անձնազոհ օրինակով ոգևորում էր մասսաներին։ Չդիմանալով հակահեղափոխական ուժերի ճնշմանը՝ Ղափանի սովետական իշխանությունը տապալվեց։ Ապստամբության պարտությունից հետո Նժդեհի գիշատիչներին հաջողվեց ձերբակալել մի խումբ բոլշևիկների, նրանց հետ և ՌՀԿ-ի նախագահ Բագրատ Հարությունյանին։

... Ուղեկցող զինվորները շտապեցնում էին։ Բագրատն սթափվեց։ Նա զգաց, որ կյանքի այս վերջին րոպեներին ինքն իր առջև, իր խղճի առաջ կարող էր ասել. «Դու արել ես հնարավոր ամեն ինչ և ամեն ինչ նվիրաբերել ես աշխատավորների ազատագրության, քո ժողովրդի երջանկության համար»։

Ահա և գյուղի հրապարակը՝ դաշնակ զինվորների շարքերով։ Ձիանք հեծած, սվինները շողշողացնելով, դաշնակ մաուզերիստները մտրակի հարվածներով ետ էին մղում հավաքված բազմությանը։ Ահա և Զանգեզուրի աշխատավորության դահիճը՝ Նժդեհը, փրփրաբաշ նժույգի վրա, զայրույթի, կատաղության մոլուցքի մեջ, նույնպես անհանգիստ, անհամբեր. Նրանց հայացքները հանդիպեցին. դաշնակ խմբապետի սև, խոշոր աչքերում կատաղության հետ խառը երկյուղ կար. Բագրատը հանգիստ նայեց այդ տագնապահար աչքերին։ Ինքն էր մեռնելու, ինքն էր զոհվելու, բայց հանգիստ էր՝ իր գործի ճշմարտացիությանը վստահ, իր գործի հաղթանակին հավատացող մարդու վստահությամբ։ Իսկ տագնապալից աչքերով մարդու կատաղությունը հիշեցրեց նրան մեռնող արջի մոլեգնությունը։ Բագրատն ուղղվեց, բարձրացրեց գլուխը, և գյուղի հրապարակում տիրող լռության մեջ հնչեց նրա բարձր ու հատու ձայնը։

—... Զանգեզուրը կլինի կարմիր ու սովետական, մի՛ մոռացեք դաշնակներ, կգա մի օր, երբ Ռուսաստանի մեծ պրոլետարիատը ձեզնից հաշիվ կպահանջի մեր արյան համար։ Բոլշևիկները չեն վախենում մահից։ Ես եղել եմ բոլշևիկ, մեռնում եմ այդպիսին։

Այս խոսքերը շուրթերին նա ընկավ մաուզերիստների գնդակից։

... Հիմա էլ, տասնյակ տարիներ անց՝ Ղափանի քաղաքային այգու նրա հուշարձանին ամեն օր թարմ ծաղիկներ են դնում։ Դրանք դնում են տեղացիներն ու հյուրերը, նրա մարտական ընկերները և մարդիկ, որ նրա մասին լսել են միայն։ Ժողովուրդը երախտագիտությամբ է հիշում այսօրվա երջանիկ կյանքի համար իրենց կյանքը զոհաբերած արժանավոր զավակներին, աննկուն հեղափոխականներին, նրանց հետ և Բագրատ Համբարձումի Հարությունյանին։

Կ. Հ. ՏՈՆՈՅԱՆ

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ «ՎԵՐԵԼՔ» ԹԵՐԹՈՒՄ

«ՎԵՐԵԼՔ» թերթը (օրգան՝ ՀԿԿ Եղեգնաձորի շրջկոմի և աշխատավորների դեպուտատների շրջսովետի) լույս է տեսնում գյուղական շրջանում, հետևաբար նրա հիմնական խնդիրը գյուղատնտեսության, կոլտնտեսային ու սովխոզային արտադրության հարցերի խոր ու բազմակողմանի լուսաբանումն է։ Այդ առումով ճիշտ է վարվում խմբագրությունը, երբ տվյալ հարցերը մշտապես պահում է իր ուշադրության տեսադաշտում և թերթի համարյա բոլոր համարներում ծավալուն տեղ հատկացնում դրանց լուսաբանմանը, օգնում ու մոբիլիզացնում գյուղի աշխատավորներին՝ հետևողականորեն գործի վերածելու սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.), մայիսյան (1966 թ.), հոկտեմբերյան (1968 թ.) պլենումների և կուսակցության XXIII համագումարի որոշումները։

Թերթը, իհարկե, իր էջերում տեղ է հատկացնում նաև սկզբնական կուսակցական կազմակերպությունների գաղափարական ու կազմակերպական աշխատանքի, արհմիութենական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների, տեղական սովետների, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, դպրոցների, սպառողական կոոպերացիայի գործունեության լուսաբանմանը։ Չկա որևէ էական հարց, որին թերթը չանդրադառնա, մանավանդ դրանց մեծ մասն անմիջականորեն շաղկապված է գլխավոր խնդրի՝ էկոնոմիկայի զարգացման հետ։

Բայց մեր նպատակը չէ անդրադառնալ բոլոր հարցերին. ընտրել ենք միայն գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերը և թերթի անցած տարվա վերջին վեց ամսվա համարների ուսումնասիրությամբ պարզել, թե դրանք ինչպես են լուսաբանված, այդ գործում որոնք են թերթի աշխատանքի դրական ու թերի կողմերը։

Գյուղատնտեսության էկոնոմիկայի զարգացումը շատ բանով կախված է երկրագործական ընթացիկ աշխատանքների ժամանակին ու որակով կատարումից։ Դրանցով է գլխավորապես պայմանավորված գյուղատնտեսական մթերքների համախառն ու ապրանքային արտադրության աճը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, ամեն մի տնտեսության համախառն եկամտի ավելացումը և, մասնավորապես, զուտ եկամտի ստացումը։ Սրանք այն վճռական գործոններն են, որոնք ապահովում են ընդլայնված վերարտադրությունը։

Ելակետ ունենալով այս ամենը, «Վերելք»-ն առանձնահատուկ ուշադրություն է նվիրել գյուղատնտեսական աշխատանքների լուսաբանմանը։ Մեր ուսումնասիրած ժամանակաշրջանի գյուղատնտեսական հիմնական աշխատանքները (կերի կուտակում, բերքահավաք, աշնանացան, արոտային շրջանում անասունների խնամք, ձմռանը նախապատրաստվելը և այլն) մշտապես արտացոլվել են թերթի էջերում, դրվել բոլորի ուշադրության կենտրոնում։ Այսպես. «Կերի կուտակումը վճռական ճակատ է» (№ 78), «Պայքարն սկսված է» (№ 79), «Լեռնալանջերը մերկանում են» (№ 83), «Վճռականը կերն է» (№ 84), «Ոչ մի փունջ խոտ չթողնենք դաշտում» (№ 90), «250 տոննայի համար» (№ 93), «Ամբատաբերդի լանջերին» (№ 87), «Սիլոս՝ եգիպտացորենից» (№ 103) և մյուս հոդվածներում ու թղթակցություններում ցույց է տրված այն պայքարը, որ գյուղի մարդիկ մղել են կերի կուտակման համար։

Թերթի մի քանի համարներում խոշոր տառերով ազդարարվել է, որ «Շրջանի կոլտնտեսություններն այս տարի պարտավոր են կուտակել՝

14.372 տոննա խոտ,
4.200 տոննա սիլոս,
10.500 տոննա ծղոտ»։

Ակնարկների, հոդվածների, թղթակցությունների, ինֆորմացիայի միջոցով թերթը կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողներին ոգևորել ու մոբիլիզացրել է կերի կուտակման առաջադրանքը կատարելու։ Քարագլխի կոլտնտեսության օրինակով այն ցույց է տվել, թե ինչ միջոցառումների իրագործմամբ կարելի է առատ կեր կուտակել։ Այստեղ,— գրված է թերթի № 83-ում,— «առանձնակի ուշադրություն է դարձվել... խոտհարքերի մշակության աշխատանքներին։ Եղած 180 հեկտար մարգագետինների վրա վաղ գարնանը կազմակերպվել է քարհավաք, վերանորոգվել են ջրատար առուները, ոռոգվել դաշտերը։ 30 հեկտար խոտհարքեր առաջին անգամ մեքենահարմար են դարձվել»։ Այնուհետև, մի քանի օրվա ընթացքում նախատեսված 100-ի դիմաց մոլախոտերից պատրաստվեց 110 տոննա սիլոս։ Կամ՝ «Այն օղակը, բրիգադան, որը կցերակատարի կերի կուտակման առաջադրանքը, աշխատողները յուրաքանչյուր աշխօրին լրացուցիչ կստանան 40 կոպեկ դրամ։ Ինչպես նաև արտադրության առաջավորների համար կկազմակերպվի հեռավոր էքսկուրսիա՝ հանրապետության առաջավոր տնտեսությունները և մի շարք տեսարժան վայրեր»։

Թերթը լռությամբ չի անցել նաև թերությունների կողքով։ «Կան և հոգսեր» ենթավերնագրի տակ ցույց է տրված, որ դեզերի տեղերը պատրաստ չեն, ճանապարհներն անբարեկարգ են, մեքենաները լրիվ նորոգված չեն և հնձված խոտի տեղափոխումը ձգձգվում է։

Եվ այսպես, համարից համար լուսաբանված է տարբեր կոլտնտեսություններում ու սովխոզներում կերի կուտակման ասպարեզում կատարված աշխատանքը։

«Վերելք»-ը նույնպիսի հետևողականությամբ լուսաբանել է նաև հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ընթացքը։ «Բերքահավաքի շեմին», «Կոմբայնավարը» առաջնորդողներում, «Հացահատիկի հունձը», «Առաջին շեղջերն են բարձրանում», «Կոմբայնը արտ է մտել», «Գետահովտի հացը», «Հողագործի պատվավոր քննությունը», «Հնձում են վերջին հեկտարները» և մյուս հոդվածներում թերթը մեկ ջերմ, մեկ ազդու խոսքերով գյուղի բոլոր աշխատողներին մոբիլիզացրել է՝ աճեցրած բերքը արագ հավաքելու։

Միանգամայն ճիշտ է վարվել թերթը, երբ բերքահավաքի ընթացքը լուսաբանելիս, գլխավորապես անդրադարձել է կոմբայնավարների աշխատանքին, տեղին դրվատել նրանցից շատերի արդյունավետ գործունեությունը, հանրային հարստության նկատմամբ ցուցաբերած հոգատարությունը, դժվարությունները հաղթահարելու և առանձնած ծանր գործը պատվով կատարելու պատրաստակամությունը։ Ահա նրանցից երկուսը՝ Միսակ Թովմասյանը և Գարսևան Անտոնյանը, որոնք «արտերի ծփանքով արբած» (№ 94), մեծ եռանդով հավաքել են ոսկեզօծ դաշտերի բերքը՝ կարմրահատ ցորենը։

«Վերելք»-ի միջոցով իրազեկ ենք դառնում նաև ծխախոտագործների աշխատանքին։ Ծխախոտի պլանտացիաների մշակմանը, տերևաքաղին, շարին, տամկացմանը, չորացմանը, հակավորմանն ու հանձնմանը նվիրված բազմաթիվ հոդվածներում ու թղթակցություններում խոսվում է մարդկանց կոնկրետ գործերի մասին։ Նույն կերպ է լուսաբանվում և այգեգործների ու բանջարաբույծների աշխատանքը։ Թերթը նրանցից առաջավորներին խրախուսում է, հետ մնացողներին քննադատում։

Շրջանի էկոնոմիկայում որոշակի տեղ է գրավում անասնաբուծությունը և այդ բնագավառում աշխատում են մեծ թվով մարդիկ, որոնցից շատ-շատերը եռանդուն պայքար են տանում անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման համար։ Այդպիսիներից են՝ հովիվներ Հասան Ահմեդովը, Ալի Քյարիմովը, կթվոր-անասնապահներ Գայանուշ Գրիգորյանը, Պայծառ Մկրտչյանը, անասնաբույժ Հ. Ղազարյանը և մյուսները, որոնց լավ գործերի ու ձեռք բերած հաջողությունների մասին թերթը տեղյակ է պահում բոլորին ու կոչ անում՝ ընդօրինակել նրանց։

Թերթը հետաքրքրվել է ոչ միայն անասնապահների աշխատանքով, այլև նրանց կենցաղով, առօրյա պահանջներով։ Ամռան ամիսներին, երբ նրանք գտնվում էին գյուղից հեռու՝ Արիջայի յայլաղներում, խմբագրության ստուգայցի բրիգադան եղել է նրանց մոտ, մանրամասն ուսումնասիրել ֆերմաների վիճակը, ծանոթացել հովիվների, նախրապահների, կթվորների աշխատանքին ու, միաժամանակ, պարզել, թե ինչ պահանջներ ունեն նրանք։ Այդ բոլոր հարցերին թերթը նվիրել է մի ամբողջ էջ (№ 91), որն ընթերցվում է հետաքրքրությամբ։

«Գեղեցիկ է Արիջան,— կարդում ենք այնտեղ,— կապույտի մեջ լողացող իր ճերմակ ամպերով, հազար ու մի ծաղիկներով, ծաղկաբույր զեփյուռներով։ Բայց ավելի գեղեցիկ ու հմայիչ է դառնում այն, երբ գալիս են սարվորները, այստեղ ու այնտեղ հիմնում իրենց օբաները. ձոր ու հովիտ լցնում աշխատանքային երգ ու ծիծաղով»։ Կանաչ բարձունքում գտնվող Աղընջաձորի օբայում աշխույժ եռուզեռ է։ Երկրորդ կիսամյակի առաջին ամսում, գործի վերածելով սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները, ֆերմայի աշխատողները գերակատարել են կաթի վաճառքի տարեկան պլանը։ Գոհունակությամբ մեղմ ժպտում է ֆերմայի վարիչ Բահլուլ Նաբիևը, կենսախինդ են կթվորուհիներ Սաթենիկ Մարգարյանը, Վարդանուշ Սիմոնյանը, Երազիկ Ոսկանյանը և մյուսները, որոնք 300 կիլոգրամով գերակատարել են կաթի ստացման առաջադրանքը։

Լավագույն աշխատողներ կան նաև մյուս ֆերմաներում, որոնց մասին ջերմորեն է խոսվում։ Սակայն լավ աշխատողներն ունեն նաև իրենց պահանջները։ Մեկ ամսից ավելի է, ինչ նրանք յայլաղում են, սակայն «ոչ մի անգամ կինոնկար չի ցուցադրվել, համերգ, զրույց չի կազմակերպվել, առաջին անհրաժեշտության ապրանքներ գնելու համար ստիպված գյուղ են իջնում կամ շրջկենտրոն գալիս»։ Ոչ ոք չի մտածում նրանց բուժսպասարկման մասին։

«Մոռացել են սարվորներիս, հենց այդպես էլ գրեք,— բողոքում է կթվորուհի Երազիկ Ոսկանյանը»։

Թերթը հենց այդպես էլ գրում է, իրավացի քննադատում այն հիմնարկություններին, որոնք մոռացության են տվել յայլաներում աշխատող անասնապահների սպասարկումը։

Սակայն, անասնաբուծության և բուսաբուծության ընթացիկ աշխատանքների լուսաբանման գործում կան նաև թերություններ, որոնց կողքով չի կարելի լռությամբ անցնել։ Օրինակ, մի շարք դեպքերում թերթը գործնականություն հանդես չի բերել և հանդես է եկել ուշացած ահազանգողի դերում։

Հուլիսի 24-ի համարում թերթը «Երկու պատկեր» հոդվածում ծխախոտի ոչ լիարժեք հեկտարներ ունենալու համար քննադատելով Եղեգիսի սովխոզի Ժ. Կարապետյանի և Ռ. Խաչատրրյանի բրիգադաներին, խնդիր է դնում «մոբիլիզացնել բոլոր ուժերը՝ ծխախոտի պլանտացիաները լիարժեք դարձնելու»։ Դրա համար, նախ՝ պետք է լրացուցիչ սածիլում կատարել։ Բայց ե՞րբ, հուլիսի վերջին կամ օգոստոսի սկզբին։ Մի՞թե խմբագրության ընկերները չգիտեն բույսերի վեգետացիայի ժամանակը։ Լավ կլիներ, եթե լիարժեք պլանտացիաներ ունենալու մասին խոսվեր ժամանակին, երբ վերջին կամ կրկնակի սածիլում էր կատարվում։ Իսկ հուլիսի 24-ին հիմնական շեշտը պետք է դրվեր եղած բույսերը լավ խնամելու, պահպանելու և անկորուստ հավաքելու վրա, բացահայտվեին ցածր բերք ստանալու պատճառները, որպեսզի դրանք հաջորդ տարում չկրկնվեին։

Նման օրինակները քիչ չեն։

«Վերելք»-ը երբեմն տարվում է անհարկի ոգևորությամբ, հաշվի չի առնում ռեալ փաստերը և լուրջ թերությունները թողած, մեկը մյուսի ետևից գովում է մարդկանց։ Այդ տեսակետից հատկանշական է հետևյալը։ Կուսշրջկոմի բյուրոն քննել է ծխախոտի տերևաքաղի ընթացքը և համապատասխան որոշում կայացրել։ Սեպտեմբերի 4-ին թերթը ինֆորմացիա է հրապարակել այդ որոշման մասին, ուր նշված է, որ Աղավնաձորում վատ են կազմակերպված տերևների փոխադրումը, տեսակավորումն ու տամկացումը, որը խիստ բացասաբար է ազդում որակի վրա»։ Դրանից 6 օր հետո, սեպտեմբերի 10-ին, «Վաղ լուսաբացին» հոդվածում խրախուսանքի խոսքեր են ասված տվյալ կոլտնտեսության ծխախոտագործների մասին, որոնք «քաղի ժամանակ տեսակավորում են տերևները և խնամքով դասավորում քթոցների մեջ». իսկույն չորանոց տանում և արագ շարում։ «Ծխախոտի տերևաքաղին զուգընթաց... լուրջ ուշադրություն է դարձվում չորանոցային մշակության աշխատանքների վրա»։

Եթե այս բոլորը կատարվել է շրջկոմի բյուրոյի որոշումից հետո, ապա թերթը պարտավոր էր այդ ասել և ճիշտ կողմնորոշել իր ընթերցողներին։

Մի փաստ ևս.

Կարդում ենք թերթի № 86-ը (հուլիսի 24)։ Առաջին էջում տպագրված է արտադրական վարչության գլխավոր զոոտեխնիկ Ռ. Աբրահամյանի՝ «Հանուն նոր հաջողությունների» հոդվածը, դրա կողքին՝ «Փոխանցիկը՝ քարագլխեցիներին» հաղորդագրությունը։ Այս երկու նյութի մեջ շատ անուններ ու թվեր կրկնված են. սակայն դա չէ էականը։ Հաղորդագրության մեջ նշված է, որ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, «այստեղ (Քարագլխի կոլտնտեսությունում— Վ. Գ.) կաթի համախառն արտադրությունն ավելացել է 43 տոկոսով, գերակատարվել կաթի վաճառքի տարեկան պլանը։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 12, այդ թվում կովերինը՝ 6 տոկոսով, մանր եղջերավորներինը՝ մեկ և թռչուններինը՝ 96 տոկոսով։ 100 կովից ու երինջից ստացվել է 94 հորթ»։ Այս բոլոր հաջողությունների համար մրցանակաբաշխության շրջանային ժյուրին կուսշրջկոմի, շրջսովետի գործկոմի և արտադրական վարչության փոխանցիկ դրոշը հանձնել է Քարագլխի կոլտնտեսությանը։ Ուրախալի երևույթ։ Բայց ահա Ռ. Աբրահամյանի հոդվածում կարդում ենք. Այս տարի «...Քարագլխի կոլտնտեսությունը ոչ մի գլուխ անասուն չի վաճառել։ Այստեղ մսի արտադրությունը, անցյալ տարվա համեմատությամբ, իջել է 53 տոկոսով։ Տնտեսությունում մինչև օրս չի կազմակերպված խոշոր եղջերավոր անասունների գիրացման հոտեր (?)։ Նրանց ունեցած սուրահ անասունների ողջ գլխաքանակը գտնվում է մեկ հոտի մեջ, չեն խոտանված մսի տակ գնացող (?) կովերը»։

Կողք-կողքի հրապարակելով այս փաստերը, թերթը ընթերցողներին պետք է որ ծանոթացներ, թե ժյուրին ինչն է նկատի ունեցել, երբ մսի արտադրությունը 53 տոկոսով պակասեցնող կոլտնտեսությանը փոխանցիկ դրոշ է հանձնել։

Ներելի չէ, երբ գյուղատնտեսության զարգացման գործում չափազանց կարևոր իրադարձություններին թերթն անդրադառնում է խիստ ուշացած։ Այսպես. ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թ. հոկտեմբերյան պլենումի որոշումների մասսայականացման համար առաջնորդող է տպագրել միայն դեկտեմբերի 10-ին։

Գյուղատնտեսական ընթացիկ աշխատանքներին նվիրված հոդվածների զգալի մասը մակերեսային է, կրում է ինֆորմացիոն բնույթ, լի է անուն-ազգանուններով, նույնանման նկարագրություններով ու միևնույն հարցերի կրկնություններով, որոնք հետաքրքրություն չեն առաջացնում և, ինչպես հարկն է, իրենց նպատակին չեն ծառայում։

Թերությունները, իհարկե, միայն սրանցով



չեն սահմանափակվում։ Թերթի աշխատանքում կան ավելի լուրջ թերություններ։ Խոսենք դրանցից մի քանիսի մասին։

Զարգացման ժամանակակից էտապում, երբ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում իրագործվում է նյութական խթանման ու պլանավորման նոր ռեֆորմը, երբ պահանջվում է բարձրացնել արտադրության արդյունավետությունը, զարգացնել ձեռնարկությունների ինքնուրույնությունը, կիրառել տնտհաշվարկը և այլն, շրջանային թերթն իր գործունեությունը պետք է վերակառուցի այդ պահանջների համաձայն և խոր կերպով լուսաբանի գյուղատնտեսության էկոնոմիկային վերաբերող այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են՝ արտադրության մասնագիտացումն ու ինտենսիվացումը, հիմնական արտադրաֆոնդերի կառուցվածքի բարելավումն ու ռացիոնալ օգտագործումը, ֆոնդահատույցը, արտադրանքի որակի բարձրացումն ու ինքնարժեքի իջեցումը, բրիգադաների ու ֆերմաների փոխադրումը տնտհաշվարկի, զուտ եկամտի ստացումը, ընդլայնված վերարտադրության ապահովումը, հանրային ու անձնական շահերի ճիշտ զուգակցումը, աշխատանքի գիտական կազմակերպումը, ինչպես նաև կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացումը, վարձատրության ձևերի կատարելագործումը և այլն։ Էլ չենք ասում շրջանին վերաբերող պրոբլեմային հարցերի ու հեռանկարային խնդիրների լուսաբանման մասին։

Տարվելով միայն գյուղատնտեսական ընթացիկ աշխատանքների լուսաբանմամբ, «Վերելքը», ցավոք, անտեսել է վերոհիշյալ հարցերի ու պրոբլեմների լուսաբանումը, մինչդեռ առանց այդ ամենի լուծման գյուղատնտեսության էկոնոմիկայի արագ զարգացման մասին խոսք լինել չի կարող։

Թերթի № 147-ում տպագրված է ՏԱՍՍ-ի՝ մոտ երկու սյունանոց ինֆորմացիան՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում կայացած եռօրյա սեմինարի մասին, որը նվիրված էր կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսագիտական աշխատանքի մի այնպիսի կարևոր օղակի, ինչպիսին հաշվապահական հաշվառքն է։ Այդ ուղղությամբ նշվում է գյուղում տնտեսագիտական ծառայության այնպիսի զորեղ լծակների մասին, ինչպիսիք են՝ տնտհաշվարկը, ինքնարժեքը, գինը, շահույթը։ Խոսվում է նաև բանկային ուղղակի ֆինանսավորման մասին։ Լավ կլիներ, որ թերթը շրջանի որևէ կոլտնտեսության օրինակով լուսաբաներ այդ հարցերից գոնե մեկը։ Բայց խմբագրությունը նման արմատական հարցերից դեռևս հեռու է մնում, թերթում հանդես չի բերում այդ գործում գիտակ մարդկանց։

Թողած տնտեսագիտական աշխատանքի հետ կապված հարցերի լուսաբանումը, թերթը հաճախ հանդես է գալիս գյուղատնտեսության էկոնոմիկայում եղած աղաղակող թերությունները սոսկ-արձանագրողի դերում (այն էլ պաշտոնական նիստերի մասին հաղորդագրություններում)։ Այսպես. շրջսովետի սեսիան քննության է առել Գլաձորի սովխոզի 1967 թ. ու 1968 թ. առաջին կիսամյակի ֆինանսա-տնտեսական գործունեության արդյունքները և ձեռք բերված հաջողությունների հետ միասին նշել, որ սովխոզում արդյունավետ չեն օգտագործվում արտադրության միջոցները, ցածր է աշխատանքի արտադրողականությունը, բարձր՝ արտադրանքի ինքնարժեքը։ Տնտեսությունը 100 հեկտար ցանքատարածության մեկ հեկտարից 1967 թ. ստացել է հազիվ 5,2 ցենտներ բերք՝ նախատեսված 8-ի դիմաց, խաղողի միջին բերքատվությունը հեկտարից կազմել է 3,3, պտղինը՝ 4,4 ցենտներ։

Հոկտեմբերի 15-ին ընթերցողներին հաղորդելով այս փաստերի մասին, թերթը չի փորձել իր հետագա համարներում խորությամբ վերլուծել դրանք, ցույց տալ այն հիմնական պատճառները, որոնց հետևանքով վատ են օգտագործվում արտադրամիջոցները, չափազանց ցածր է աշխատանքի արտադրողականությունը, խաղողի, պտղի ու հացահատիկի բերքատվությունը և այլն։

Մի այնպիսի կարևոր հարց, ինչպիսին գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքն է, համարյա իր լուսաբանումը չի ստանում։ Տարբեր առիթներով նշելով, որ այս կամ այն տնտեսությունում արտադրանքի ինքնարժեքը բարձր է, թերթը համապատասխան հաշվարկների, կոնկրետ փաստերի միջոցով չի բացահայտում դրանց պատճառները, մատնացույց չի անում, թե տվյալ մթերքի արտադրության վրա որքան նյութական, դրամական ու աշխատանքային ծախսեր են կատարված, դրանց դիմաց ինչ արդյունք է ստացվել, արդյոք տնտեսությունը օգո՞ւտ է արել թե՞ վնաս։ Տեղական օրինակներով հարցի նման լուսաբանումը ետ մնացող տնտեսությունների ղեկավարներին կօգներ տեսնելու իրենց աշխատանքի թերությունները և գործն այնպես կազմակերպելու, որ արտադրանքի ինքնարժեքը հետզհետե իջնի, առանց որի չի ապահովվի շահութաբերությունը, տնտեսության համակողմանի զարգացումը։

Սրա հետ սերտորեն առնչվում է նաև ֆոնդահատույցը։ Ժամանակն է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների ամեն մի աշխատող քաջատեղյակ լինի, թե յուրաքանչյուր

տուբլու հիմնական արտադրամիջոցների, կամ կապիտալ ներդրումների դիմաց որքան արտադրանք է ստացվում: Դա այն չափանիշն է, որով առավել հստակությամբ է երևում արտադրության արդյունավետության բարձրացման մարզում կատարված աշխատանքի արդյունքը:

Այս գործում որոշակի անելիք ունի գյուղական շրջանային թերթը, որն իր ունեցած հնարավորությունների սահմանում, գոնե տարին մի քանի անգամ, առաջավոր տնտեսությունների օրինակով պետք է ցույց տա ֆոնդահատույցի բարձրացման ուղղությամբ կուտակված փորձը և, միաժամանակ, քննադատի այն տնտեսություններին, որոնք արտադրության վատ կազմակերպման, եղած միջոցների անբավարար օգտագործման հետևանքով քիչ համախառն արտադրանք են ստանում և դրանով նվազեցնում ֆոնդահատույցը: Այս ուղղությամբ «Վերելքն» ասելու շատ բան ունի, բայց, չգիտես ինչու, անտեսված է և այդ հարցի լուսաբանումը:

«Վերելքն» առավել լուրջ ուշադրություն պետք է հատկացնի գյուղատնտեսական արտադրության գլխավոր ճյուղերին և իր էջերում դրանց վերաբերյալ զետեղի ոչ միայն ինֆորմացիաներ, չոր թվեր, երբեմն էլ ոչինչ չասող մանր-մունր թղթակցություններ, այլև պրոբլեմատիկ հարցեր բարձրացնող հիմնավոր հոդվածներ:

Գոհացուցիչ չէ, երբ թերթը հացահատիկային տնտեսության մասին խոսելիս, բավարարվել է միայն վարի, ցանքի, բերքահավաքի ընթացքի մասին համանման թղթակցությունների տպագրումով և վերջին վեց ամսում հանգամանորեն չի արծարծել մի այնպիսի կարևոր պրոբլեմ, ինչպիսին սերմնաբուծության բարելավումն է: Բերքահավաքի ընթացքում, երբ կուտակվում է սերմացուն, թերթում որևէ հոդված չի տպագրված, ուր խոսվեր բարձր ծլունակություն ունեցող, տվյալ հողակլիմայական պայմաններում առատ բերք տվող, ցրտադիմացկուն, վնասատուներից քիչ տուժող հացաթփման համար առավել պիտանի սորտերի ընտրության մասին: Կամ, չկա որևէ հոդված, որ պրոպագանդի հացահատիկային տնտեսության՝ որպես գյուղատնտեսության արտադրության հիմքի, զարգացման անհրաժեշտությունը: Եվ դա այն դեպքում, երբ Քարագլխի, Աղքենդի, Հորսի, Եղեգիսի, Գյուլիդուզի տնտեսությունները հեկտարից ստացել են 2,7 ցենտներ բերք:

Թերթը խորությամբ չի լուսաբանում նաև այգեգործության ու ծխախոտագործության զարգացման հետ կապված հարցերը, ինչպես հարկն է ցույց չի տալիս այն միջոցառումները (աշխատատար պրոցեսների մեքենայացում, հողի պարարտացում, քիմիական միջոցների գործադրում, արտադրանքի որակի բարելավում, աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացում և այլն), որոնց հետևողական իրագործումը կապահովեր այդ ճյուղերի՝ անհրաժեշտ չափով շահութաբերությունը:

«Վերելքը» պետք է վճռականորեն բարելավի գյուղատնտեսության էկոնոմիկայի արմատական հարցերի լուսաբանումը և առավել հետևողականությամբ կենսագործի իր առջև դրված խնդիրները:

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 06610 Պատվեր 227 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ 11.500: Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 26/III 1969 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչհակյանի փող. № 28:





# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Երկեր, երկրորդ հրատ., հատ. 46, մաս I, Մ., քաղհրատ, 1969, 584 էջ:

ԷՆԳԵԼՍ Ֆ.— Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը: Կ. Մարքսի՝ Թեզիսներ Ֆոյերբախի մասին հավելվածով, Մ., քաղհրատ, 1969, 72 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երկերի լիակատար ժողովածու, հինգերորդ հրատ., հատ. 23, մարտ—սեպտեմբեր 1913 թ., Մ., քաղհրատ, 1969, 620 էջ:

ԿՈՒԶԻՆ Ա. Ա.— Մարքսը և տեխնիկայի հարցերը: Մ., «Наука» հրատ., 1968, 112 էջ:

Դարավոր մարտերում ամրապնդվեց և փառքով պսակվեց բոլշևիկների կարմիր բանակը: Մ., «Советская Россия» հրատ., 1962, 318 էջ:

Այս ժողովածուում զետեղված են Հոկտեմբերյան հեղափոխության, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների ակտիվ մասնակիցների հուշերը:

Ռուսական հեղափոխության կանայք— Մ., քաղհրատ, 1969, 576 էջ:

Ակնարկների այս ժողովածուն արտացոլում է կանանց ակտիվ մասնակցությունը ռուսական ազատագրական շարժումներին: Գիրքը հետաքրքրությամբ է կարդացվում և լավ է ձևավորված:

ԻԼԵՆԿՈՎ Է. Վ.— Կուռքերի և գաղափարների մասին, Մ., քաղհրատ, 1969, 320 էջ:

Գրքում բացահայտված է, որ փիլիսոփայությունն ու սոցիոլոգիան, հոգեբանությունն ու էսթետիկան կենդանի, ռեալ խնդիրներ են արծարծում:

ՅԱԽՈՏ Օ.— Մարքսիստական փիլիսոփայության ուրվագծեր (Դիալեկտիկական մատերիալիզմ), Մ., քաղհրատ, 1969, 256 էջ:

Գրքում շարադրված և վերլուծված են դիալեկտիկական մատերիալիզմի հիմունքները:

ՁԱՐՆԻՑԿԻ Ս. Վ., ՏՐՈՖԻՄՈՎԱ Լ. Ի.— Սովետական երկրի դիվանագետները, Մ., քաղհրատ, 1969, 264 էջ:

Գիրքը նվիրված է սովետական հայտնի դիվանագետ և պետական գործիչ Լեոնիդ Բորիսովիչ Կրասինի կյանքին ու գործունեությանը:

ԱԼԵՔՍԵԵՎ Գ. Պ.— Հոկտեմբերյան հեղափոխությունը և պատմագիտությունը Ռուսաստանում (1917—1923 թթ.), Մ., «Наука» հրատ., 1968, 300 էջ:

Բազում նյութերի հիման վրա մենագրության հեղինակը բացահայտել է կոմունիստական կուսակցության և նրա հիմնադիր Վ. Ի. Լենինի դերը հայրենական պատմագիտության զարգացման գործում: Գրքում արտացոլված է այն մարքսիստ-պատմաբանների գործունեությունը, ովքեր պայքարել են բուրժուական գաղափարախոսության դեմ:

ՊՐԻՎԱԼՈՎ Վ. Վ.— Երիտասարդական կոմունիստական ինտերնացիոնալի կազմավորումը: Լենինգրադի համալսարանի հրատ., 1968, 216 էջ:

Վ. Ի. Լենինի Երկերի, ՍՄԿԿ փաստաթղթերի, գրականության և այլ նյութերի հիման վրա հեղինակը շարադրել է կոմերիտական ինտերնացիոնալի (նոյեմբեր, 1919 թ.—մայիս 1943 թ.) կազմավորման, նրա դերի և այլ հարցերի մասին:

ԳԱԲՐԻԵԼՅԱՆ Հ. Գ.— Մարքսիստական տրամաբանության հիմունքները (ռուսերեն), Երևան, «Միտք» հրատ., 464 էջ:

Մենագրության մեջ քննարկված են մարքսիստական տրամաբանության կատեգորիաներն ու հիմնական հարցերը: Գիրքն օգտակար է մարքսիստական փիլիսոփայություն ուսումնասիրողների համար:

ԵՍԱՅԱՆ Ա. Ա.— Դիվանագիտություն և արտաքին հարաբերությունների մարմիններ, Երևան, «Միտք» հրատ., 1968, 247 էջ:

ՄԱԿԱՐՅԱՆ Ա.— Նալբանդյանը գրող, Երևան, 1968, 83 էջ:

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՉՔԻ ՎԻՐԱՀԱՏՄԱՆ ՆՈՐ ԿԱՐԱԹԵԼ

*Վիրահատված աչքի հյուսվածքները կարում են մետաքսաթելով. կարը հանելը կապված է որոշ բարդությունների հետ։ Կետգուտ կարաթելը, որն ավելի բարակ է և ամուր, լավ է ընդհանուր վիրահատության ասպարեզում, իսկ աչքի հյուսվածքները կարելու համար այն կոպիտ է, գրգռող։*

*Սովետական Միության աչքի շատ կլինիկաներում աչքի ամենանուրբ վիրահատությունների ժամանակ սկսել են օգտագործել մկան պոչի ջիլը, որն ունի 0,1 մմ հաստություն և կարող է դիմանալ 1 կգ ծանրության։ Այս նոր թելը չի գրգռում հյուսվածքները և քանի որ անհետ ներծծվում է, հանելու հարկ չկա։*

*Թելը պատրաստում են կլինիկական լաբորատորիաներում, ենթարկելով ջիլը հատուկ մշակման ու հականեխման։ Միակ թերությունը թելի կարճությունն է (15 սմ), որը պայմանավորված է մկան պոչի երկարությամբ։ Եթե սելեկցիոներներին հաջողվի ստանալ երկարապոչ սպիտակ մկներ, խիրուրգները շատ շնորհակալ կլինեն նրանցից։*

## ԱՆՋԱՏՎԱԾ ԵՐԻԿԱՄ

*Երբ սպառվում են հիվանդին փրկելու բոլոր միջոցները, գործադրվում են սրտի ու թոքերի անջատված արյան շրջանառություն, անջատված երիկամ։ Այժմ ստեղծված է մի ապարատ, որը հնարավորություն է ընձեռում վիրահատության ընթացքում կարճ ժամանակով անջատել հիվանդ երիկամը, որը վիրահատությունից հետո վերականգնում է իր ֆունկցիաները։*

*Նոր ապարատով Լոձ քաղաքի վիրաբույժները կատարել են շների, խոզերի ու հորթերի մոտ 50 հաջող վիրահատություն։ Փորձարկումները կօգնեն առավել բարդ պրոբլեմի լուծմանը՝ երիկամի պատվաստմանը։*

## ՍՊԻՏԱԿՈՒՑՆԵՐԸ ԲԱՐՁՐԱՑՆՈՒՄ ԵՆ ՈՉԽԱՐԻ ԲՐԴԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

*Եթե ոչխարի օրական կերաբաժնին ավելացնենք 50—60 գրամ սպիտակուց, ինչպիսին կազեինն է, ապա նրա տարեկան բրդատվությունը կավելանա մոտ 15 տոկոսով։ Ավստրալիական անասնաբույծները երկար տարիների փորձով համոզվեցին, որ ոչխարի ստամոքսը նույն ռոզայով կազեին ներարկելու դեպքում (շրջանցելով ենթաստամոքսը) բրդատվությունը կավելանա մոտ երեք անգամ։*

*Ոչխարաբույծների համար դժվար է սպիտակուցը կենդանու ստամոքսը ներարկել սրսկման միջոցով։ Ուստի և սպիտակուցային նյութերը մակերեսային մշակման են ենթարկում ֆորմալինով և դրանցով կերակրում ոչխարին։*

*Ամենաուշագրավն այն է, որ այդ փոխարինել ձկնալյուրով, բամբակի սերմնալյուրով, արախիսի քուսպով և այլն։*

## ՔԻՄԻԱՆ ԳՐՈՀՈՒՄ Է ԿՐԱԿԻ ՎՐԱ

*Իտալական «Մոնտեկանտինի էդիսոն» ֆիրմայի քիմիկոսները մշակել են հրդեհի դեմ պայքարելու նոր եղանակ։ Նրանք կարողացան հրկիզվող հեղուկը դարձնել չհրկիզվող։ Դիբրոմտետրաֆլուորէթան կոչվող այդ նյութը միանում է բենզինին, նավթին, կերոսինին և այլ հեղուկների, փոխարկում դրանք չվառվող նյութի, ընդհատում քիմիական ռեակցիայի շղթան, և հրդեհը մարում է։*

*Ամենաուշագրավն այն է, որ այդ փոխարկումը կատարվում է միայն բարձր ջերմաստիճանում, այսինքն՝ հրդեհի գոտում։*